

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**8**

ՕԳՈՍՏՈՍ, 1985
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
**«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении**

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



### ԵՐԵՎԱՆԻ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ 80-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ



### ԴԵՊԻ XXVII ԿՈՒՍՀԱՄԱԳՈՒՄԱՐ



### ՄԵԾ ՀԱՂԹԱՆԱԿԻ ՏԱՐԵԳՐՈՒԹՅԱՆ ԷՋԵՐԻՑ



ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ










# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

**1985** թվականի հուլիսի 1-ին տեղի ունեցավ Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը:

Պլենումը քննարկեց ՍՍՀՄ տասնմեկերորդ գումարման Գերագույն սովետի երրորդ նստաշրջանի հարցերը:

Պլենումում այս հարցերի առթիվ ճառով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Մ. Ս. Գորբաչովը:

Պլենումն ընդգծեց ժողովրդական դեպուտատների սովետների գործունեության համապատասխան կատարելագործման, մեր հասարակության քաղաքական սիստեմի յուրաքանչյուր օղակի կողմից իր ֆունկցիաների հստակ կատարման, կուսակցության ղեկավար դերի հետագա բարձրացման, պետական, տնտեսական և սոցիալ-կուլտուրական շինարարության բոլոր տեղամասերի վրա նրա ազդեցության ուժեղացման անհրաժեշտությունը:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում քննարկվեցին կազմակերպական հարցեր:

Բավարարված է ընկ. Գ. Վ. Ռոմանովի խնդրանքը առողջության վիճակի պատճառով թոշակի անցնելու կապակցությամբ իրեն ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամի և Կենտկոմի քարտուղարի պարտականություններից ազատելու մասին:

Պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածությունից անդամ փոխադրեց ընկ. Է. Ա. Շևարդնաձեին և ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղարներ ընտրեց ընկ. Բ. Ն. Ելցինին և ընկ. Լ. Ն. Զայկովին:

Դրանով ՍՄԿԿ Կենտկոմի պլենումն ավարտեց իր աշխատանքը:

---

# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԱՐՄԱՏԱԿԱՆ ՀԱՐՑԸ

## Ընկեր Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ զեկուցումը գիտատեխնիկական առաջընթացի արագացման հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմում կայացած խորհրդակցությունում 1985 թվականի հունիսի 11-ին

*Ընկերնե՛ր։ Դուք գիտեք, թե կոմունիստները, ողջ ժողովուրդը ինչպիսի հավանությամբ ընդունեցին կուսակցության Կենտրոնական կոմիտեի ապրիլյան պլենումի որոշումները, երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման նրա առաջադրած ծրագիրը։ Այդ մասին են վկայում կուսակցական կոմիտեների պլենումների արդյունքները և կենտրոնական մարմիններում ստացվող բազմաթիվ արձագանքները։*

*Սովետական մարդիկ ողջունում են հասարակության հասունացած պրոբլեմների անկեղծ ու ճշմարտացի քննարկումը, ամբողջովին հավանություն են տալիս պահանջկոտության, ամենուրեք կարգ ու կանոն հաստատելու, տնտեսավարման մեթոդների վճռական բարելավման կուրսին, պաշտպանում այն։ Նրանք դրան պատասխանում են պրակտիկ գործերով։ Սույն թվականի մայիսի համար սահմանված պլանային առաջադրանքների հաջող կատարումը դրա համոզիչ վկայությունն է։ Կուսակցական կազմակերպություններում, աշխատավորական կոլեկտիվներում և առհասարակ ամբողջ երկրում լավ, գործարար մթնոլորտ է հաստատվում։*

*Կենտկոմի քաղբյուրոն բարձր է գնահատում ՍՄԿԿ քաղաքականության նկատմամբ աշխատավորների վստահությունը։ Բայց աջակցությունը՝ դա նաև յուրատեսակ վարկ է։ Այն մեզ պարտավորեցնում է ամրապնդել ձեռք բերածը և առաջ ընթանալ։ Չի կարելի չասել նաև սովետական մարդկանց անհանգստության մասին, թե չլինի հանկարծ սկսած գործը հանգեցվի հերթական կամպանիայի։ Այդ կապակցությամբ քննադատական դիտողություններ են արվում այն կուսակցական կազմակերպությունների և ղեկավար աշխատողների հասցեին, որոնք անտարբեր դիրք են գրավում, չափազանց դանդաղ են տեղից շարժվում, ընդունակ չեն ոտքի հանելու և միավորելու մարդկանց, մոբիլիզացնելու նրանց հասարակության զարգացման արդի փուլի մեծ ու պատասխանատու խնդիրների լուծման համար։*

*Կասեմ այսպես. բոլորը՝ Կենտրոնական կոմիտեից մինչև սկզբնական կազմակերպությունները, կուսակցության ու ժողովրդի առջև լիակատար պատասխանատվություն են կրում ապրիլյան պլենումի գծի հետևողական կենսագործման համար։*



*Կուսակցությունը գիտատեխնիկական առաջընթացի արագացումը դիտում է որպես իր տնտեսական ստրատեգիայի գլխավոր ուղղություն, ժողովրդական տնտեսության ինտենսիվացման և դրա արդյունավետության բարձրացման, հետևաբար նաև հասարակական կարևորագույն հարցերի լուծման հիմնական լծակ։ Գիտատեխնիկական առաջադիմության ծավալման խնդիրներն այնքան անհետաձգելի են, որ հարկավոր է գործել առանց ժամանակ կորցնելու։ Դրանք ընդգրկում են տնտեսական, կազմակերպական, սոցիալական, մշակույթի և կրթության զարգացման, կառավարման վերին էշելոնների և ժողովրդական տնտեսության յուրաքանչյուր օղակի գործունեության ընթացիկ ու հեռանկարային պրոբլեմների լայն շրջանակ։ Դրանք վերաբերում են յուրաքանչյուր կոլեկտիվի, յուրաքանչյուր կոմունիստի, սովետական յուրաքանչյուր մարդու։*

*Հենց դրանով է պայմանավորված ՍՄԿԿ XXVII համագումարի նախաշեմին ներկա խորհրդակցությունն անցկացնելու մասին քաղբյուրոյի որոշումը։ Գիտատեխնիկական առաջընթացի արագացման պրոբլեմները պետք է դրվեն նախահամագումարյան հաշվետու-ընտրական կամպանիայի, կուսակցության քաղաքական, կազմակերպչական և դաստիարակչական ողջ աշխատանքի կենտրոնում։ Դրանց վրա պետք է բևեռել պետական, տնտեսական մարմինների, ամբողջ ժողովրդի ուշադրությունը։*

*Կուզենայի հրավիրել ձեզ ամենաանկեղծ խոսակցության՝ գործերի իրական վիճակի և մեր զարգացումն արգելակող պատճառների մասին, իսկ գլխավորը՝ գիտատեխնիկական առաջընթացի արագացման, սովետական էկոնոմիկայի աճի ուղիների ու ռեզերվների մասին։*

### ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԱՐԱԳԱՑՈՒՄԸ ԱՄԲՈՂՋ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ, ՈՂՋ ԺՈՂՈՎՐԴԻ ԽՆԴԻՐՆ Է

*Ընկերնե՛ր։ Առաջ քաշելով սոցիալ-տնտեսական զարգացման արագացման խնդիրը, Կենտրոնական կոմիտեն նկատի չուներ ժողովրդական տնտեսության աճի տեմպերի սոսկ բարձրացումը։ Խոսքը աճի նոր որակի զարգացման ինտենսիվ ռելսերի վրա փոխադրվելու, ստրատեգիական կարևոր ուղղություններում արագորեն առաջ ընթանալու, էկոնոմիկայի կառուցվածքային վերակառուցման, կառավարման արդյունավետ ձևերի օգտագործման, աշխատանքի կազմակերպման ու խթանման, սոցիալական պրոբլեմների առավել լիակատար լուծման մասին է։*

*Ինչո՞վ է հարուցվել նման նպատակադրումը։*

*Սոցիալ-տնտեսական զարգացման արագացման անհրաժեշտությունը նախ և առաջ որոշվում է մեր ներքին պահանջմունքներով։ Սովետական էկոնոմիկան միշտ բնութագրվել է բարձր դինամիզմով։ 1950 թվականից ազգային եկամուտն աճել է գրեթե 10 անգամ։ Երեք ու կես տասնամյակի ընթացքում կառուցվել են հազարավոր խոշոր ձեռնարկություններ, փոխվել է քաղաքների և գյուղերի տեսքը, զգալիորեն բարձրացել է մշակույթի, կրթության, առողջապահության մակարդակը։ Շատ բան է արվել բնակարանային, կուլտուր-կենցաղային պայմանների և ամբողջությամբ վերցրած՝ ժողովրդի նյութական բարեկեցության բարելավման ասպարեզում։ Բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտներն ավելացել են 5 անգամ։ Այդ ամենի մեջ ակնբախորեն դրսևորվել են սոցիալիզմի, նրա պլանային էկոնոմիկայի վիթխարի առավելությունները։ Մեր հաջողություններն անվիճելի են ու հանրաճանաչ։*

*Սակայն չի կարելի չտեսնել, որ 70-ական թվականների սկզբից տնտեսական զարգացման մեջ սկսեցին որոշակի դժվարություններ զգացվել։ Գլխավոր պատճառը, և այդ մասին ամենայն որոշակիությամբ ասվեց Կենտկոմի ապրիլյան պլենումում, այն է, որ պատշաճ չափով հաշվի չէր առնվել տնտեսական իրադրության արմատական փոփոխությունը և անհրաժեշտ հաստատակամություն չէր ցուցաբերվել կառուցվածքային քաղաքականության, կառավարման ձևերի ու մեթոդների, տնտեսական գործունեության բուն հոգե-*

բանության վերակառուցման մեջ։ Ծանրության կենտրոնը տնտեսական աճի ինտենսիվ գործոնների վրա փոխադրելու մասին խոսվում էր շատ տարիներ, բայց ձեռնարկված միջոցները կիսատ-պռատ էին, անհետևողական, մինչև վերջ չէին իրականացվում։ Դրա հետևանքով էկոնոմիկան շարունակում էր իներցիայով զարգանալ առավելապես էքստենսիվ հիմքի վրա։

Կուսակցության, ողջ ժողովրդի առջև ծառացել է բացասական միտումներ հաղթահարելու, գործը շեշտակիորեն բարելավելու խնդիրը։ Այլ մոտեցում բացառված է. մենք չենք կարող բռնել սոցիալական ծրագրերի կրճատման ճանապարհը։ Հասարակության առջև ծառացած են պարենային մատակարարման բարելավման, ժողովրդի համար ապրանքների արտադրության և սպասարկումների մեծացման անհետաձգելի խնդիրները։ Հարկավոր է առաջիկայում ևս լայն մասշտաբներով ծավալել բնակարանային շինարարությունը, բարեկարգել քաղաքներն ու գյուղերը, կատարելագործել մարդկանց առողջության պահպանումը, զարգացնել կրթությունը, գիտությունը, մշակույթը, արվեստը։

Սոցիալ-տնտեսական զարգացման արագացման անհրաժեշտությունը բխում է նաև արտաքին լուրջ հանգամանքներից։ Երկիրը հարկադրված է զգալի միջոցներ ներդնել պաշտպանության գործում։ Պատմական նվաճում հանդիսացավ ԱՄՆ-ի հետ ռազմաստրատեգիական հավասարության հասնելը։ Այսուհետ ևս մենք առավելագույն ջանքեր կգործադրենք սպառազինությունների մրցավազքը դադարեցնելու, փոխադարձ զինաթափման գնալու, ռազմական ծախսերը կրճատելու համար։ Բայց իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականության ու սպառնալիքների դեմ հանդիման անհրաժեշտ է հաստատակամորեն ամրապնդել հայրենիքի պաշտպանական հզորությունը, թույլ չտալ մեր նկատմամբ ռազմական գերազանցություն։ Այսպիսին է սովետական ժողովրդի հաստատուն կամքը։

Քաջ հայտնի է Լենինի այն միտքը, թե սոցիալիզմը շրջապատող աշխարհի վրա գլխավոր ազդեցությունը գործելու է իր տնտեսական քաղաքականությամբ, սոցիալ-տնտեսական նվաճումներով։ Համաշխարհային առաջադեմ հասարակայնության աչքում Սովետական Միությունը եղել և մնում է մարդկանց դարավոր սոցիալական հույսերի մարմնավորումը։ Նա պետք է լինի նաև էկոնոմիկայի բարձրագույն կազմակերպման ու արդյունավետության օրինակ։

Վերջապես, սոցիալ-տնտեսական զարգացման արագացման անհրաժեշտությունը բխում է կապիտալիստական երկրներից մեր տնտեսական լիակատար անկախության ապահովման պահանջից՝ ամենից առաջ ստրատեգիական կարևոր ուղղություններում։ Մենք հանդես չենք գալիս ավտարկիայի օգտին։ Աշխատանքի միջազգային փոխշահավետ բաժանումը, առաջին հերթին՝ սոցիալիստական ընկերակցության սիստեմում, արտադրության արդյունավետության բարձրացման ռեալ ուղիներից մեկն է։ Բայց չի կարելի թույլ տալ, որ մեր էկոնոմիկան կախված լինի արևմտյան արտադրանքի մատակարարումներից։ Վերջին տարիների փորձը մեզ շատ բան սովորեցրեց։

Այսպիսով. ինչպես ներքին, այնպես էլ միջազգային առումով երկրի զարգացման արագացման խնդիրն այսօր ձեռք է բերել քաղաքական, տնտեսական և սոցիալական առաջնակարգ նշանակություն։

Մենք պետք է իրականացնենք ժողովրդական տնտեսության տեխնիկական նոր վերակառուցում, որակապես վերափոխենք հասարակության նյութատեխնիկական բազան։ Այդ խնդրի լուծումը անհետաձգելի գործ է, համակուսակցական ու համաժողովրդական գործ։ Եվ այն պետք է լուծել պատմական կարճ ժամկետում՝ երկիրը դուրս բերելով աշխատանքի արտադրողականության և էկոնոմիկայի արդյունավետության առաջավոր բնագծեր։ Նախատեսվածն իրականացնել կարելի է միայն արտադրության ինտենսիվացման ճանապարհով, գիտության և տեխնիկայի նորագույն նվաճումների հիման վրա։

Պրոբլեմի հրատապությունն ուժեղանում է նաև նրանով, որ վրա է հասնում գիտատեխնիկական հեղափոխության նոր փուլը. որն ապահովում է աշխատանքի արտադրողականության բազմապատիկ բարձրացում, ռեսուրս-



ների վիթխարի խնայողություն. արտադրանքի որակի բարելավում։ Պատկերավոր ասած, գիտատեխնիկական առաջընթացը պիտի թամբենք նաև մենք։ Այլ ելք պարզապես չկա, եթե դրան ավելացնենք, որ զարգացման էքստենսիվ մեթոդները հիմնականում սպառված են։

Այժմ էկոնոմիկայի զարգացման «ծախսողական» ուղին երկիրը դատապարտում է լճացման։ Հաշվումները ցույց են տալիս. եթե այսուհետև էլ ազգային եկամտի նախատեսված աճն ապահովվի նախկին՝ զգալի չափով էքստենսիվ հիմքի վրա, ապա դրա համար կպահանջվի յուրաքանչյուր հնգամյակում վառելանյութի և հումքի արդյունահանումն ավելացնել 10—15, կապիտալ ներդրումների ծավալը՝ 30—40 տոկոսով, իսկ ժողովրդական տնտեսության մեջ լրացուցիչ ընդգրկել 8—10 միլիոն մարդ։ Բայց մենք նման հնարավորություններ պարզապես չունենք։ Եվ դրա անհրաժեշտությունն էլ չկա։ Չէ որ այսպես կոչված դեֆիցիտը աճի էքստենսիվ մեթոդների հետևանք է։ Եվ, ճիշտն ասած, մենք մնում ենք ռեսուրսներով ամենաապահովված երկիրը։ Հարկավոր է տնտեսավարորեն տնօրինել դրանք։

Այսօր, երբ կուսակցությունն ընդառաջ է գնում XXVII համագումարին, երբ նախապատրաստվում են ծրագրային փաստաթղթերը, կարևոր է գիտակցել, որ առանց գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու, առանց էկոնոմիկայի ինտենսիվացման ոլորտում հեղափոխական փոփոխությունների՝ մենք չենք կարող յոլա գնալ։ Ուստի և համագումարի բոլոր փաստաթղթերում, և առաջին հերթին՝ տասներկուերորդ հնգամյակում և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանում երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման հիմնական ուղղություններում, պետք է դրված լինեն դեպի ինտենսիվացումը կտրուկ շրջադարձ ապահովող նոր մոտեցումները, գիտատեխնիկական առաջընթացի եռանդագին երթը։

Կենտկոմի քաղբյուրոն վերջերս քննարկեց հիմնական ուղղությունների նախագիծը և ընդհանուր առմամբ պաշտպանեց դրանում նախանշված կողմնորոշիչներն ու բնագծերը։ Բայց արվեցին նաև այնպիսի լուրջ դիտողություններ, որոնք պահանջում են նախագծի լրացուցիչ մշակում։ Դրանում դեռևս չի հաջողվել ներառնել առավելապես ինտենսիվ աճի ռելսերի վրա մի շարք ճյուղերի փոխադրումն ապահովող միջոցառումներ, խորացնել էկոնոմիկայի ստրուկտուրային վերակառուցումը, հասնել ժողովրդական տնտեսության զարգացման առաջնային ուղղություններում կապիտալ ներդրումների անհրաժեշտ համակենտրոնացման, հաշվեկշռել բոլոր ցուցանիշները։

Նախագծի վրա աշխատանքը պետք է շարունակեն պետպլանը, մինիստրությունները, միութենական հանրապետությունները, արտադրական միավորումներն ու ձեռնարկությունները։ Հիմնական ուղղությունների կոնտրոլ թվերը հասցվում են նրանց։ Ընդ որում արտադրության արդյունավետության բարձրացման նշված բնագծերը պետք է համարել նվազագույն։ Այժմ գլխավորն այն է, որ կենտրոնում և տեղերում որոնվեն ու գործադրվեն արտադրության արդյունավետության և արտադրանքի որակի բարձրացման, հասարակական պահանջմունքների ավելի լրիվ բավարարման բոլոր ռեզերվները։

Մեր բոլոր կադրերը պետք է ըմբռնեն յուրաքանչյուր ձեռնարկության, ճյուղի, ժողովրդական ամբողջ տնտեսության՝ դեպի ինտենսիվ զարգացման ուղի վերակողմնորոշելու կենսական անհրաժեշտությունը։ Մեկ տարի առաջ ՍՄԿԿ Կենտկոմում տեղի ունեցած խորհրդակցությունում, որին մասնակցում էին մինիստրները, այդ մասին խոսվեց ամենայն որոշակիությամբ։ Սակայն ճիշտ եզրակացություններ արեցին ամենևին էլ ոչ բոլորը։ Ոմանց, ինչպես ասում են, մի ականջից մտավ, մյուսից դուրս եկավ, իսկ մոտեցումներն ինչպես որ երեկվանն էին, այնպես էլ մնացին։ Մինիստրությունների և գերատեսչությունների շատ ղեկավարներ, շարունակելով մտածել էքստենսիվ զարգացման կատեգորիաներով, ձգտում են որքան կարելի է ավելի շատ կապիտալ ներդրումներ, այլ ռեսուրսներ «պոկել», բայց և ստանալ արտադրության ավելի ցածր պլաններ։

Լրացուցիչ միջոցների հատկացման և նախատեսված պլանային ցուցանիշների իջեցման պայքարում նախանձելի համառություն է ցուցաբերում

ՍՍՀՄ անասնապահության և կերարտադրության մեքենաշինության մինիստր Կ. Ն. Բելյակը։ Լավ դիրք չեն բռնել ՍՍՀՄ շինանյութերի արդյունաբերության մինիստրությունը, որը գլխավորում է Ա. Ի. Յաշինը, ինչպես և մի քանի այլ մինիստրություններ ու գերատեսչություններ։

Մենք, անշուշտ, չենք ընդառաջի խնամառուական տրամադրություններին։ Իրադրության անըմբռնողությունը, վերակառուցվել չցանկանալը, գերատեսչականությունը չպետք է գերակշռություն ձեռք բերեն հասարակական շահերի հանդեպ։ Կարծում եմ, մեր ճանապարհները չեն համընկնում այն ղեկավարների հետ, որոնք ակնկալում են երկիրը ներքաշել չհիմնավորված վիթխարի ծախսերի մեջ։

Ներդրումների արդյունավետության բարձրացման համար անհրաժեշտ է պահանջկոտություն ցուցաբերել նաև տեղական ղեկավարների նկատմամբ։ Առանց հետևանքների մասին մտածելու ավելի շատ ռեսուրսներ ստանալու ձգտումը դարձել է կուսակցական ու սովետական որոշ մարմինների աշխատանքի յուրատեսակ ոճ։ Դժբախտաբար, նման փաստերը քիչ չեն։

Իր ժամանակին երկրկոմի նախաձեռնությամբ և մի շարք մինիստրությունների ու ՍՍՀՄ պետպլանի աջակցությամբ կարևոր որոշումներ ընդունվեցին Կրասնոյարսկի երկրամասի արտադրողական ուժերի զարգացման վերաբերյալ։ Դա հեռանկարային խոշոր ռեգիոն է, և ըստ ամենայնի հարկավոր է այն զարգացնել։ Բայց, հավանաբար, և՛ այդ որոշումների նախապատրաստման, և՛ հատկապես հետագա փուլում՝ դրանց իրականացման ժամանակ, հաշվի չէին առնվել նոր շինարարության առանձնահատկությունները, չէին ուսումնասիրվել միլիարդավոր կապիտալ ներդրումները լավագույնս յուրացնելու հնարավորությունները։ Իսկ հետևանքը եղան վիթխարի կորուստները։

Վերջին երկու հնգամյակի ընթացքում երկրամասի զարգացման համար ներդրվել են վիթխարի միջոցներ՝ 23 միլիարդ ռուբլի։ Սակայն տասնյակ ձեռնարկությունների ու էլեկտրակայանների կառուցումը չի ավարտվել, ծախսերը պատշաճ հատուցում չեն տալիս։ Ավելի քան 20 տարի, կամ Բրատսկի հիդրոէլեկտրակայանի համեմատությամբ կրկնակի դանդաղ, կառուցվում է Սայանո-Շուշենսկոյեի հիդրոէլեկտրակայանը։ Ինը տարի է դատարկ են Աբականի վագոնաշինական միավորման մասնաշենքերը։ Երկրամասում այժմ սկսված է մոտ 5 հազար օբյեկտների շինարարություն։ Ուժերը փոշիացնելու հետևանքով շինարարությունը դանդաղ է ընթանում, մեծ են ռեսուրսների կորուստները։ Իսկ այդ նույն ժամանակ երկրամասի ղեկավարությունը և մինիստրությունները հարց են բարձրացնում նորանոր խոշոր օբյեկտների կառուցման մասին։ Մենք իրավասու ենք պլանային, տնտեսական մարմիններից, ինչպես և կուսակցական կազմակերպություններից պահանջելու կարգ ու կանոն մտցնել այստեղ, հասնել այն բանին, որ պետության մեծ ծախսերը արագ հատուցվեն և ոչ թե սառեցվեն սիբիրյան հողում։

Առաջատար արդյունաբերական ռեգիոնները պետք է փութեռանդ տնտեսավարման, զարգացման ինտենսիվ մեթոդների կիրառման օրինակ ցույց տան։ Կենտրոնական կոմիտեն մեծ հույսեր է դնում Մոսկվայի բանվոր դասակարգի, մտավորականության, մայրաքաղաքի գիտաարտադրական հզոր պոտենցիալի վրա։ Կկամենայի մի անգամ ևս պաշտպանել այն նշանակալից աշխատանքը, որ Լենինգրադի կուսակցական կազմակերպությունը կատարում է էկոնոմիկան ինտենսիվացման ուղու վրա փոխադրելու կապակցությամբ։ Տեղական կուսակցական մարմինների նման նախաձեռնությունը պետք է ըմբռնում ու աջակցություն գտնի կենտրոնում։ Այդ մասին ասում եմ, որովհետև ամենևին էլ ոչ միշտ է այդպես լինում։

Օրերս կուսակցության Չելյաբինսկի մարզկոմի առաջին քարտուղար Գ. Գ. Վեդեռնիկովը պատմեց, որ նախապատրաստվել է մարզի մի շարք ձեռնարկությունների վերակառուցման ծրագիր։ Միայն Չելյաբինսկի տրակտորի գործարանում վերակառուցման հաշվին նախատեսվում է, աշխատողների թիվը 10 հազար մարդով պակասեցնելով հանդերձ, արտադրության ծավալն ավելացնել մեկուկես անգամ, նվազեցնել մետաղագործական և այլ հումքի ծախ-



սումը։ Որոշ շահագրգռված մինիստրություններ և պետպլանը ձևականորեն պաշտպանեցին չելյաբինսկցիների նախաձեռնությունը և կարծես դրանով էլ սահմանափակվեցին։

Ընդհանրապես այդ գործում չելյաբինսկցիների բախտն ինչ-որ չի բերում։ Ժամանակին որոշում էր ընդունվել Չելյաբինսկի խողովակագլանման գործարանում «1220» հաստոցի վերակառուցման և այն մեծ տրամաչափի խողովակների արտադրության համար վերափոխելու մասին։ Այդ նպատակով 150 միլիոն ռուբլու ծախսումները հնարավորություն կընձեռեին տարեկան խնայելու 150 միլիոն ռուբլու օտարերկրյա վալյուտա և հրաժարվելու խողովակների մի մասը արտասահմանից գնելուց։ Հարկավոր, ձեռնտու գործ, բայց դա էլ քնեցվեց։

Հավանորեն, ժամանակն է հաշիվ պահանջել քաշքշուկի, գործին պետականորեն մոտենալու անկարողության համար, և պահանջել ամենայն լրջությամբ, յուրաքանչյուրից, ով պարտավոր է կատարել ընդունված որոշումները։

Գիտատեխնիկական առաջընթացի արագացման, երկրի տնտեսական վերելքի գործում ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն իրավունք ունի հույսը դնելու այնպիսի խոշորագույն գիտաարդյունաբերական կենտրոնների մեծ ներդրման վրա, ինչպիսին են Սվերդլովսկն ու Խարկովը, Նովոսիբիրսկն ու Դոնեցկը, Օմսկն ու Գորկին և այլն։ Դա առավել ևս անհրաժեշտ է, քանի որ նրանցից շատերի ռեզերվները ամենևին ու ամենևին լրիվ չեն օգտագործվում։

Այս ամենը, ընկերներ, ասվում է նրա համար, որպեսզի այժմ, հիմնական ուղղությունների վրա աշխատելու մնացած ժամանակամիջոցում և հնգամյա պլանը նախապատրաստելիս, բոլոր մակարդակներում այնպիսի մոտեցում ցուցաբերվի, որն ապահովի ոչ միայն նախագծի հիմքում դրված ցուցանիշների պարտադիր ձեռքբերումը, այլև դրանց բարելավումը։ Այստեղ կողմնորոշիչը մեկն է։ Տասներկուերորդ հնգամյակում քիչ ծախսումներով մենք պետք է նվաճենք ավելի բարձր բնագծեր։ Այսպիսին է տնտեսական և, եթե կուզեք, քաղաքական խնդիրը։

Արտադրության սոցիալիստական եղանակի առավելություններն անսպառ են։ Ինչպես ոչ մի այլ երկիր, մենք կարող ենք մոբիլիզացնել ունեցած վիթխարի ռեզերվները, միջոցներ կենտրոնացնել գիտատեխնիկական առաջընթացի գլխավոր ուղղություններում։ Էկոնոմիկայի պլանայնությունը, մասսաների ակտիվ ստեղծագործությունը լայն ասպարեզ են բացում ժողովրդական տնտեսության զարգացման համար։ Բայց մենք դեռևս մեր ոչ բոլոր առավելություններն ենք սովորել օգտագործել ինչպես հարկն է, հաճախ համառորեն կառչում ենք հնին։ Մի խոսքով, ընկերներ, մենք աճի հսկայական հնարավորություններ ունենք և հարկավոր է դրանք գործողության մեջ դնել։

## ԻՆՎԵՍՏԻՑԻՈՆ ԵՎ ՍՏՐՈՒԿՏՈՒՐԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԸ

Կկամենայի սկզբունքային առումով կարծիք հայտնել առաջիկա աշխատանքի հիմնական ուղղությունների մասին։

Պետք է սկսել գլխավորից՝ ինվեստիցիոն և ստրուկտուրային քաղաքականության կտրուկ փոփոխումից։ Այսօր շեշտը պետք է դրվի ձեռնարկությունների տեխնիկական վերազինման, ռեսուրսների տնտեսման, արտադրանքի որակի խիստ բարձրացման վրա։ Կարևոր է առանց վարանելու ազատվել տնտեսավարման նախկինում ձևավորված ստերեոտիպից, որի ժամանակ արտադրության ընդլայնման հիմնական մեթոդը համարվում էր նոր շինարարությունը, մինչդեռ գործող շատ ձեռնարկություններ երկար տարիներ չեն վերազինվել, նրանցից, ինչպես ասում են, քամվել է հնարավոր ամեն ինչ և ներդրվել շատ քիչ բան։ Թե դա ինչի հանգեցրեց, քաջ հայտնի է։

Ժողովրդական տնտեսության հիմնական արտադրական ֆոնդերն անցել են 1,6 տրիլիոն ռուբլուց, բայց դրանց զգալի մասը հնացել է, որը բացաս-

բար է անդրադառնում ամբողջ էկոնոմիկայի վրա։ Երկար տարիներ է, ինչ նվազում է ֆոնդահատույցը, արագորեն աճում է նոր աշխատատեղերի քանակը, և դրա հետ մեկտեղ թույլ է մեքենայացվում արտադրությունը։ Այժմ ձեռքի աշխատանքով է զբաղված մոտ 50 միլիոն մարդ. արդյունաբերության մեջ՝ բանվորների մոտ մեկ երրորդը, շինարարությունում՝ կեսից ավելին, գյուղատնտեսության մեջ՝ երեք քառորդը։

Արտադրական ապարատի հնացման հետևանքով անչափ ուռճացել է վերանորոգման ոլորտը։ Անցյալ տարի այդ նպատակով ծախսվել է 35 միլիարդ ռուբլի և սև մետաղների գրեթե մեկ հինգերորդ մասը, վերանորոգման արտադրամասերում ընդգրկված են երկրի հաստոցների համակազմի մեկ քառորդը և 6 միլիոն աշխատող։

Այսպիսին է ընդհանուր պատկերը։ Բայց դրա ետևում կանգնած են կոնկրետ ճյուղեր, միավորումներ և ձեռնարկություններ, դրանց ղեկավարները։ Պետք է ուղղակի ասել, որ շատ տնտեսավարներ, նաև կուսակցական աշխատողներ հաշտվել են ստեղծված իրադրության հետ։ Դա հասարակության վրա չափազանց թանկ է նստում։

Այժմ ոչ ոք չի առարկում, որ վերակառուցման ոլորտում կապիտալ ներդրումների հատույցը մոտ երկու անգամ ավելի է, քան նոր շինարարության մեջ։ Սակայն տնտեսավարման նախկին մեթոդները կենսունակ են։ Վերցնենք սև մետալուրգիան։ 15 տարում դրա զարգացմանը հատկացվել են 50 միլիարդ ռուբլու կապիտալ ներդրումներ։ Իսկ ինչպե՞ս են տնօրինել այդ միջոցները սև մետալուրգիայի մինիստրությունում։ Դրանց մեծ մասն ուղղվել է նոր, ընդ որում, ոչ կոմպլեքսային շինարարությանը, մինչդեռ ձեռնարկությունների վերակառուցմանն ու տեխնիկական վերազինմանը հարկ եղած ուշադրությունը չի հատկացվել։

ՍՍՀՄ սև մետալուրգիայի մինիստրության կոլեգիայի և նրա մինիստր Ի. Պ. Կազանեցի տեխնիկական սխալ քաղաքականության պատճառով ճյուղի ձեռնարկությունները չեն կատարել ոչ տասներորդ, ոչ տասնմեկերորդ հնգամյա պլանների առաջադրանքները։ Դրանք չեն բավարարում որակյալ մետաղյա արտադրանքի նկատմամբ ժողովրդական տնտեսության պահանջմունքները։ Գործերի վիճակն այստեղ պահանջում է արմատական փոփոխություններ։

Մի խոսքով, նոր շինարարության և գործող ձեռնարկությունների տեխնիկական վերազինման հարաբերակցությունը պետք է վճռականորեն փոխել։ Այդ առթիվ պետպլանի և մինիստրությունների կողմից տասներկուերորդ հնգամյակի համար նախանշված որոշ տեղաշարժերը չի կարելի բավարար համարել։ Վերակառուցմանն ուղղված միջոցների բաժինը արտադրական կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալում պետք է արդեն մոտակա տարիներին մեկ երրորդից բարձրացնել առնվազն մինչև կեսը։

Անշուշտ, առանց նոր շինարարության նույնպես մենք չենք կարող յոլա գնալ։ Բայց դա պետք է կատարել միայն այն դեպքում, երբ սպառված են գործող հզորությունների հիման վրա արտադրության աճի բոլոր հնարավորությունները, կամ էլ տեխնիկական առաջադիմության նորագույն խնդիրները լուծելու համար։ Այժմ երկրում չափազանց շատ են սկսված շինարարությունները։ Դրանցից պետք է ուշի ուշով գլուխ հանել։ Օբյեկտների մի մասի կառուցումն արագացնել, մյուսներինը՝ դադարեցնել կամ ժամանակավորապես կոնսերվացնել։ Այստեղ պետական մոտեցում է պետք։ Դա վերաբերում է ոչ միայն ՍՍՀՄ պետպլանին կամ պետշինին, այլև մինիստրություններին, բոլոր կենտրոնական, հանրապետական և տեղական մարմիններին։

Դրա հետ մեկտեղ հարկավոր է անցկացնել արտադրաֆոնդերի համընդհանուր ինվենտարիզացիա, նախանշել յուրաքանչյուր ձեռնարկության, յուրաքանչյուր ճյուղի տեխնիկական վերակառուցման հեռանկարային ծրագիր։ Մոտակա ժամանակամիջոցում հնացած հիմնական ֆոնդերի, հատկապես դրանց ակտիվ մասի դուրսգրման բաժինը պետք է կրկնապատկվի։ Հաշվի առնելով կառուցվող օբյեկտների գործարկումը՝ դա հնարավորություն կտա արդեն տաս-



ներկուերորդ հնգամյակի ավարտին ավելի քան մեկ երրորդով նորացնելու արտադրական ապարատը և նրա կազմում ունենալու մինչև 50 տոկոս նոր տեխնիկա։

Կուզենայի դրան ավելացնել, որ մեզ հարկավոր է արտաթյության ոչ թե ցանկացած նորացում, այլ միայն այնպիսին, որն ուղեկցվում է ամենաառաջավոր տեխնիկայի ներդրմամբ, տալիս է տնտեսական ու սոցիալական ամենաբարձր արդյունք։

ԶԻԼ այցելելիս քննարկվեց դրա վերակառուցման հարցը։ Ավտոգործարանայինները նախապատրաստվում են դիզելային շարժիչով բեռնատարի թողարկմանը։ Նրա բեռնատարողությունը կմեծանա, իսկ 100 կիլոմետր վազքի վրա ծախսվող վառելանյութի քանակը 29 լիտրից կիջնի մինչև 19։ Հսկայական արդյունք է։ Բայց, ինչպես պարզվեց, վերակառուցման ոչ բոլոր հարցերն են ճիշտ լուծում գտել։ Նախատեսվում է, օրինակ, լրացուցիչ ներգրավել 25 հազար մարդ։ Միթե դա խելամիտ է։ Հատկապես Մոսկվայի պայմաններում։ Այժմ ԶԻԼ-ի ղեկավարությունը նախագիծը բարելավելու առաջարկություն է մտցրել, որի իմաստն է՝ իրագործել նախանշվածը՝ առանց աշխատողների թվաքանակը մեծացնելու։ Դա, ինչպես ասում են, արդեն այլ բան է, և այդպիսի դիրքորոշումը կարելի է պաշտպանել։

Ինվեստիցիոն քաղաքականության խոշորագույն և արտակարգ սուր պրոբլեմը ռեսուրսաարդյունահանող, վերամշակող և սպառող ճյուղերի կապիտալ ներդրումների հարաբերակցությունն է։ Սովետական Միությունն ունի հզոր վառելիքաէներգետիկ կոմպլեքս։ Սակայն վառելիքի ու հումքի արդյունահանման ավելացումն ավելի ու ավելի է դժվարանում։ Մինչդեռ շատ երկրներ գնացել են ավելի ռացիոնալ ուղիով՝ ըստ ամենայնի տնտեսման, ռեսուրսախնա տեխնոլոգիաների լայն ներդրման ուղիով։ Եվ դա 2—3 անգամ ավելի էժան է նստում։ Մենք նույնպես ռեսուրսախնայողության դրական փորձ ունենք։ Այսպես, էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրությունը տասնմեկերորդ հնգամյակում արտադրանքի արտադրության ամբողջ աճն ապահովել է՝ առանց հիմնական նյութերի սպառման ավելացման։ Սակայն այստեղ էլ դեռևս մեծ ռեզերվներ կան։

Ընդհանուր առմամբ մեր էկոնոմիկան շատ բաներում մնում է վատնողական։ Ավտոպարկը դիզելային շարժիչների փոխադրելու գործում ետ մնալու պատճառով տարեկան ավելի է այրվում մինչև 8 միլիոն տոննա բենզին։ Ջերմային էլեկտրակայանների սարքավորման անկատարելության պատճառով տարեկան գերածախսվում է ավելի քան 20 միլիոն տոննա պայմանական վառելիք։ Երկրում կան հարյուր հազարավոր պարզունակ կաթսայատներ, որոնք ռացիոնալ չեն օգտագործում վառելիքը։ Վատ են օգտագործվում երկրորդային ռեսուրսները։

Ռեսուրսախնայողությունը պետք է լինի ինվեստիցիոն քաղաքականության գլխավոր չափանիշներից մեկը։ Խնդիրն այն է, որ վառելիքի, հումքի և նյութերի նկատմամբ ժողովրդական տնտեսության պահանջմունքների աճը 75—80 տոկոսով բավարարվի ի հաշիվ դրանց խնայողության։ Դա հնարավորություն կտա կայունացնել վառելիքի ու հումքի արդյունահանմանն ուղղվող կապիտալ ներդրումները։

Ինվեստիցիոն քաղաքականության մեջ կարևոր են կշռադատվածությունը, հետևողականությունը, ժողովրդատնտեսական արդյունքի արագ ձեռքբերումը։ Իհարկե, անխուսափելի է նաև այս կամ այն միջոցառումների իրագործման որոշակի հերթականությունը։ Բայց եթե մենք նախանշել ենք ինչ-որ խնդիրներ, ապա դրանց լուծումը պետք է լինի լիակատար, կոմպլեքսային, արագ և եռանդուն։ Չի կարելի թույլ տալ, որ կապիտալ ներդրումները «շաղ տրըվեն» «ամեն քրոջ մեկ ականջող» սկզբունքով։ Նոր հնգամյակում պետք է ավելի վճռականորեն ընթանալ դեպի կապիտալ ներդրումների համակենտրոնացում։

Վերցնենք ագրոարդյունաբերական համալիրի այն ճյուղերը, որոնք կոչված են լուծելու պարենային ծրագրում առաջադրված խնդիրները։ Այժմ, երբ

ճշգրտվում են հիմնական ուղղությունները, անհրաժեշտ է նախատեսել նաև դեպի ծրագրի սահմանագծերը։ Էկոնոմիկայի ագրոարդյունաբերական սեկտորում ստեղծված է հսկայական պոտենցիալ։ Մենք այստեղ հասել ենք կապիտալ ներդրումների աճի օպտիմալ չափերի։ Սակայն դրանց հատույցը դեռևս բավարար չէ։

Պատճառներից մեկը վճռական տեղամասերում ռեսուրսների թույլ համակենտրոնացումը, ճյուղերի զարգացման անհամաչափությունն է։ Մենք պահում ենք անասունների մեծ գլխաքանակ, բայց կերի թույլ բազայի պատճառով դրանց մթերատվությունը ցածր է։ Գյուղատնտեսությանը բավական շատ տեխնիկա է մատակարարվում, սակայն կոլտնտեսություններում ու սովխոզներում չկա վերանորոգման և տեխնիկական սպասարկման համապատասխան բազա։ Թեև արդեն այժմ կան կուլտուրաների մշակման ինտենսիվ տեխնոլոգիաների լայն ներդրման ռեալ պայմաններ, սակայն ռեսուրսների ու տեխնիկայի ցրման պատճառով դրանք օգտագործվում են շատ դանդաղ։

Քանիցս խոսվել է գյուղատնտեսական արտադրանքի մթերման, պահպանման, փոխադրման ու վերամշակման ոլորտի զարգացման գործում կատարվող ներդրումների արդյունավետության մասին։ Սակայն դեռևս դեպի լավը շոշափելի տեղաշարժեր չեն նկատվում, և աճեցված բերքի գրեթե մեկ հինգերորդ մասը կորչում է։ Հենց այս հարցերով էլ առաջին հերթին պետք է զբաղվեն երկրի ԱԱՀ-ի կառավարման մարմինները։

Ընկերնե՛ր։ Ժողովրդական տնտեսության վերազինման, գիտատեխնիկական հեղափոխության իրականացման գործում վճռական դերը պատկանում է մեքենաշինությանը։ Մենք պետք է արմատապես փոխենք վերաբերմունքը մեքենաշինական համալիրի նկատմամբ։

ՍՍՀՄ պետպլանը, կենտրոնական մյուս մարմինները, խոսքով արժանին հատուցելով մեքենաշինության դերին, իրականում երկար ժամանակ նրա զարգացման համար բավարար միջոցներ չեն հատկացրել։ Արտադրական բոլոր կապիտալ ներդրումներից տասնմեկերորդ հնգամյակում քաղաքացիական մեքենաշինությանը տրամադրվել է ընդամենը մոտ 5 տոկոս։ Չի կարելի ուշադրություն չդարձնել այն բանի վրա, որ ծանր և տրանսպորտային մեքենաշինության մեջ ներդրվում են 28 անգամ ավելի պակաս միջոցներ, քան այն ճյուղերում, որոնց համար նա մեքենաներ է պատրաստում, իսկ գյուղատնտեսական մեքենաշինության մեջ՝ 18 անգամ, թեթև և սննդի արդյունաբերության մեքենաների ու սարքավորումների արտադրության մեջ՝ 23, քիմիական և նավթային մեքենաշինության մեջ՝ 47 անգամ պակաս։

Համամասնությունները, ինչպես երևում է, անհամաչափ են։ Կարծում ենք, կարելի է և պետք է արվի կապիտալ ներդրումների մասնակի վերաբաշխում՝ հօգուտ մեքենաշինության համապատասխան ճյուղերի։ Ինչպես երևում է, դա ինվեստիցիոն քաղաքականության վերակառուցման կարևորագույն ուղղություններից մեկն է։ Այդպիսի փորձ կա արդեն։ Մենք հենց այդպես վարվեցինք ագրոարդյունաբերական համալիրի զարգացման միջոցառումները մշակելիս։ Գյուղատնտեսության հաշվին մեքենաշինարարներին լրացուցիչ հատկացվել է գրեթե 6 միլիարդ ռուբլի։ Կյանքը ցույց տվեց, որ դա օգնեց գործին։ Այժմ գյուղատնտեսական մեքենաշինությունն իրագործում է մի ծրագիր, որը պետք է լուծի աշխատանքի կոմպլեքսային մեքենայացման խնդիրը գյուղում։

Հարկ է մեկ անգամ ևս անդրադառնալ ինվեստիցիաների հարցին, որպեսզի 1986—1990 թվականներին քաղաքացիական մեքենաշինության մինիստրությունների համար կատարվող կապիտալ ներդրումները տասնմեկերորդ հնգամյակի համեմատությամբ ավելացվեն 1,8—2 անգամ։ Այդպիսի մոտեցումը կհամապատասխաներ մեր էկոնոմիկայի տեխնիկական վերասարքավորման շահերին։

Առաջին հերթին պետք է վերակառուցվի բուն մեքենաշինությունը։ Դրա վերազինման համար պահանջվում է խիստ ավելացնել ժամանակակից հաստոցների, դարբնոցամամլիչային, ձուլման, կռման և այլ առաջավոր տեխնոլոգիական սարքավորման արտադրությունը։ Հաստոցաշինական արդյունա-



բերության մինիստրությունը մեն-մենակ այդ խնդիրը չի կարողանա լուծել։ Հավանաբար, պաշտպանական ճյուղերի օրինակով յուրաքանչյուր մեքենաշինական մինիստրությունում անհրաժեշտ է լայնորեն ծավալել հատուկ սարքավորման թողարկումը սեփական կարիքների համար։ Եվ, ընդհանրապես, պաշտպանական ճյուղերի փորձը պետք է լրիվ չափով օգտագործել։

Արդի գիտատեխնիկական առաջադիմության կատալիզատորը, ինչպես հայտնի է, միկրոէլեկտրոնիկան է, հաշվողական տեխնիկան և սարքաշինությունը, ինֆորմատիկայի ողջ արդյունաբերությունը։ Դրանք վճռական ազդեցություն են գործում աշխատանքի միջոցների, բոլոր ճյուղերում տեխնոլոգիական համակարգերի արդյունավետության վրա։ Օրինակ, «Էներգիա» գիտաարտադրական միավորումում հայրենական մշակող կենտրոններով և հաշվողական տեխնիկայով սարքավորված ճկուն ավտոմատացված տեղամասերում վեց անգամ բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը։ Ավտոմատ նախագծման համակարգերի կիրառումը ավիացիոն արդյունաբերության կոնստրուկտորական բյուրոներում հնարավորություն է տվել 3 անգամ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը և երկուսուկես տարով կրճատել նախագծման ժամկետը։

Դա իրոք արտադրության մեջ իր հետ հեղափոխական փոփոխություններ բերող նոր տեխնիկա է։ Սակայն դրա արդյունավետությունը կախված է ոչ միայն թողարկման ընդլայնումից, այլև ժողովրդական տնտեսության մեջ տեխնիկայի հմուտ կոմպլեքսային օգտագործումից։ Այստեղ դեռևս ամեն բան կարգին չէ։ Օրինակ, հաշվողական տեխնիկայի միջոցներն արտադրվում և սպասարկվում են տարբեր մինիստրությունների կողմից, որոնց միջև հարկ եղած կոորդինացում չկա։

Վերջին տարիներին ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը ընդունեցին մի շարք կարևոր որոշումներ մեքենաշինության այնպիսի վճռական ուղղությունների զարգացման վերաբերյալ, ինչպիսին են ավտոմատացված ճկուն արտադրությունները, ռոտորային և ռոտորակոնվեյերային գծերը, նախագծման ավտոմատ համակարգերի, հաշվողական տեխնիկայի մշակումը, թողարկումն ու կիրառումը ժողովրդական տնտեսության մեջ։ Դրանք նպատակամղված են տեխնոլոգիական նոր պրոցեսների, այդ թվում՝ ավտոմատ գործարանների ստեղծմանը, որոնք աշխատում են, այսպես կոչված, անմարդ տեխնոլոգիայով։ Դրանով իսկ լուրջ բազա է արկանվում ժողովրդական տնտեսության տեխնիկական վերակառուցման հիմքի՝ սովետական մեքենաշինության, հզոր վերելքի համար։ Դա մեր զարգացման գլխավոր ուղղությունն է, այն պետք է խստորեն պահպանել ներկայումս և ապագայում։

Ընկերնե՛ր։ Գիտատեխնիկական առաջադիմության վճռական արագացման տեսանկյունից հարկավոր է գնահատել նաև գործերի վիճակը կապիտալ շինարարությունում։ Այդ պրոբլեմը երկար տարիներ դուրս չի գալիս օրակարգից, սակայն արմատական բարելավում այստեղ դեռևս տեղի չի ունեցել։

Վերցրեք նախագծային գործը։ Բազմաթիվ կազմակերպություններ շարունակում են թողարկել այնպիսի նախագծեր, որոնցում դրվում են տեխնոլոգիական անարդյունավետ լուծումներ։ Այդ պատճառով ամեն տարի դրանց բավական մեծ մասը վերադարձվում է վերամշակման։ Շարունակվում է կապիտալ ներդրումների փոշեցրումը։ Անասելի ձգձգվում են շինարարության ժամկետները, որի հետևանքով նույնիսկ լավագույն նախագծերը անհուսալիորեն հնանում են։ Մենք այլևս չենք կարող այդպես վարել շինարարությունը։ Դրա նախագծման ու պլանավորման մեջ պետք է կարգուկանոն մտցվի, ապահովվեն կապիտալ ներդրումների համակենտրոնացումը, օբյեկտների կառուցման նորմատիվ ժամկետների պահպանումը, շինարարական արտադրությունը դարձվի միասնական արդյունաբերական պրոցես։

Եվս մի կարևոր պրոբլեմի մասին։ Ժողովրդական տնտեսության արդյունավետությունը, մեր աճի տեմպերը շատ բանով կախված են նյութերի կառուցվածքից ու որակից։ Մենք այդ գործում դեռևս ետ ենք մնում։

Հայտնի է, օրինակ, որ մեզ մոտ բոլորից շատ է պողպատ արտադր-

վում, իսկ մետաղը շարունակ չի բավականացնում։ Գլխավոր պատճառներն են՝ անբավարար որակը, սահմանափակ նմուշատեսակները ու նաև մետաղի վատնողական օգտագործումը։ Նյութերի ընդհանուր ծավալում պլաստմասսաների, կերամիկայի և ոչ մետաղական մյուս պրոգրեսիվ նյութերի բաժինը դեռևս մեծ չէ։ Աշխարհում աճում է շատ բաներում ժամանակակից տեխնիկայի մակարդակը բնորոշող փոքրատոննաժ քիմիայի, մաքուր և գերմաքուր նյութերի արտադրության իսկական բում։ Դրա համար էլ պետք է կրկնապատկել, եռապատկել ջանքերը, որպեսզի ետ չմնանք։

Ելնելով գիտատեխնիկական առաջադիմության խնդիրներից՝ հարկավոր է նորովի մոտենալ մեր արտաքին տնտեսական ստրատեգիային։ Համաշխարհային միտումն այնպիսին է, որ շատ երկրներում արտաքին առևտուրն արտադրությունից երկու անգամ ավելի արագ է աճում։ Դա գիտատեխնիկական և տնտեսական զարգացման հզոր արագացուցիչ է։ Մեր երկրի արտաքին առևտրական շրջանառու գումարը հասել է բավական մեծ ծավալի՝ 140 միլիարդ ռուբլու, բայց դրա աճի տեմպերը կարելի է և պետք է արագացնել, իսկ գլխավորը՝ իրագործել խոր կառուցվածքային տեղաշարժեր, թե՛ արտահանմանը, թե՛ ներմուծմանը հաղորդել ավելի պրոգրեսիվ բնույթ։

Մեզ մոտ վերջին տարիներին մեքենաների ու սարքավորումների արտահանումը դանդաղ է աճում։ Այստեղ իրենց զգացնել են տալիս և՛ ցածր մրցունակությունը, և՛ արդյունաբերական ձեռնարկությունների անբավարար նյութական շահագրգռվածությունը։ Այլևս դրա հետ հաշտվել չի կարելի։ Կարևոր է ավելի ակտիվորեն խթանել աշխատավորական կոլեկտիվներին, միավորումներին, ամբողջությամբ վերցրած ճյուղերին՝ արտահանվող արտադրանքի արտադրությունն ավելացնելու գործում։

Ներմուծման քաղաքականության մեջ մենք պետք է ավելի արդյունավետ օգտագործենք աշխատանքի փոխշահավետ միջազգային բաժանման հնարավորությունները։ Անշուշտ, դա առաջին հերթին վերաբերում է ՏՓԽ-ի անդամ երկրների հետ մեր ունեցած կապերին։ Այդուհանդերձ, ՍՍՀՄ-ը տնտեսական կապեր կզարգացնի նաև այլ պետությունների հետ։

Քանի որ մենք այսուհետ ևս պիտի խորացնենք արտաքին տնտեսական և գիտատեխնիկական կապերը, կուզենայի առանձնացնել մի պրոբլեմ, որն անհանգստացնում է մեզ։ Խոսքը համաշխարհային շուկայում ձեռք բերվող մեքենաների ու սարքավորման օգտագործման մասին է։ Այդ պրոբլեմը նոր չէ, բայց գործի շոշափելի բարելավում դեռևս չկա։ Գնումները պլանավորելիս ամեն ինչ չէ, որ կշռադատվում է. երբեմն դրանք չեն շաղկապվում կապիտալ շինարարության պլանների հետ։ Ներմուծվող տեխնիկայի ձեռքբերման իրենց պահանջները եռանդագին պաշտպանող մինիստրություններն ու գերատեսչությունները հարկ եղած ուշադրություն չեն նվիրում այն շինարարություններին, որտեղ հզորություններն ստեղծվում են ներմուծվող սարքավորման համար։ Որպես օրինակ կարելի է նշել ՍՍՀՄ նավթավերամշակման և նավթաքիմիական արդյունաբերության մինիստրությունը։ Մինիստր Վ. Ս. Ֆյոդորովը բազմիցս հավաստիացրել է, որ գնվող սարքավորման օգտագործման մեջ կարգուկանոն կմտցվի, բայց, ինչպես երևում է, իր խոսքի տերը չէ։ Հանձնարարված է հանգամանորեն ուսումնասիրել այդ գործը և զեկուցել քաղբյուրոյին։

Ընկերնե՛ր։ Ժողովրդական տնտեսության նոր տեխնիկական վերակառուցման իրագործումը կպահանջի հսկայական կապիտալ ներդրումներ։ Որտեղի՞ց վերցնել դրանք։ Սկզբունքային պատասխանն այսպիսին է. գիտատեխնիկական առաջընթացի արագացման նախանշված միջոցառումները պետք է իրենք ծածկեն իրենց ծախսը։ Դրանք անցկացվում են հենց նրա համար, որ բարձրացնեն աշխատանքի արտադրողականությունը, ուստի և՝ արագացնեն ազգային եկամտի աճը։ Սակայն արդյունք ստանալու համար որոշակի ժամանակ կպահանջվի, իսկ միջոցները պետք է ներդնել անհապաղ։ Այստեղ ևս մենք չենք կարող յոլա գնալ առանց ռեսուրսներով մանևրելու, դրանք համակենտրոնացնելու այն հիմնական ուղղություններում, որոնք կարող են արագորեն զգալի օգուտ տալ։



Այժմ գլխավորը կազմակերպական, տնտեսական և սոցիալական գործոնների մոբիլիզացումն է, կարգուկանոնի հաստատումը, պատասխանատվության ու կարգապահության բարձրացումը, արտադրության և աշխատանքի կազմակերպման բարելավումը՝ այն ամենի լավագույն օգտագործման համար, ինչ ունի երկիրը։ Յուրաքանչյուր միավորումում և ձեռնարկությունում, յուրաքանչյուր արտադրական տեղամասում հարկավոր է որոշել այն օղակները, որտեղ նվազագույն լրացուցիչ միջոցներով, իսկ երբեմն էլ բոլորովին առանց դրանց կարելի է ստանալ առավելագույն արդյունք։ Փորձը ցույց է տվել, որ միայն ի հաշիվ աշխատատեղերի ատեստացիայի՝ կարելի է 5—10 տոկոսով կրճատել աշխատանքի ծախսերը, բարձրացնել ֆոնդահատույցը։ Աշխատանքի կազմակերպման ու խթանման տնտհաշվարկային կոլեկտիվ ձևերի ներմուծումը բարձրացնում է դրա արտադրողականությունը 15 և ավելի տոկոսով՝ միաժամանակ տնտեսելով ռեսուրսները։ Շատ բան կտա ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում կորուստների կրճատման ուղղությամբ սիստեմատիկ տարվող աշխատանքը։

Խնայողության ռեժիմը դեպի մեր հարստությունը տանող ուղին է, հիրավի՝ բոլոր խնդիրների խնդիրը, համակուսակցական, համաժողովրդական գործ։

Գիտատեխնիկական առաջադիմության, արտադրության կազմակերպման մակարդակի, աշխատանքի կուլտուրայի և կարգապահության ամենաօբյեկտիվ և ընդհանրացնող ցուցանիշը արտադրանքի որակն է։

Վերջին տարիներին այդ առումով մեզ մոտ նկատվել է առաջխաղացում դեպի լավը։ Սակայն պետք է խոստովանել, որ արտադրանքի որակը, տեխնիկատնտեսական և գեղագիտական մակարդակը մեր էկոնոմիկայի ամենախոցելի տեղերից մեկն է, բազմաթիվ դժվարությունների ու պրոբլեմների աղբյուրը։ Այդ ամենը մեզ սոցիալ-տնտեսական և բարոյաքաղաքական լուրջ վնաս է հասցնում։ Միանգամայն անթույլատրելի է, երբ նոր ստեղծվող տեխնիկան արդեն նախագծման փուլում լինում է բարոյապես հնացած, իր հուսալիությամբ, աշխատանքի ռեսուրսով և խնայողությամբ զիջում է լավագույն նմուշներին։ Նույնիսկ ամենաբարձր կատեգորիայի շարքը դասված արտադրանքն իր պարամետրերով երբեմն համաշխարհային լավագույն նմուշների հետ քննություն չի բռնում։ Հարկավոր է ավելի խստորեն պահպանել պետական որականիշի շնորհման պահանջները։ Արտադրանքի որակը պետք է ոչ միայն պրոֆեսիոնալ, այլև ազգային հպարտության առարկա լինի։

Կարծում ենք, ճիշտ կլինի նախագծողների ու կոնստրուկտորների աշխատանքը լավորակ համարել այն ժամանակ, երբ նրանց առաջարկած տեխնիկական լուծումները մարմնավորեն ամենաառաջավոր գիտական մտքի նվաճումները, ապահովեն աշխատանքի արտադրողականության բազմապատիկ բարձրացում և դրա պայմանների բարելավում, արտադրության արդյունավետության շեշտակի աճ։ Մյուս կողմից, որակը արտադրության առաջավոր կազմակերպման, տեխնոլոգիական կարգապահության հարց է։ Չէ՞ որ անորակ արտադրանքի թողարկումը երկու երրորդով կապված է դրանց խախտման հետ։

Արտադրանքի որակի բարձրացման, դրա ատեստավորման օբյեկտիվության համար առաջին հերթին պետք է պատասխան տան համապատասխան մինիստրությունները։ Բայց դրանում հատուկ դեր է պատկանում պետստանդարտին։ Նրա անմիջական պարտականությունն է հուսալի արգելապատնեշ դնել ցածրորակ արտադրանքի թողարկմանը։

Իհարկե, որակի պրոբլեմը մի հարվածով չես լուծի։ Բայց այդ աշխատանքում չի կարող արդարացվել որևէ հապաղում։ Ո՛չ ոք՝ ո՛չ մի ձեռնարկություն, ո՛չ մի կոնստրուկտոր, տեխնոլոգ կամ գիտնական, ո՛չ մի բանվոր կամ կոլտնտեսական, մի խոսքով, ո՛չ մի ազնիվ աշխատավոր դրանից մի կողմ քաշվելու իրավունք չունի։ Կուսակցությունն ակտիվորեն կաջակցի սովետական մակնիշի պատվի համար մղվող պայքարին և խստորեն հաշիվ կպահանջի նրանցից, ովքեր պասիվ դիրք են գրավում, արգելակում են այդքան սուր պրոբլեմի լուծումը։

## ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՊՈՏԵՆՑԻԱԼԻՆ՝ ՀԵՏԱԳԱ ԶԱՐԳԱՑՈՒՄ ԵՎ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՕԳՏԱԳՈՐԾՈՒՄ

Ընկերնե՛ր։ Ժողովրդական տնտեսության մեջ գիտատեխնիկական առաջընթացի արագացման համար մղվող պայքարի առաջավոր գիծն անցնում է գիտության միջով։ Երկրում ստեղծված է գիտատեխնիկական հզոր պոտենցիալ։ Գիտության զարգացմանը հատկացվում է ազգային եկամտի շուրջ 5 տոկոսը։

Սովետական գիտնականների հաջողությունները գիտելիքների և տեխնիկական առաջընթացի տարբեր ոլորտներում հանրաճանաչ են։ Կարելի է հպարտանալ տիեզերքի հետազոտման, մաթեմատիկայի, մեխանիկայի, ջերմամիջուկային սինթեզի, քվանտային էլեկտրոնիկայի հիմնարար նվաճումներով։ Լավ արդյունքներ են ձեռք բերվել այնպիսի բնագավառներում, ինչպիսին են միջուկային էներգետիկան, երկրի կեղևի կառուցվածքի հետազոտությունները, այդ թվում՝ աշխարհում ամենախոր հորատանցքի օգնությամբ, համաշխարհային օվկիանոսի ուսումնասիրումը, օրգանական միացությունների սինթեզը, պրոգրեսիվ նյութերի և տեխնոլոգիական պրոցեսների ստեղծումը։ Որոշակի հաջողություններ կան գենետիկական և բջջային ինժեներիայում, որն ունակ է հեղափոխականացնել հիվանդությունների և անբարենպաստ կլիմայական պայմանների հանդեպ դիմացկուն, բարձրարդյունավետ, նոր սորտերի բույսերի ու անասունների ցեղատեսակների ստեղծման պրոցեսները, ինչպես նաև օգնել առողջապահությանը։

Մենք ունենք ոչ քիչ առաջնակարգ ինստիտուտներ, կոնստրուկտորական բյուրոներ, ստեղծագործական կադրեր։ Գրեթե բոլոր ուղղություններով կան բարձր արդյունավետության գիտատեխնիկական մշակումներ։ Դրանք բազմաթիվ անգամ աշխատանքի արտադրողականությունը բարձրացնող ռոտորակոնվեյերային գծերն են, զոդման ավտոմատացված համակարգերը, գերբարձր ճնշումների փոքրածավալ մամլիչներն ու ժամանակակից կտող մեքենաները, որոնք մեքենաշինության մեջ ապահովում են մետաղի թափոնների էական կրճատում, պոլիմերային նյութերի բարձրարդյունավետ տիպերը և շատ այլ բաներ։

Դրա հետ մեկտեղ, ընկերներ, մենք կարող ենք և պետք է անհամեմատ ավելի մեծ արդյունք ստանանք գիտական հետազոտություններից։ Անհրաժեշտ է գիտության խնդիրներին նայել նորովի, ժամանակի պահանջների, նրա՝ դեպի հասարակական արտադրության կարիքները, իսկ արտադրությանը՝ դեպի գիտությունը վճռական շրջադարձի պահանջների լույսի տակ։ Այդ դիրքերից պետք է վերլուծվեն ու ամրապնդվեն գիտությունը, տեխնիկան և արտադրությունը միավորող բոլոր օղակները։

Հայրենական գիտական պոտենցիալի միջուկը, բնականաբար, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիան է, ուր կենտրոնացված են գիտնականների առավել որակյալ կադրերը։ Ակադեմիայի շատ ինստիտուտներ համաշխարհային կարգի հետազոտական կենտրոններ են։ Սակայն դեռ շատ բան կա անելու, որպեսզի բոլոր ինստիտուտների գործունեությունը ակադեմիային արժանի մակարդակ ունենա, գիտելիքների գանձարանը համալրի նոր հայտնագործություններով։

Առաջնային նշանակություն պետք է տալ հիմնարար գիտության զարգացմանը։ Հենց այն է հանդես գալիս որպես գաղափարների գեներատոր, ուղիներ բացում դեպի նոր բնագավառներ, ելք տալիս դեպի արդյունավետության նոր մակարդակ։ Հիմնարար հետազոտությունները չափազանց պատասխանատու գործ են՝ դրանց զարգացման հարցում թուլությունների հետ հաշտվելու, դանդաղկոտություն ու ծանրաշարժություն թույլ տալու համար։

Հարկավոր է ակադեմիական ինստիտուտները կտրուկ կերպով շրջել տեխնիկական ուղղություն ունեցող աշխատանքների ընդլայնման կողմը, բարձրացնել դրանց դերն ու պատասխանատվությունը տեխնիկայի ու տեխնոլոգիայի սկզբունքորեն նոր տեսակների տեսական հիմքերի ստեղծման հա-



մար։ Այստեղ մենք հարուստ ավանդույթներ ունենք։ Հիշեցեք սովետական գիտնականների՝ տեխնիկական գիտությունների զարգացման լիդերների, հանրաճանաչ դարձած այնպիսի գիտնականների մասնակցությունը, ակադեմիկոսներ Ի. Պ. Բարդինին, Ս. Վ. Լեբեդևին, Ա. Ն. Տուպոլևին, Ի. Վ. Կուրչատովին, Ս. Պ. Կորոլյովին։ Կասկած չկա, որ այդ ավանդույթները կբազմապատկվեն։ Այդ կապակցությամբ հարկավոր էր մտածել նաև մեքենաշինության պրոբլեմների բաժանմունք ստեղծելու մասին։

Շատ արդյունավետ է ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի շրջանակներում Ե. Օ. Պատոնի անվան էլեկտրազոդման ինստիտուտի նման միջճյուղային կոմպլեքսային գիտատեխնիկական կենտրոնների կազմակերպումը։ Դրանց ստեղծման օգտին արտահայտվում են կուսակցական աշխատողներ, շատ գիտնականներ, մասնագետներ։ Նման կենտրոններն ի վիճակի են դառնալու հիմնարար հետազոտությունները և միջճյուղային գիտատեխնիկական կարևորագույն ուղղությունների գծով ամբողջ աշխատանքը կոորդինացնող գլխամասային կազմակերպություններ։ Դրանք գլխավորել կարող էին և՛ գիտական, և՛ կազմակերպչական աշխատանքի փորձ ունեցող առավել խոշոր գիտնականներն ու մասնագետները։ Հավանաբար, կենտրոնների կազմում նպատակահարմար է ունենալ կոնստրուկտորական բյուրոներ, նախագծային կազմակերպություններ և փորձնական ձեռնարկություններ։ Այդ ճանապարհով մենք ժամանակին լուծեցինք տիեզերական տարածության յուրացման, ատոմի էներգիայի օգտագործման պրոբլեմը։ Կուտակված արժեքավոր փորձից հրաժարվելը խելացի չէր լինի։ Ժամանակն է գործը փոխադրել գործնական ռելսերի վրա։ ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի նախագահությունը և գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեն պետք է նախապատրաստեն ու համապատասխան առաջարկություններ անեն։

Մեծ ռեզերվներ ունի բուհական գիտությունը։ Երկու տասնյակ տարի, եթե ոչ ավելի, մենք խոսում ենք գիտական այդ վիթխարի պոտենցիալի արդյունավետ օգտագործման անհրաժեշտության մասին, այն մասին, որ վերացվի գերատեսչական մեկուսացվածությունը հետազոտական հիմնարկությունների, բուհերի և արտադրության միջև, իսկ դրությունը շատ դանդաղ է փոխվում։

Ըստ ունեցած գնահատականների, բուհերը գիտահետազոտական աշխատանքների ծավալը կարող են ավելացնել 2—2,5 անգամ։ Այստեղ ժողովրդատնտեսական հատույցն արմատապես բարձրացնելու համար հարկավոր է փոխել պլանավորման կարգը, սահմանել նոր չափանիշներ, կատարելագործել լծակների ու խթանների համակարգը, բուհերին ձեռնարկություններ հանձնել՝ որպես փորձարարական բազա։ Մենք երկու տեսակ օգուտ կստանանք. մի կողմից՝ կբազմապատկենք մեր գիտատեխնիկական պոտենցիալը և կբարձրացնենք նրա օգտագործման արդյունավետությունը, իսկ մյուս կողմից՝ պայմաններ կստեղծենք կադրերի առավել որակյալ պատրաստման համար, որոնք հենց բուհական նստարանից լայնորեն կներգրավվեն արտադրության կատարելագործման ստեղծագործական աշխատանքում։

Հատուկ պահանջներ պետք է ներկայացվեն ճյուղային գիտությանը։ Պետությունը վիթխարի ծախսեր է կատարում գիտական ու տեխնիկական ճյուղային կազմակերպություններ պահելու համար։ Այստեղ է կենտրոնացված երկրի գիտնականների ավելի քան կեսը։ Այստեղ է ուղղվում հետազոտությունների և մշակումների բոլոր հատկացումների մի զգալի մասը։ Միայն արդյունաբերական մինիստրությունների ենթակայության տակ կան հարյուրավոր գիտահետազոտական հիմնարկություններ, նախագծատեխնոլոգիական ու կոնստրուկտորական կազմակերպություններ։

Ցավոք, շատ ցածր են դրանցից շատերի գործունեության՝ ճյուղի գիտատեխնիկական կերպարում արտահայտվող վերջնական արդյունքները։ Քիմիական արդյունաբերության մինիստրությունը, օրինակ, տառացիորեն պատված է բազմաթիվ գիտական տարբեր հիմնարկություններով ու փորձնական արտադրություններով։ Բայց և միևնույն ժամանակ այդ ճյուղում խոշոր թերու-







թյուններ հայտնաբերվեցին նոր նյութերի ու տեխնոլոգիաների մշակման գործում։

Գիտական մշակումներում, ցավոք, հետ են մնում ոչ միայն քիմիկոսները։ Վերցնենք ՍՍՀՄ գունավոր մետալուրգիայի մինիստրության ալյումինամագնիումային համամիութենական ինստիտուտը։ Այստեղ ալյումինի արտադրության համար ստեղծվել էին հզոր էլեկտրալիզերներ։ Այժմ, երբ դրանցից արդեն թողարկվել է ավելի քան 350 հատ, պարզվել է, որ կոնստրուկտիվ սխալների պատճառով դրանք գործում են, նախագծային ցուցանիշի համեմատությամբ, էլեկտրաէներգիայի մեծ գերածախսումով։ Այժմ այդ սարքավորումների վերջնական մշակման համար պահանջվում են լրացուցիչ միլիոնավոր ռուբլիներ։

Ճյուղային գիտության գլխավոր թուլությունը, որքան էլ այդ տարօրինակ է, արտադրությունից կտրվածությունն է։ Այն հաղթահարելու նպատակով հարկ կլիներ արդեն այժմ ճյուղային ինստիտուտներից և նախագծակոնստրուկտորական կազմակերպություններից շատերը ներառնել միավորումների և ձեռնարկությունների կազմի մեջ՝ դրանով իսկ ուժեղացնելով գիտության գործարանային սեկտորը։ Եվ, ընդհանրապես, հարկավոր է պարզել, թե ճյուղային գիտական հիմնարկությունների և կազմակերպությունների գոյություն ունեցող ցանցը որքանով է համապատասխանում արդի պահանջներին։ Ընթացիկ հնգամյակում գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեն նման փորձ ձեռնարկել է, բայց գործը մինչև վերջ չի հասցրել։

Շատ կարևոր է նոր ազդակ հաղորդել գիտաարտադրական խոշոր միավորումների ցանցի զարգացմանը։ Դրանք կոչված են դառնալու գիտատեխնիկական առաջընթացի իսկական ֆորպոստներ, ինչպիսին են այսօր «Կրիոգենմաշ», «Սվետլանա» գիտաարտադրական միավորումները, Նիկոլաևի քանյութային սարքավորում թողարկող միավորումը և շատ ուրիշներ։ Առայժմ այդ կարևոր գործին անբավարար ուշադրություն է նվիրվում։ Այնպիսի վիթխարի մի երկրում, ինչպիսին մերն է, կա ընդամենը 250 գիտաարտադրական միավորում, և դրանց համար էլ պատշաճ պայմաններ չեն ստեղծված։

Գիտության արդյունավետության բարձրացումը մեծ չափով կախված է փորձնա-փորձարարական և նախագծակոնստրուկտորական բազայի վիճակից, որը, ուղղակի պետք է ասել, վրիպումների պատճառով իր զարգացմամբ խիստ հետ է մնացել և արգելակում է գիտական հայտնագործությունների ու մշակումների արմատավորումը։ Նույնիսկ արդյունաբերության մեջ ինստիտուտների մեկ քառորդը համապատասխան բազա չունի։ Փորձնական բազայի զարգացման, գիտական հիմնարկությունները ապարատուրաներով ու սարքերով ապահովելու պրոբլեմը պետք է լուծվի, և որքան կարելի է՝ ավելի արագ։ Այստեղ նույնպես ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայից, գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեից ու այլ հիմնարկություններից մենք սպասում ենք կոնկրետ առաջարկություններ։

Գիտատեխնիկական առաջընթացի արագացման գործում ոչ պակաս կարևոր դեր պետք է խաղա աշխատավորների տեխնիկական ստեղծագործությունը։ Անհրաժեշտ է հիմնավորապես բարելավել գյուտարարների և ռացիոնալիզատորների հետ տարվող աշխատանքը, գտնել նորույթների ընտրության ձև և ապահովել դրանց ամենաարագ ներդրումը։

ՍՄԿԿ Կենտկոմը և սովետական կառավարությունը հուսով են, որ երկրի գիտնականները, ամբողջ գիտատեխնիկական մտավորականությունն իրենց սրտին մոտ կընդունեն այն խնդիրները, որոնք առաջադրում է կուսակցությունը, ուժերը չեն խնայի գիտատեխնիկական առաջընթացի արագացման համար (ծափահարություններ)։



## ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՈՒՄԸ

Ընկերնե՛ր։ Գիտատեխնիկական առաջընթացի արագացումը վճռականորեն պահանջում է պլանավորման ու կառավարման համակարգի, տնտեսական ողջ մեխանիզմի խոր վերակառուցում։ Առանց դրա այն ամենը, ինչի մասին մենք այսօր խոսում ենք, կարող է մնալ սոսկ բարի ցանկություն։

Ահա արդեն շատ տարիներ է մենք պտտվում ենք այդ պրոբլեմների շուրջը, չափ ու ձև ենք անում, թե ինչպես ավելի լավ է դրանց մոտենալ։ Բայց ռեալ առաջխաղացումը փոքր է։ Ըստ երևույթին, խանգարում են սխալվելու, վճռական գործողությունների դիմելու վախը, իսկ երբեմն էլ՝ բացահայտ պահպանողականությունը։ Եվ մենք այսօր բախվում ենք, ըստ էության, նույն այն պրոբլեմներին, որոնք ծագել են տասնամյակներ առաջ, բայց դարձել են ավելի սուր, ավելի ու ավելի ակնառու ենք համոզվում, որ այդ աշխատանքում իներցիան, տեղապտույտն այլևս անհանդուրժելի են։ Անցյալի փորձից հարկավոր է քաղաքական ու գործնական լուրջ եզրակացություններ անել և, ժամանակ չկորցնելով, անցնել պլանավորման ու կառավարման բարձրարդյունավետ համակարգի ստեղծման։

Տնտեսական կառավարման վերակառուցման գլխավոր ուղղությունն սկզբունքորեն մեզ պարզ է։ Դա սոցիալիստական տնտեսության առավելությունների առավել խոր ու բազմակողմանի օգտագործումն է։ Մենք պետք է ընթանանք դեմոկրատական ցենտրալիզմի հետագա ամրապնդման ու զարգացման ուղիով։ Կառավարման ու պլանավորման կենտրոնացման սկզբունքի արդյունավետության բարձրացում, ձեռնարկությունների ու միավորումների տնտեսական ինքնուրույնության և պատասխանատվության զգալի ընդլայնում, ղեկավարման, տնտհաշվարկի և ապրանքադրամական հարաբերությունների, տնտեսական լծակների ու խթանների ողջ զինանոցի առավել ճկուն ձևերի ու մեթոդների ակտիվ օգտագործում— ահա թե որն է վերակառուցման սկզբունքային էությունը։ Կենտրոնի և տեղերի ջանքերի միասնության, տնտեսավարման սոցիալիստական եղանակների բազմազանության ու ճկունության, մասսաների նախաձեռնության լայն զարգացման մեջ է հաջողության հուսալի բանալին։

Սոցիալիստական պայմաններում տնտեսական ուզածդ օղակի աշխատանքի գնահատման հիմնական չափանիշը պետք է լինեն լավագույն վերջնական արդյունքների հասնելը, հասարակական պահանջմունքների առավել լիակատար բավարարման ապահովումը։ Այդ նպատակին պետք է ուղղել կառավարման ողջ համակարգը, տնտեսական ողջ մեխանիզմը։ Եթե կարճ ասենք, ապա պետք է հաղթահարել արտադրողի դիկտատը սպառողի հանդեպ, վերացնել ինչպես արտադրության միջոցների, այնպես էլ սպառման առարկաների դեֆիցիտը, էկոնոմիկան դարձնել դինամիկ, հաշվեկշռված և գիտատեխնիկական առաջընթացի նկատմամբ առավելապես ընկալունակ, ապահովել դրանում ժողովրդական տնտեսության բոլոր օղակների կենսական շահագրգռվածությունը, նրանց անկասելի պատասխանատվությունը գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների արմատավորման, աշխարհում առաջավոր բնագծեր դուրս գալու համար։

Դուք գիտեք, որ այդ պրոբլեմների լուծման վրա ակտիվորեն աշխատում է ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն։ Նորանոր ճյուղեր են ընդգրկվում խոշորամասշտաբ տնտեսական գիտափորձերում։ Բայց, ինչպես պայմանավորվեցինք Կենտկոմի ապրիլյան պլենումում, հարկավոր է գիտափորձից անցնել տնտեսավարման ու կառավարման ամբողջական համակարգի ստեղծմանը։

Ի դեպ, երբ ես Լենինգրադում էի, ուշադրություն դարձրի մի ռեպլիկի վրա, որի մասին հարկավոր է հատկապես ասել։ Ժողովրդի մեջ արդեն նկատել են, որ տնտեսական շատ գիտափորձեր են անցկացվում, բայց ստուգվող մեթոդների ինչ-որ շոշափելի ելք, որը տաներ դեպի պրակտիկա, չի երևում։ Եվ ահա հարց է ծագում. իսկ արդյոք ոմանք նման ճանապարհով չե՞ն փոր-

ձում խուսափել հասունացած պրոբլեմների լուծումից։ Եթե մենք և՛ մեկ, և՛ երկու, և՛ երեք տարի կրկնենք, որ գիտափորձ ենք կատարում, որ այն ընդլայնել ենք ևս երկու-երեք ճյուղերում, և միևնույն ժամանակ տնտեսական կառավարման ամբողջական համակարգ չմշակենք, ապա գործն առաջ չի գնա։ Ուստի նման համակարգի մշակումը պետք է ավարտվի կարճ ժամկետում, որպեսզի տասներկուերորդ հնգամյակում ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերն անցնեն կառավարման ու տնտեսավարման նոր մեթոդների։

Հարկավոր է սկսել վերին էշելոններից։ Գիտատեխնիկական հեղափոխության հետ կապված արտակարգ կարևոր խնդիրները պահանջում են պլանավորման էական բարելավում և ՍՍՀՄ պետպլանի՝ որպես տնտեսության կառավարման կենտրոնական օղակի, դերի ու պատասխանատվության արմատական բարձրացում։ Գործնականում պահանջվում է իրականացնել լենինյան դրույթն այն մասին, որ պետպլանը պետք է վերածվի երկրի գիտատնտեսական մարմնի, ուր կկենտրոնացվեն խոշոր գիտնականներն ու առաջատար մասնագետները, որպեսզի մենք, Լենինի բառերով ասած, «տեխնիկայով ամրապնդված, գիտությամբ նախապատրաստված»[1] լայն պլաններ ունենանք։

Ժամանակն է, օրինակ, փոխելու այն վիճակը, որի դեպքում նոր տեխնիկայի պլանը գոյություն ունի կարծես ինքն իր համար՝ որոշակի ազդեցություն չունենալով տնտեսական ու սոցիալական զարգացման վրա։ Ընդհակառակը, այն պետք է դառնա ժողովրդատնտեսական ողջ պլանը կրող մի կոնստրուկցիա։ Պլաններում առաջատար տեղ պետք է գրավեն ռեսուրսների արդյունավետ օգտագործումն արտացոլող որակական ցուցանիշները, արտադրանքի նորացման մասշտաբները, աշխատանքի արտադրողականության աճը՝ գիտության ու տեխնիկայի նվաճումների հիման վրա։

Հարկավոր է պլանավորման մեջ ավարտել անցումը նորմատիվային մեթոդներին և՛ ծախսերը որոշելիս, և՛ արդյունավետության ու հասարակական պահանջմունքների բավարարման առաջադրանքները կազմելիս։ Նման մոտեցումն իսկ նախադրյալ է ստեղծում ձեռնարկությունների ու միավորումների տնտեսական գործունեության ակտիվացման համար, խթանում է աշխատավորական կոլեկտիվների նախաձեռնությունն ու ստեղծագործությունը։ Դրանով իսկ ավելի արագ կգտնվի տնտեսավարման վարչական ու տնտեսական մեթոդների ճիշտ հարաբերակցությունը։

Ծագում է նաև գիտության ու տեխնիկայի կոմիտեի տեղի ու դերի հարցը։ ՍՄԿԿ Կենտկոմում բազում քննադատական դիտողություններ են ստացվում այդ կոմիտեի հասցեին։ Մինիստրների խորհուրդը պետք է հստակորեն սահմանի նրա իրավասությունը։ Հավանաբար, կոմիտեի վրա պետք է դնել ժողովրդական տնտեսության ճյուղերի գիտատեխնիկական մակարդակի, համաշխարհային լավագույն նվաճումներին մեր արտադրության համապատասխանության վերահսկողությունը։ Չփոխարինելով ո՛չ պլանային մարմիններին, ո՛չ մինիստրություններին, նա պետք է գլխավոր ուշադրությունը կենտրոնացնի գիտության ու տեխնիկայի զարգացման առաջնային ուղղությունների կանխատեսման, ընտրության ու հիմնավորման վրա, հետազոտությունների և մշակումների պատրաստուքի ձևավորման վրա՝ որպես պլանային առաջադիմական լուծումների ընդունման հիմք։ Դրան պետք է ծառայի գիտատեխնիկական առաջընթացի կոմպլեքսային ծրագիրը։

Փորձը ցույց է տալիս, որ բարձր արդյունավետության հասնելու հիմնական ռեզերվներն ընկած են ճյուղերի կցատեղերում։ Հուսալ, որ պետպլանը կկարողանա մշակել միջճյուղային կապերի բոլոր շղթաները և ընտրել լավագույն տարբերակը՝ նշանակում է անձնատուր լինել պատրանքների։ Դա վեր է նաև մինիստրությունների ուժերից։ Այս ամենը օրակարգի մեջ է դնում ժողովրդատնտեսական խոշոր կոմպլեքսների կառավարման մարմիններ ստեղծելու հարցը։ Նոր պայմաններում պետք է փոխվեն մինիստրությունների դերն ու ֆունկցիաները։ Նրանք կկարողանան առավելագույն չափով ուշադրությունը կենտրոնացնել հեռանկարային պլանավորման, գիտատեխնիկական նորույթ-

[1] Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 40, էջ 131։



ների լայն մասշտաբային օգտագործման վրա՝ արտադրության ու արտադրանքի որակական մակարդակի բարձրացման համար։ Դա հնարավորություն կընձեռի ճյուղերում էականորեն կրճատելու կառավարչական ապարատը, վերացնելու դրա ավելորդ օղակները։

Շատ բան պետք է արվի կառավարման հանրապետական մարմինների կառուցվածքի կատարելագործման ասպարեզում, որտեղ մինիստրությունների ու գերատեսչությունների թիվը չափազանց մեծ է և շարունակում է աճել։ Այստեղ է՛լ ավելի, քան միութենական մակարդակով, հասունացել է կառավարման ինտեգրացման ու կենտրոնացման պրոբլեմը։

Գիտատեխնիկական առաջընթացը պատշաճ չափով չի արագանա, եթե չբարձրացվի հիմնական արտադրական օղակի՝ միավորումների ու ձեռնարկությունների դերը, չվերակողմնորոշվի դրանց գործունեությունը։ Օպերատիվ-տնտեսական ողջ աշխատանքի ծանրության կենտրոնը պետք է փոխադրել տեղերը՝ աշխատավորական կոլեկտիվները, որպես կանոն, միավորումներն ու ձեռնարկությունները ուղղակի ենթարկելով մինիստրություններին, այսինքն՝ անցնել կառավարման երկօղակ համակարգի։

Այդ տեսանկյունով էլ հարկավոր է բազմակողմանիորեն քննարկել արտադրական բոլոր միավորումների գործունեությունը, ճշտել դրանց կառուցվածքը, առանձնացնել գիտատեխնիկական հզոր պոտենցիալ ունեցող լիդերներ։ Նման միավորումները պետք է զարգացնել առաջին հերթին, նրանց ենթակայության հանձնելով այն ձեռնարկություններն ու կազմակերպությունները, որոնք ավելի նվազ արդյունավետությամբ են աշխատում։

Շատերը հիշում են, որ ժամանակին ցուցում էր տրված միավորումներ ստեղծել ձեռնարկությունների բազայի վրա՝ անկախ վերջիններիս գերատեսչական կամ տերիտորիալ պատկանելիությունից։ Բայց գործնականում արտադրական միավորումներն ստեղծվում էին նույնիսկ ոչ թե ճյուղային մինիստրությունների շրջանակներում, այլ համամիութենական արդյունաբերական միավորումների (ՀԱՄ) շրջանակներում։ Նման սահմանափակ պայմանների դեպքում, բնականաբար, չհաջողվեց ձևավորել միավորումների ռացիոնալ, արդյունավետ ցանց։ Այժմ հարկավոր է ամեն կերպ պաշտպանել միջճյուղային միավորումների կազմավորումը։ Դա հեռանկար ունեցող գործ է, որի մասին վկայում է նաև եղբայրական երկրների փորձը։

Կառավարման կազմակերպական ստրուկտուրայի կատարելագործման հարցում մեզ չեն կարող բավարարել ինչ-որ կիսամիջոցներ, մասնակի փոփոխություններ։ Առաջիկա աշխատանքը դա «ծակ ու ծուկը կարկատել» չէ, կազմակերպությունների պարզ միացում կամ մանրացում, աշխատողներին մի աթոռից մյուսը փոխադրել չէ։ Այս գործում անթույլատրելի է ամեն մի կամուֆլյաժ։ Կազմակերպական կառուցվածքի բարելավման հարցերը հարկավոր է լուծել համարձակ, հիմնավորապես, իսկ գլխավորը՝ կոմպլեքսայնորեն, բարձրագույն օղակներից մինչև ցածրագույնը, ինչպես ուղղահայաց, այնպես էլ հորիզոնական։

Ինչպես տեսնում եք, ընկերներ, կյանքն ինքն է պահանջում ժողովրդական տնտեսության կառավարման կազմակերպական կառուցվածքի կատարելագործում։ Կուսակցության Կենտրոնական կոմիտեում միավորումների ու ձեռնարկությունների ղեկավարների հետ հանդիպման ժամանակ այդ պրոբլեմը դրվեց ողջ սրությամբ։ Հանդիպման մասնակիցները խոսում էին այն մասին, որ տնտեսավարման նոր մեթոդներին անցնելն ընթանում է դժվարությամբ, դեմ է առնում խոչընդոտների։ Բանն այն է, որ որոշ մինիստրություններ շահագրգռված չեն տնտեսական գիտափորձի այն սկզբունքների արմատավորման մեջ, որոնց հիման վրա նախատեսվում է իրականացնել կառավարման վերակառուցումը։

Չէ՞ որ գիտափորձի էությունը ձեռնարկությունների ինքնուրույնությունն ընդլայնելու և պատասխանատվությունը բարձրացնելու, վերջնական բարձր արդյունքների հասնելու նպատակով նրանց համար լավագույն հնարավորություններ ստեղծելու մեջ է։ Սակայն որոշ մինիստրություններ, և այն էլ աշ-

խատանքի պետական կոմիտեի, ֆինանսների մինիստրության, իսկ երբեմն էլ պետպլանի օգնությամբ, ի վիճակի են ձեռնարկությունների ինքնուրույնությունն այնպես «բարուրել», Կենտկոմի և կառավարության որոշումներն այնպես մեկնաբանել, որ գերատեսչական բոլոր հանձնարարականներից և հրահանգներից հետո այդ սկզբունքներից գործնականում ոչինչ չի մնում (ծափահարություններ):

Եթե ծափահարում են նաև մինիստրները, ուրեմն՝ սառույցը շարժվել: Կառավարման կազմակերպական ստրուկտուրայի վերակառուցումը պատշաճ արդյունք չի տա, եթե այն օրգանապես չկապվի տնտհաշվարկի, տնտեսական լծակների և խթանների ուժեղացման հետ: Մեզ հարկավոր է այնպիսի մեխանիզմ, որը ռեալ կերպով առավելություններ ապահովի գիտատեխնիկական առաջընթացի արագացման մեջ հաջողությունների հասնող աշխատավորական կոլեկտիվներին: Մեզ հարկավոր է այնպիսի մեխանիզմ, որը հնացած և ոչ արդյունավետ արտադրանքի թողարկումը դարձնի անձեռնտու:

Հարկավոր է հատուկ առավելություններ տալ այն կոլեկտիվներին, որոնք արտադրում են լավագույն արտադրանք, համաշխարհային շուկայում հաջողությամբ մրցում են առաջատար ֆիրմաների հետ: Նման ձեռնարկություններն ու միավորումներն իրենց տնօրինության տակ պետք է ավելի շատ միջոցներ ունենան արտադրական ու սոցիալական զարգացման, աշխատանքի վարձատրման համար:

Անհրաժեշտ է էականորեն բարելավել բարձրորակ արտադրանք արտադրելու համար ձեռնարկությունների խթանման ողջ համակարգը: Այդ նպատակով պահանջվում է, նախ՝ ձեռնարկել արտադրանքի տեխնիկական մակարդակի և որակի վրա սպառողի ներգործությունն ուժեղացնող միջոցառումներ: Նրանց կողմից լավագույն արտադրանքի ընտրության հնարավորությունները կարող էին ընդլայնվել պատրաստող ձեռնարկությունների միջև մրցույթների կազմակերպման, կուտակմանը համապատասխան մեծածախ առևտրի ռեսուրսների զարգացման, ուղղակի կապերի և տնտեսական պայմանագրերի դերի բարձրացման միջոցով:

Երկրորդ, պետք է արմատապես կատարելագործել գնագոյացումը, որպեսզի այն նպաստի տնտեսական քաղաքականության հաջող իրականացմանը, ողջ նորի, առաջավորի արագ ներդրմանը, բառացիորեն ստիպի տնտեսավարներին անընդհատ կատարելագործել տեխնիկան ու տեխնոլոգիան, խստորեն պահպանել խնայողության ռեժիմը, ամեն օր զբաղվել ռեսուրսախնայողությամբ: Այստեղ բնավ էլ դեռ ամեն բան չի լուծված:

Երրորդ, մենք պետք է միավորումներն ու ձեռնարկությունները իրապես փոխադրենք տնտհաշվարկի, խիստ կրճատենք կենտրոնացած կերպով սահմանվող պլանային առաջադրանքների թիվը:

Գիտատեխնիկական առաջընթացը պահանջում է ավելի շատ ազատություն ու ճկունություն միավորման և ձեռնարկության մակարդակով որոշումներ կայացնելիս: Չէ՛ որ առաջավոր տեխնիկայի ներդրումը օրգանապես կապված է տարբերակների ընտրության, նորի նկատմամբ արագ ռեակցիայի, վերջնական արդյունքում շահագրգռվածության հետ: Իսկ հիմա միավորումներն ու ձեռնարկությունները դեռևս լրիվ չափով չեն տնօրինում իրենց ֆինանսական ռեսուրսները և չեն կարող ինքնուրույն ընտրել տնտեսության վարման և արդյունավետության բարձրացման առավել ռացիոնալ ուղիները:

ՍՄԿԿ Կենտկոմում միավորումների և ձեռնարկությունների ղեկավարների հետ հանդիպման ժամանակ որոշ մասնակիցներ ամբիոնից ցուցադրում էին պլանային ցուցանիշների ժողովածուն: Դրանք հաստափոր հատորներ են, ընկերներ: Ընդ որում պարզվեց, որ յուրաքանչյուր մինիստրություն և նույնիսկ արտադրական միավորումներ ինքնակամորեն պլանների մեջ են մտցնում պետք չեկող շատ ցուցանիշներ: Ժամանակն է այստեղ հաստատելու օրենսդրական կարգուկանոն և խստորեն սահմանելու պլանում հաստատվող ցուցանիշների ցանկը: Ձեռնարկությունների և միավորումների գործունեությունն ավելի ու ավելի մեծ չափով պետք է կարգավորվի տնտեսական նորմատիվներով:



Ուժեղացնելով միավորումների ու ձեռնարկությունների պատասխանատվությունը արտադրության տեխնիկական մակարդակի և տնտեսական արդյունավետության բարձրացման, արտադրանքի բարձր որակի համար՝ պետք է նրանց հնարավորություն տալ ինքնուրույն վաստակելու դրա համար անհրաժեշտ միջոցները և ինքնուրույն տնօրինելու դրանք, ընդլայնելով զարգացման ֆոնդի, ամորտիզացիոն հատկացումների, լրացուցիչ շահույթի, վարկի օգտագործման սահմաններն ու իրավունքները: Կարևոր է այդ միջոցների տակ առաջնահերթ կարգով հատկացնել ժամանակակից սարքավորում, շինմոնտաժային աշխատանքների լիմիտներ և պահպանել արտահանման համար արտադրանքի մատակարարումից վալյուտային հատկացումների օգտագործման սահմանված կարգը:

Այստեղ որոշ բան հաջողվել է անել արդեն խոշորամասշտաբ տնտեսական փորձի ընթացքում: Միավորումների և ձեռնարկությունների հնարավորությունները փոքր-ինչ ընդլայնվել են: Սակայն մեծ մասամբ նրանք դեռևս չեն կարող իրականացնել իրենց մտահղացումները, քանի որ պլանային և ֆինանսական մարմինները, մինիստրություններն ու ՀԱՄ-երը արտադրության զարգացման ֆոնդի օգտագործումը պայմանավորել են այնպիսի լրացուցիչ պահանջներով, որ, ըստ էության, ոչնչի են հանգեցրել ձեռնարկությունների իրավունքները, որի մասին խոսվեց վերը:

Չորրորդ, հարկավոր է սերտ կապ հաստատել կոլեկտիվների աշխատանքի արդյունքների և աշխատանքի վարձատրության համակարգի միջև: Այժմ վարձատրության մակարդակը փաստորեն կախված չէ արդյունավետությունից, նրանից՝ լավ արտադրանք է թողարկվում, թե վատ: Իսկ այստեղ պետք է ուղղակի կապ լինի: Խոսքը փաստորեն միավորումների ու ձեռնարկությունների գործունեության վրա կոլեկտիվ կապալի սկզբունքների տարածման մասին է: Կարևոր է ավելի համարձակորեն գնալ արտադրության վերջնական արդյունքներին նպատակամղված տնտհաշվարկային խոշորացված կոմպլեքսային բրիգադների լայն ստեղծմանը բոլոր ճյուղերում, և արդեն մոտակա տարիներին ձեռնարկություններում ու կազմակերպություններում դրանք վերածել տնտեսավարման հիմնական ձևի:

Հասունացել է գիտատեխնիկական առաջընթացի արագացման, նորագույն նվաճումների արագ արմատավորման գործում ձեռք բերված հաջողությունների համար աշխատավորական կոլեկտիվներին և աշխատողներին պարգևատրելու միջոցների օգտագործման հարցում կարգուկանոն հաստատելու անհրաժեշտությունը: Մեզ մոտ նյութական խրախուսման համակարգը չափազանց խճճված է, մեծածավալ և անարդյունավետ: Միաժամանակ գործում են խթանման տասնյակ տարբեր ձևեր, որը խառնաշփոթություն է ստեղծում:

Հաճախ պարգև-հավելումը դիտվում է որպես աշխատավարձի մեխանիկական հավելում, որը, առանց բացառության, վճարվում է բոլորին՝ անկախ ձեռք բերված արդյունքների մեջ կոնկրետ աշխատողի ներդրումից: Դրան շատերն արդեն վարժվել են: Այդպես հաղթանակում է հավասարարությունը, կորչում է պարգև-հավելման խթանիչ դերը: Աշխատանքի և սոցիալական հարցերի պետական կոմիտեն և ՀԱՄԿԽ-ն պետք է կարգի բերեն այս գործը և հիմնավորված առաջարկություններ անեն:

Հարկավոր է համարձակորեն վերացնել հնացածը, որպեսզի ամբողջ ուժով գործի, այսպես ասած, «տնտեսական հակածախսային մեխանիզմը», որը կխթաներ էկոնոմիկայի զարգացումը, բառացիորեն կխփեր անփույթ տնտեսավարների ձեռքերին, որոնք սիրում են պետությունից ավելի շատ ռեսուրսներ, կապիտալ ներդրումներ պոկել, բայց տալ ավելի քիչ:

Մի խոսքով, կառավարման և տնտեսավարման համակարգի կատարելագործման համար շատ լուրջ աշխատանք է սպասվում: Մենք չենք կարող հետաձգել այդ աշխատանքի իրականացման ժամկետները, որովհետև հասկանում ենք, որ առանց տնտեսական ու կազմակերպական նոր պայմանների ստեղծման՝ չի կարելի ինչպես հարկն է արագացնել գիտատեխնիկական առաջընթացը:

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ՝ ՆՈՐ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՄԱԿԱՐԴԱԿԻՆ

Ընկերնե՛ր։ Խոսելով այսօր կուսակցական աշխատանքի մասին, դիմելով առաջին հերթին միութենական հանրապետությունների կոմկուսների Կենտկոմների, երկրամասային կոմիտեների, մարզկոմների քարտուղարներին, բոլոր կոմունիստներին, կկամենայի մեկ անգամ ևս շեշտել. ժամանակը փոխվել է, այն կուսակցական գործունեությանը, նրա ոճին, մեթոդներին ու արդյունքներին, ուստի և կադրերին, առաջադրում է նոր պահանջներ։

Կուսակցական աշխատանքը գործ ունի բոլոր փոփոխությունների վճռական գործոնի՝ մարդկային գործոնի հետ։ Այստեղից և նրա գլխավոր դրույթը՝ բեկում մտցնել կադրերի մտքերի ու տրամադրությունների մեջ՝ վերևից ներքև ուշադրությունը կենտրոնացնել ամենագլխավորի՝ գիտատեխնիկական առաջընթացի վրա։

Կուսակցության ողջ փորձն ասում է. քիչ բան կարելի է փոխել էկոնոմիկայում, կառավարման, դաստիարակության մեջ, եթե չիրագործվի հոգեբանական վերակառուցումը, չմշակվեն նորովի մտածելու և աշխատելու ցանկությունն ու կարողությունը։ Թվում է, թե պարզ ճշմարտություն է, բայց դրա գիտակցումը մեր կադրերի, և ոչ միայն տնտեսավարական կադրերի, կողմից առաջ է ընթանում դեռևս դժվարությամբ, զգուշավորությամբ։ Իսկ չէ որ խոսքը երկարաժամկետ քաղաքական գծի մասին է, ընկերներ, և ոչ մի պրոբլեմ, որը մենք պարտավոր ենք լուծել այսօր, չի կարող հետաձգվել վաղվան։ Չի կարելի հապաղել, չի կարելի սպասել, քանի որ ճոճվել-օրորվելու ժամանակ չի մնացել, այն սպառվել է անցյալում։ Հարկավոր է, արագություն հավաքելով, շարժվել միայն առաջ։

Պետք է ամեն կերպ խթանել ժամանակակից մոտեցումները սոցիալ-տնտեսական, գիտատեխնիկական և գաղափարադաստիարակչական պրոբլեմների նկատմամբ, ես կասեի՝ խորացնել իրադրության գիտակցումը, ամրապնդել ինքնաքննադատության և գործարարության ոգին։ Հաջողությունը կպայմանավորեն այն տրամադրությունը, այն մթնոլորտը, որը կկարողանան ամենուր ստեղծել կուսակցական կազմակերպությունները, ամուր կուսակցական արգելապատնեշը ամեն տեսակ հետամնացության, գերատեսչական ու տեղայնական շեղումների, անտնտեսվարության ու վատնողականության հանդեպ։

Մենք բոլորս քննություն ենք տալիս՝ կյանքի քննություն։ Այժմ, երբ կուսակցությունը թևակոխել է նախահամագումարյան ժամանակաշրջան, է՛լ ավելի մեծ նշանակություն է ձեռք բերում մարդկանց հետ տարվող աշխատանքը։

Այստեղ վճռական դեր պետք է խաղան կուսակցության շրջկոմները, քաղկոմները, մարզկոմներն ու երկրկոմները։ Բայց, ցավոք, մեզ մոտ դեռևս կան կուսակցական այնպիսի կոմիտեներ, որոնք իրենք էլ շատ դանդաղ են վերակառուցվում։ Ոչ ամենուր է նախաձեռնություն և համառություն դրսևորվում թերությունները հաղթահարելու գործում, ցածր է պահանջկոտությունը, բացակայում է աշխատանքի ներդաշնակվածությունը։

Գիտատեխնիկական առաջընթացի արագացումը պահանջում է ինժեներատեխնիկական և գիտական կադրերի հարցում ստեղծված իրադրության արմատական փոփոխություն։ Հավանաբար հասունացել է բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթության լուրջ վերակառուցման անհրաժեշտությունը։ Վերջին ժամանակներս այդ հարցով ՍՄԿԿ Կենտկոմ են դիմել ակադեմիկոսներ Գ. Ս. Մուրոմցևը, Ա. Մ. Պրոխորովը, Ա. Յու. Իշլինսկին, Վ. Մ. Տուչկևիչը և ուրիշ ընկերներ։ Նրանք հիմնավոր տագնապ են արտահայտում գիտական հերթափոխի նախապատրաստման վիճակի, ինժեներների հեղինակության անկման, տեխնիկական և գիտական գործունեության ոլորտ տաղանդավոր երիտասարդության ներհոսի կրճատման համար։ Այդ ամենը մեծ չափով կապված է մասնագետ կադրերի պատրաստման և օգտագործման մեջ եղած լուրջ թերությունների, աշխատանքի վարձատրության մեջ շեղումների հետ։



Պետք է միջոցառումներ մտածել գիտական ու ինժեներական աշխատանքի հասարակական գնահատության բարձրացման, դրանում ստեղծագործական սկզբունքների ուժեղացման ուղղությամբ, բարձրացնել տեխնիկական զինումը, ներդնել տեխնոլոգիական և նախագծային-կոնստրուկտորական աշխատանքների ավտոմատացումը։ Պետք է բարձրացնել գիտական, ինժեներատեխնիկական աշխատողների շահագրգռվածությունը աշխատանքի արդյունքների համար, խթանել քիչ մարդկանցով աշխատանքների որակյալ կատարումը և այդ հիման վրա բարձրացնել նրանց վարձատրության մակարդակը։ Ինչպես գիտեք, այդ ուղղությամբ առաջին քայլերն արդեն արված են։

Հաշվի առնելով ժամանակակից արտադրության պայմանների արագ նորացումը՝ հատուկ հրատապություն է ձեռք բերում տնտեսավարական և գիտատեխնիկական կադրերի սիստեմատիկ վերապատրաստման աշխատանքը։ Անհրաժեշտ է նաև բարելավել բանվորների նախապատրաստումն ու վերապատրաստումը այն նոր մասնագիտությունների գծով, որոնք ծնվում են գիտատեխնիկական առաջադիմության իրագործման ընթացքում։ Առանց հետաձգելու պետք է միջոցառումներ նախապատրաստել այդ պրոբլեմների լուծման նպատակով։ Դրանք պետք է զուգակցվեն որակյալ աշխատանքի կիրառման ոլորտի զգալի ընդլայնմամբ և ոչ որակյալ, ծանր ու հակաառողջապահական աշխատանքի գոտիների կրճատմամբ։

Կարևոր են գիտատեխնիկական առաջադիմության ամբողջ ընթացքի վրա կուսակցական ներգործության ուժեղացումը, դրա վճռական տեղամասերում կուսակցական խավի ամրապնդումը, գիտահետազոտական, նախագծային, կոնստրուկտորական կազմակերպությունների, տեխնոլոգիական ծառայությունների, գիտատեխնիկական ընկերությունների կոլեկտիվներում տարվող աշխատանքին ավելի մեծ ուշադրություն հատկացնելը։

Փորձը ցույց է տալիս, որ գիտատեխնիկական առաջընթացի կուսակցական ղեկավարման հաջող ձև են գիտատեխնիկական առաջընթացի աջակցման՝ միութենական հանրապետությունների կոմկուսների Կենտկոմներին, կուսակցության երկրամասային կոմիտեներին, մարզկոմներին, քաղկոմներին առընթեր խորհուրդները։

Կուզենայի ասել մինիստրությունների կուսակցական կազմակերպությունների մասին։ Ըստ երևույթին, այն բազմաթիվ թերությունների ու վրիպումների պատճառները, որոնց մասին մենք խոսում ենք, թաքնված են նաև այն բանում, որ մինիստրությունների կուսակցական կոմիտեներն ինչ-որ տեղ կորցրել են կարևորագույն սոցիալ-տնտեսական հարցերի ընկալման ու լուծման քաղաքական սրությունը, մի կողմ են քաշվել այն վերահսկողությունից, որի իրավունքով նրանց օժտել է ՍՄԿԿ կանոնադրությունը։ Դժվար է հավատալ, որ այն մինիստրությունների կուսակցական կազմակերպությունները, որտեղ գործերը լավ չեն, չեն տեսնում թերություններն ու գործի բարելավման ռեզերվները։

Լինելով կուսակցության լիազոր ներկայացուցիչներ՝ մինիստրությունների կուսակցական կոմիտեները պարտավոր են խիստ բարձրացնել իրենց ակտիվությունը, պատասխանատվությունն ու կարգուկանոնը կոլեկտիվներում, կոնկրետ կերպով, կուսակցական դիրքերից ձեռնամուխ լինել այս կամ այն ճյուղի զարգացման արմատական հարցերին։ Անկեղծ ասած, չեմ հիշում մի դեպք, որ արևէ մինիստրության որևէ կուսակցական կազմակերպություն սկզբունքորեն ՍՄԿԿ Կենտկոմի առջև հարց դներ ճյուղում գործերի վիճակի մասին։

Ժողովրդական տնտեսության վճռական շրջադարձը դեպի գիտատեխնիկական առաջընթացի արագացումը անհնար է առանց արտադրության ու կառավարման բոլոր օղակներում կազմակերպման և կարգուկանոնի ամրապնդման նույնքան վճռական միջոցառումների։ Պահանջկոտություն և նորից պահանջկոտություն— ահա այն գլխավորը, որ մեզ թելադրում է ստեղծված իրադրությունը։ Իրենց ծանրակշիռ խոսքը պետք է ասեն նաև ժողովրդական վերահսկողության մարմիններում աշխատող կոմունիստները։ Իրադրությունը

պարտավորեցնում է, որպեսզի ժողովրդական վերահսկողության սոցիալիստական սիստեմն աշխատի ավելի ակտիվ, ձեռնամուխ լինի սոցիալ-տնտեսական խոշոր պրոբլեմներին, թույլ չտա բարեհոգություն անելու այն ղեկավարներին, որոնք դադարել են հոգալ պետական գործերի համար։

Գործունեության ընդարձակ, կոնկրետ և պատասխանատու ասպարեզ է բացվում նաև գաղափարախոսական, պրոպագանդիստական աշխատանքի առջև։ Մեր բոլոր խնդիրների համար, ինչպես սովորեցնում էր Լենինը, անհրաժեշտ է ստեղծել «համոզման բավական լայն և հաստատուն բազա»[1], շահագրգռել դրանցում միլիոնավոր ու միլիոնավոր աշխատավորների։ Գիտահետազոտական առաջադիմությունը կենսականորեն կարևոր գործ է, այն համապատասխանում է բոլորի շահերին, հնարավորություն տալիս յուրաքանչյուրին՝ լայնորեն դրսևորելու իր ընդունակություններն ու տաղանդը։ Մենք ակնկալում ենք մեր բանվոր դասակարգի, գյուղացիության, մտավորականության, ինժեներների ու գիտնականների ստեղծագործական բարձր ակտիվությունն ու վարպետությունը։ Հատկապես շատ բան ենք սպասում երիտասարդությունից, նրա եռանդից ու պրպտուն մտքից, ողջ նորի ու առաջավորի նկատմամբ հետաքրքրությունից։

Գաղափարաքաղաքական դաստիարակությունն իր բոլոր ձևերով պետք է առավելագույնս կապակցվի կյանքի, մեր հայրենիքի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման խնդիրների հետ։ Դրանում է այն փոփոխությունների էությունը, որոնք անհրաժեշտ է մտցնել այսօր գաղափարախոսական աշխատանքում։ Բայց այդ ուղղությամբ հարկավոր է ծավալվել ավելի եռանդուն, առանց ժամանակ կորցնելու։

Ընկերնե՛ր։ Մեր առջև վիթխարածավալ գործեր կան՝ նորարարական, մասշտաբային, դժվարին գործեր։ Գլուխ կհանե՞նք, արդյոք, դրանցից։ Կենտրոնական կոմիտեն համոզված է, որ կհանենք։ Պարտավոր ենք հանել։ Բայց դա յուրաքանչյուրից կպահանջի մտքի մեծ աշխատանք, լարված գործունեություն, հսկայական մտազգաստություն, գիտակցականություն և կազմակերպվածություն։ Կուսակցության ավանդույթներից, սովետական ժողովրդի էությունից դուրս են խնդիրների բարդությունից վախենալը, դժվարությունների առջև ընկրկելը, լիցքաթափումն ու ինքնահանգստացումը հատկապես երկրի կյանքի բեկումնային, պատասխանատու պահերին։

Երբ սովետների հանրապետությունն անասելի դժվարին իրադրությունում սոցիալիզմի առաջին քայլերն էր անում, Լենինը համոզված գրում էր. «Դուրս կպրծնենք, որովհետև չենք գունազարդում մեր դրությունը։ Գիտենք բոլոր դժվարությունները։ Տեսնում ենք բոլոր հիվանդությունները։ Բուժում ենք դրանք սիստեմատիկորեն, համառ կերպով, խուճապի չմատնվելով»[2]։

Եվ այսօր բանվորների, գյուղացիների, մտավորականության ստեղծագործ ուժի, ժողովրդի բարձր բարոյական ոգու ու կամքի նկատմամբ խոր հավատը սնում է կուսակցության լավատեսությունը։ Բայց լավատեսությունը ոչ ոքի չի ազատում աշխատանքից։ Հարկ կլինի հիմնավորապես աշխատել։

ՍՄԿԿ քաղաքականությանն ակտիվորեն պաշտպանում է ողջ հասարակությունը։ Սովետական մարդիկ մեծ հույսեր են կապում այն գաղափարների, ձեռնարկումների ու պլանների հետ, որոնցով կուսակցությունը գնում է դեպի իր XXVII համագումարը։ Կոմունիստների կուսակցության պարտքն է՝ արդարացնել դրանք, ցույց տալ, որ մենք գործին լրջորեն ենք ձեռնամուխ լինում։ Մեր ուժերն ու հաստատակամությունը կբավականացնեն, որպեսզի, հենվելով ժողովրդի կենդանի ստեղծագործության վրա, ամրապնդելով գիտության ու աշխատանքի դաշինքը, հասնենք այն բանին, որ խոսքը գործից չտարբերվի։ Իսկ դա գլխավորն է քաղաքականության մեջ, կյանքում։ (Երկարատև, բուռն ծափահարություններ)։

[1] Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 42, էջ 269։
[2] Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 44, էջ 98։

# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՊԼԱՆՆԵՐԻՆ՝ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ԱՋԱԿՑՈՒԹՅՈՒՆ

## Ընկեր Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ ելույթը Դնեպրոպետրովսկում 1985 թվականի հունիսի 26-ին

Նախատեսելով այցելել Ուկրաինա, ասաց Մ. Ս. Գորբաչովը, ես նկատի ունեի անպայման լինել Դնեպրոպետրովսկում՝ սոցիալիստական ինդուստրիայի խոշորագույն կենտրոնում, որտեղ մինչև հիմա առիթ չէի ունեցել լինելու։ Այսօր ես ուրախ եմ ձեր կոլեկտիվի՝ բանվոր դասակարգի փառապանծ ջոկատներից մեկի կյանքին ծանոթանալու, մեր կուսակցության Կենտրոնական կոմիտեի և սովետական կառավարության անունից ձեզ ի սրտե ողջունելու հնարավորության համար։

Կուսակցական աշխատողի համար սովետական մարդկանց հետ հանդիպումները հսկայական նշանակություն ունեն։ Բանվորների, գյուղացիների, մտավորականության, երիտասարդության հետ մշտական կենդանի կապը կուսակցական աշխատանքի գլխավոր իմաստն է։ Այս բանը մեզ սովորեցրել է Վ. Ի. Լենինը, նշելով, որ կուսակցական աշխատողը պետք է միշտ լինի մասսաների խորքերում։ Այս մասին է խոսում մեր կուսակցության գործունեության հսկայական փորձը։

Կուսակցական աշխատանքում հենց նման մոտեցումն է տնտեսական, քաղաքական, դաստիարակչական խնդիրների հաջող լուծման գրավականը, դա է լայն հնարավորություններ բացում համատեղ պայքարի ու աշխատանքի համար մարդկանց կազմակերպելու, կյանքից, աշխատավորության անգնահատելի փորձից մեր կուսակցական ցուցումները մշտապես բխեցնելու համար։

Ասվածը ճիշտ է կուսակցական բոլոր աշխատողների համար, որտեղ էլ որ նրանք աշխատելիս լինեն. սկզբնական կուսակցական կազմակերպություններում, շրջանային և քաղաքային, մարզային և հանրապետական մասշտաբի կուսակցական կոմիտեներում, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեում։

Եվ եթե նման մոտեցումը անհրաժեշտ էր առաջ, ապա այն կրկնակի և եռակի արդարացված է այսօր, երբ մենք թևակոխել ենք մեր երկրի սոցիալ-տնտեսական զարգացման պատասխանատու փուլ, երբ մեր առջև դրված են նոր, ոչ դյուրին, բայց և վսեմ խնդիրներ։

Իրականում դրանով էլ թելադրված է ներկա ուղևորությունը Ուկրաինա, և մասնավորապես Դնեպրոպետրովսկ, ձեր ձեռնարկություն այցելելը։ Սա է հիմնական իմաստը մեր զրույցի, որի կազմակերպման խնդրանքով ես դիմեցի ձեր հանրապետության ղեկավարներին։

Բայց նախ կցանկանայի հաղորդել ձեր աշխատավորական կոլեկտիվի աշխատանքին ու կյանքին ծանոթանալուց ստացած իմ տպավորությունները։ Կասեմ անկեղծ, ես մեծ տպավորություն ստացա ձեռնարկության աշխատավորների հետ ունեցածս զրույցներից, այն ամենից, ինչ տեսա, հետաքրքրական շատ բան իմացա անցյալի, ձեր այսօրվա գործերի և ապագայի պլանների մասին։

Գործարանի գրեթե մեկդարյա պատմությունը հարուստ է հեղափոխական և աշխատանքային ավանդույթներով։ Մետալուրգ բանվորներն էին ցարիզմի

դեմ 1905 թվականի զինված ապստամբության նախաձեռնողները։ Հեղափոխական պայքարի ընթացքում նրանք ստեղծեցին իրենց հանրապետությունը, կազմեցին բանվորների դեպուտատների Եկատերինոսլավի նահանգի իրենց առաջին սովետը։ Նրանց խիզախությունն ու հեղափոխական պոռթկումը բարձր է գնահատել Վ. Ի. Լենինը։

Սովետական իշխանության առաջին իսկ տարիներից գործարանը դարձավ սոցիալիզմի կառույցների համար մետաղի խոշոր մատակարար, այստեղ կոփվում էին կադրեր երկրի շատ շրջանների մետալուրգիական ձեռնարկությունների համար։

Գործարանի բանվորները ոգու մեծ ուժ ու հերոսություն դրսևորեցին Հայրենական մեծ պատերազմում և հետպատերազմյան շինարարության տարիներին։

Գործարանը, նրա կոլեկտիվը ապրում են լիարյուն կյանքով։ Դրվատական խոսքերի է արժանի արտադրության տեխնիկական նորացման նպատակով 70-ական թվականներին ձեր կատարած աշխատանքը։ Այն հնարավորություն տվեց 40 տոկոսով նվազեցնելու զբաղվածների թիվը և ընդ որում կրկնապատկելու արտադրանքի թողարկումը։

Արտադրական գործերը հմտորեն զուգորդվում են մարդու նկատմամբ հոգատարության, բնակարանների, մանկական, նախադպրոցական հիմնարկությունների և առողջապահության օբյեկտների, հանգստի բազաների, մարզական կառուցվածքների շինարարության հարցերի հանդեպ ցուցաբերվող մշտական ուշադրության, սոցիալական ծառայությունների զարգացման հետ։ Թեև, պետք է ասեմ, բնակարաններ դուք կարող եք և պարտավոր եք ավելի շատ կառուցել, այդ թվում նաև՝ սեփական ուժերով։ Գործարանում ստեղծված է օժանդակ տնտեսություն, որը լավ նեցուկ է ձեռնարկության աշխատողների հասարակական սնունդը բարելավելու գործում։

Ձեր կոլեկտիվի համար կարևոր նվաճում է աշխատողների հանրակրթական ու մասնագիտական պատրաստության բարձր մակարդակը։ Հիանալի է, որ այժմ տասը բանվորներից ինը ունի բարձրագույն, միջնակարգ մասնագիտական կամ միջնակարգ կրթություն։ Մոտ երկու հազարը՝ արտադրության ռացիոնալիզատորներ են։

Այս ամենը, անկասկած, ձեռնարկության կոլեկտիվի, նրա կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների ծառայությունն է։ Զգացվում է, որ ձեր շարքերում աշխատող երկուսուկես հազար կոմունիստները բոլոր լավ գործերի ու նախաձեռնությունների իսկական, ճշմարիտ կազմակերպիչներ են։

Լավ եմ հասկանում, որ գործարանի, նրա գործերի մասին ասվածը ձեզ համար, բնականաբար, նորություն չէ։ Այս ամենը դուք լավ գիտեք։ Բայց ես այդ մասին ցանկացա խոսել այն պատճառով, որ ձեր կոլեկտիվի գործունեության մեջ, նրա նվաճումներում, ինչպես մի կաթիլ ջրում, արտացոլվում է մեր հազարավոր այլ ձեռնարկությունների, ասենք նաև ամբողջ երկրի, կյանքը։ Եվ ո՛չ միայն նվաճումները, այլև ժամանակի կողմից թելադրվող նոր խնդիրների լուծման, էկոնոմիկայի, ողջ սովետական հասարակության պահանջմունքների հետ կապված պրոբլեմները։

Եվ այս իմաստով մեր հանդիպումը կարևոր է նրանով, որ տեղի է ունենում հայրենիքի պատմության մի պատասխանատու ժամանակաշրջանում։ Այժմ մենք բոլորս զբաղված ենք այն բանով, թե պրակտիկայում ինչպես իրականացնենք Կենտկոմի ապրիլյան պլենումի մշակած՝ երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու ծրագիրը։

Դրա էությունը պարզ է. մենք ուզում ենք այսուհետ ևս ընթանալ սովետական մարդկանց կյանքի ու աշխատանքի պայմանները բարելավելու, սոցիալիստական ապրելակերպը համակողմանի կատարելագործելու ուղիով, երկրի պաշտպանությունը պահել պատշաճ մակարդակի վրա, միջազգային ասպարեզում ամրապնդել սոցիալիզմի դիրքերը։

Իսկ դրա համար անհրաժեշտ է արագացնել մեր էկոնոմիկայի զարգացման տեմպերը, այն ավելի արդյունավետ դարձնել, իսկ մեր աշխատանքը՝



ավելի բարձրարտադրողական։ Ինչպե՞ս անել դա։ Մենք՝ Կենտկոմում և կառավարությունում գտնում ենք. հիմնական ուղին գիտատեխնիկական առաջընթացի արագացումն է։

Վերջերս Կենտրոնական կոմիտեում խորհրդակցություն տեղի ունեցավ այդ հարցի առթիվ։ Կարծում եմ, դուք ծանոթ եք խորհրդակցության արդյունքներին ու հիմնական գաղափարներին, և հավանաբար հարկ չկա այստեղ կրկնելու դրանք։ Կասեմ միայն մի բան. դա համակուսակցական լայն խոսակցություն էր, անկեղծ, խստապահանջ, անաչառ խոսակցություն մեր զարգացման արմատական պրոբլեմների մասին, որոնց լուծմամբ պայմանավորված են երկրի բախտը, ամբողջ հասարակության և յուրաքանչյուր սովետական ընտանիքի բարեկեցությունը։

Խորհրդակցությանը մենք պատրաստվում էինք ամենայն ջանադրությամբ։ Ուսումնասիրված էին բանվորների, կոլտնտեսականների, գիտնականների, կուսակցական և տնտեսական ղեկավարների կարծիքներն ու առաջարկությունները։ Շատ բան տվեցին Մոսկվայի ու Լենինգրադի աշխատավորական կոլեկտիվների և կուսակցական-տնտեսական ակտիվի, միավորումների և ձեռնարկությունների դիրեկտորների, ՍՄԿԿ Կենտկոմ հրավիրված մասնագետների հետ անցկացված հանդիպումներն ու զրույցները։ Այս ամենն օգնեց մշակելու երկրի էկոնոմիկայի վիճակի խոր, բազմակողմանիորեն հիմնավորված գնահատականը, ասես լույս սփռելու մեր նեղ տեղերի ու պրոբլեմների վրա։

Խորհրդակցությունն առաջադրեց սովետական էկոնոմիկայի հասունացած պրոբլեմների լուծման ծավալուն ծրագիր։ Խոսքն ըստ էության աճի այլ որակի մասին է, մեր զարգացման սկզբունքների իրագործման նկատմամբ նոր մոտեցումների մասին։ Խնդիրներն առաջադրված են արմատապես, մասշտաբայնորեն։ Ամենքի նկատմամբ շատ լուրջ պահանջներ են առաջադրված։

Կարող է հարց ծագել. իսկ արդյոք մենք խստորեն չե՞նք վարվում։ Ոչ, և այդ մասին մենք բազմիցս ասել ենք ՍՄԿԿ Կենտկոմում։ Այլ մոտեցում՝ ինչ-որ ավելի հանգիստ մոտեցում հարմար չէ մեզ։ Ժամանակը թելադրում է գործել հենց այդպես։

Եվ էլի ինչ է հարկավոր նկատի ունենալ. մենք պետք է միանգամից, միաժամանակ շատ ուղղություններով ընթանանք, այլապես գործը տեղից չենք շարժի, մեր շարժման արագությունը չենք ապահովի։

Սա ոչ միայն խորհրդակցության մասնակիցների, այլև բոլոր նրանց ընդհանուր կարծիքն է, ում հետ հարկ եղավ քննարկել հասունացած պրոբլեմները։ Ուստի խորհրդակցությունը սահմանեց այն պրոբլեմների կոմպլեքսը, որ մենք պետք է անպայման լուծենք և լուծենք արդեն մոտ ժամանակներս։

Այդ աշխատանքն արդեն սկսվել է։ Նախատեսված են կապիտալ ներդրումների կառուցվածքը կատարելագործելու միջոցառումներ այն հաշվով, որ «կանաչ ճանապարհ» տրվի ժողովրդական տնտեսության սրատեգիապես կարևոր ճյուղերի զարգացմանը, որոնք որոշում են գիտատեխնիկական առաջադիմությունը, և առաջին հերթին մեքենաշինության, էլեկտրոնիկայի, էլեկտրատեխնիկայի, կենսատեխնոլոգիայի և այլ ճյուղերի զարգացմանը։ Հատուկ ուշադրություն է նվիրվում արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների, ռեսուրսախնայողական տեխնոլոգիաների ներդրմանը։ Խնդիր է դրված և պրակտիկ ջանքեր են գործադրվում այն բանի համար, որ ամենակարճ ժամանակամիջոցում իրականացվի գործող ձեռնարկությունների տեխնիկական վերակառուցումը։

Պետք է բարելավել կառավարման ու պլանավորման ողջ համակարգը, բարձրացնել ՍՍՀՄ պետպլանի պատասխանատվությունը ժողովրդական տնտեսության վերջնական արդյունքների համար, ստեղծել համասեռ ճյուղերի խմբերի կառավարման մարմիններ։ Այդ աշխատանքն սկսվելու է ագրոարդյունաբերական համալիրի ու մեքենաշինության ճյուղերից։ Միաժամանակ փոխվելու են մինիստրությունների դերն ու պատասխանատվությունը, որոնք պետք է դառնան գիտատեխնիկական առաջադիմության շտաբներ, ուշադրու-

*թյունը կենտրոնացնեն համապատասխան բարձրորակ արտադրանքի հարցում երկրի և բնակչության կարիքների բավարարման ապահովման վրա։ Այս առնչությամբ ենթադրվում է աշխատանք տանել կառավարման ապարատը կրճատելու և պարզեցնելու, ավելորդ օղակները լուծարքի ենթարկելու ուղղությամբ։*

*Նախատեսվում է զգալիորեն ընդլայնել միավորումների ու ձեռնարկությունների ինքնուրույնությունն ու պատասխանատվությունը, կատարելագործել մեծածախ գների համակարգը, ուղղակի կապերը, բարելավել աշխատավորական կոլեկտիվների նյութական խթանումը։ Նկատի է առնվում ստեղծել այնպիսի պայմաններ, որ կոլեկտիվներին ձեռնտու լինի արտադրել և արմատավորել նոր տեխնիկա, թողարկել բարձրորակ արտադրանք, հասնել աշխատանքի առավել բարձր արտադրողականության։*

*Որակապես նոր տեխնիկական հիմքի վրա արտադրության փոխադրումը նոր պահանջներ է ներկայացնում կադրերի գիտելիքներին, որակավորմանը։ Այդ կապակցությամբ հասունացել է բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության լուրջ վերակառուցման անհրաժեշտությունը։ Պետք է կարգավորել ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բոլոր մարդկանց՝ թե՛ բանվորների, թե՛ ինժեներների և թե կառավարման մասնագետների որակավորման բարձրացման ու վերապատրաստման համակարգը։*

*Այս ամենի մասին հանգամանորեն խոսվեց խորհրդակցությունում։ Եվ այդ աշխատանքին մենք արդեն ձեռնամուխ ենք եղել։ Այդ աշխատանքն ակտիվորեն տարվում է Կենտրոնական կոմիտեում, կառավարությունում, պլանային ու տնտեսական մարմիններում։*

*էկոնոմիկայի վիճակին կուսակցության տված շիտակ և սկզբունքային գնահատականը, գործողությունների պարզորոշ ծրագիրը, կադրերի նկատմամբ պահանջկոտությունը լիակատար ըմբռնում են գտնում երկրում։ Բանվորներից, կոլտնտեսականներից, ինժեներատեխնիկական աշխատողներից, գիտնականներից ՍՄԿԿ Կենտկոմում և մյուս կենտրոնական մարմիններում ստացվող արձագանքները վկայում են, որ նրանք ջերմորեն պաշտպանում են գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու կուսակցության կուրսը, ձգտում են ամեն ինչ անել դրա կենսագործման համար։*

*Սովետական մարդիկ դրա հետ մեծ հույսեր են կապում։ Մեծանում է աշխատավորների շահագրգռությունը հասարակական գործերով, բարձրանում է մարդկանց տրամադրությունը։ Ամրապնդվում է վստահությունը այն բանի նկատմամբ, որ ազնիվ ու աշխատասեր մարդիկ, իսկ այդպիսիք մեր երկրում գերակշիռ մեծամասնությունն են, ավելի հետաքրքիր կաշխատեն և ավելի լավ կապրեն։*

*Խորհրդակցության արդյունքները մեծ ուշադրությամբ ընդունվեցին սոցիալիստական երկրներում, կոմունիստական ու բանվորական կուսակցություններում։ Հատկապես նշվում է, որ մեր երկիրը էկոնոմիկայի հասունացած պրոբլեմները լուծում է սոցիալիստական կարգերի հիմնական առավելությունների և ամենից առաջ պլանային էկոնոմիկայի հսկայական հնարավորությունների հետագա զարգացման ու ավելի լրիվ օգտագործման միջոցով, սոցիալիստական ապրելակերպի, սովետական դեմոկրատիայի հետագա կատարելագործմամբ հասարակության բոլոր խավերի շահագրգռության մեծացման միջոցով։*

*Սովետական ժողովրդի հավանությանն արժանացող մեր խաղաղ պլանները լուրջ հարված են հասցնում այն հակասովետական հերյուրանքներին, թե սովետական էկոնոմիկան դեմոկրատական, դինամիկ չէ, թե իբր այն անկարող է լուծել ժամանակակից գիտատեխնիկական առաջադիմության խոշորամասշտաբ պրոբլեմները։*

*Արձագանքները, բնականաբար, տարբեր են, բայց դրանք բոլորը մի բան են վկայում, անկեղծորեն ու կոնստրուկտիվ կերպով խոսելով մեր նոր խնդիրների մասին, մենք խոշոր քայլ արեցինք ճշտորոշ ուղղությամբ, նախատեսեցինք այնպիսի միջոցառումներ, որոնք երկիրը նպատակամղում են պատմական մասշտաբի տեղաշարժերի իրականացմանը։*



*Բայց ճիշտ քաղաքականություն մշակելը, ճիշտ կուրս վերցնելը, լավ որոշումներ ընդունելը քիչ է։ Գլխավորն է կազմակերպել դրանց կատարումը, սկսել գործել։ Շեշտում եմ՝ հենց գործել։ Չի կարելի թույլ տալ, որ նախատեսվող քայլերի ճշտության մասին ճոռոմ խոսքերի մեջ խեղդվեն ռեալ պրակտիկ գործերը։ Անթույլատրելի կլիներ դանդաղել՝ վերևից սպասելով ինչ-որ նոր ցուցումների ու կարգադրությունների։ Հարկավոր է գործել այսօր, այժմ և համատեղ, որպեսզի տնտեսության բոլոր օղակների ջանքերը միախառնվեն մի միասնական հոսանքի մեջ։ Մեզնից յուրաքանչյուրը պետք է տրամադրվի գործել նոր ձևով, իրեն հավաքի, աշխատի մեծագույն պատասխանատվությամբ ու եռանդով։ Տեղ չունեն ու չպետք է ունենան պահպանողականությունը և անտարբերությունը, անկազմակերպվածությունը և շռայլողականությունը, բյուրոկրատիզմը և քաշքշուկը։*

*Օրերս քաղբյուրոն քննարկեց խորհրդակցության արդյունքները, միահամուռ հավանություն տվեց դրանց և ընդունեց համապատասխան որոշում։ Դրանով իսկ խորհրդակցության գաղափարներին, հետևություններին, գործնական միջոցառումներին կուսակցական փաստաթղթի ուժ տրվեց, և մենք ասես թևակոխեցինք մեր աշխատանքի հաջորդ, ոչ պակաս կարևոր փուլը՝ մշակված ստրատեգիայի իրականացման պրակտիկ գործունեության փուլը։*

*Վերին էշելոններում, ինչպես ես արդեն ասացի, այդ աշխատանքն սկսվել է, և ՍՄԿԿ Կենտկոմը խիստ վերահսկողության տակ կպահի դրա ընթացքը։*

*Դրա հետ մեկտեղ, գործի հաջողությունը, մեր բոլոր ձեռնարկումների արդյունքները կախված են բանվորներից, գյուղացիներից, մտավորականությունից։ Վերջին հաշվով, ամեն ինչ որոշվում է արտադրամասերում և կառույցներում, գլանահաստոցների մոտ և ավտոմատացված գծերում, դաշտերում և ֆերմաներում, գիտական լաբորատորիաներում և կոնստրուկտորական բյուրոներում։ Մենք մեր զարգացումը չենք կարողանա արագացնել՝ չհիմնվելով ժողովրդի կենդանի ստեղծագործության վրա, կյանքի բոլոր ոլորտներում բարեշրջում կատարելու նկատմամբ միլիոնավոր ու միլիոնավոր մարդկանց շահագրգիռ վերաբերմունքի վրա։ «Սոցիալիզմը,— սովորեցնում էր Վլադիմիր Իլյիչ Լենինը,— չի ստեղծվում վերևից տրված ցուցումներով։ Նրա ոգուն խորթ է կազյոննի-բյուրոկրատական ավտոմատիզմը, կենդանի, ստեղծարար սոցիալիզմը հենց ժողովրդական մասսաների ստեղծագործությունն է»։*

*Կարևոր է, որ աշխատավոր մասսաները ձեռնամուխ լինեն առաջադրված խնդիրների լուծմանը, դրանք համարեն իրենց սեփական գործը։ Կուսակցությունը առաջին հերթին դիմում է բանվոր դասակարգին։ Կոմունիստներին դա է սովորեցրել Լենինը, որ բանվոր դասակարգի մեջ տեսնում էր սոցիալիզմի ամուր հենարանը, այն ուժը, որը կարող է հանձն առնել համարձակ նախաձեռնություն, օրինակ ցույց տալ թե ինչպես պիտի մոտենալ համաժողովրդական, համապետական պրոբլեմներին և ինչպես պիտի լուծել դրանք։*

*Բանվոր դասակարգի վիթխարի քաղաքական փորձը, նրա գաղափարախոսությունը, բարձր գիտակցականությունը, կամքը, կարգապահությունը, թերությունների նկատմամբ պրոլետարական անհաշտվողականությունը, սոցիալական արդարության զգացումը կազմակերպում ու համախմբում են մեր ողջ հասարակությանը, հնարավորություն են տալիս վստահությամբ ու լավատեսությամբ առաջ ընթանալ։ Կուսակցությունը բարձր է գնահատում բանվոր դասակարգի ավանգարդային դերը, թանկ է գնահատում նրա վստահությունն ու աջակցությունը։ Կուսակցությունն այսուհետ ևս ամեն ինչ կանի բանվոր դասակարգի հետ իր կապերն ամրապնդելու համար։*

*Կենտրոնական կոմիտեն վստահ է, որ բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը և ժողովրդական մտավորականությունը եռանդուն կերպով կկենսագործեն երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու կուրսը։ Արդեն այժմ անհրաժեշտ է գործի մեջ ներգրավել արդյունավետության ու որակի բարձրացման բոլոր ռեզերվներն ու հնարավորությունները։ Սա շեշտում եմ այն պատճառով, որ այսօր ճյուղերում և հանրապետություն-*

ներում, միավորումներում և ձեռնարկություններում կոնտրոլ թվերի հիման վրա ծավալվում է տասնիրկուերորդ հնգամյակի պլանի մշակման աշխատանքը։

Պլանի վրա կատարվող աշխատանքին պետք է իրոք գործնական, համաժողովրդական բնույթ տալ։ Հարկավոր է ամեն ինչ անել, որ հիմնական ուղղությունների առաջադրանքները նյութական ամուր հիմքի վրա դրվեն, որ մշակվեն դրանց կատարման ռեալ և արդյունավետ միջոցառումներ, բայց հենց ռեալ և արդյունավետ։ Դա այժմ տնտեսական, սոցիալական և քաղաքական կարևորագույն խնդիր է։

Մենք շատ բան ենք ակնկալում Ուկրաինական ՍՍՀ-ի բանվորներից, կոլտնտեսականներից, մտավորականներից, նրա կուսակցական կազմակերպություններից։ Հանրապետության աշխատավորներն իրավամբ հպարտանում են իրենց ինդուստրիայով, գյուղատնտեսությամբ, գիտությամբ և մշակույթով։ Հանրապետությունը ծանրակշիռ ավանդ է ներդնում երկրի տնտեսական և պաշտպանական հզորության մեջ։ Նա տալիս է ազգային եկամտի համարյա մեկ հինգերորդ մասը, ածխի հանույթի ավելի քան քառորդ մասը, պողպատի ու գլանվածքի ավելի քան մեկ երրորդ մասը, գյուղատնտեսական արտադրանքի մի զգալի մասը։ Յուրաքանչյուր հաջողություն նշանակում է համաժողովրդական հարստության էական հավելում, բայց փոխարենը աշխատանքում ամեն մի անկանոնություն առանձնապես զգալի է։

Ուկրաինայի էկոնոմիկան շարունակում է առաջ ընթանալ, բայց գործի բարելավման ռեզերվներն էլ մեզ մոտ շատ են։ Հանրապետության տասներկուերորդ հնգամյակի նախագծումներում բավական բարձր բնագծեր են նախատեսվում։ Էականորեն մեծանում է արդյունաբերական արտադրանքի ծավալը, առանձնապես մեքենաշինության և մետաղամշակման, քիմիական և նավթաքիմիական արդյունաբերության բնագավառում։ Մեծ ուշադրություն է նվիրված էներգետիկայի զարգացմանը։ Նախատեսվում է ագրոարդյունաբերական համալիրի ճյուղերի վերելք։

Ինչպես գիտեք, ՍՄԿԿ Կենտկոմում հրավիրված խորհրդակցությունում լուրջ քննադատության ենթարկվեց ՍՍՀՄ սև մետալուրգիայի մինիստրության աշխատանքը։ Դա քննադատություն է նաև հանրապետական մինիստրության հասցեին։ Չէ՞ որ մետաղեղենի արտադրության ու մատակարարումների գծով պարտքի մեծ մասը բաժին է ընկնում ձեր հանրապետության ձեռնարկություններին։

Սև մետալուրգիան վերջին հնգամյակներում չի կատարում պլանները։ Այսօր այդ ճյուղն ավելի ու ավելի հաճախ է խախտում ժողովրդական տնտեսության աշխատանքի ռիթմը։ Դա անցանկալի էր մինչև օրս, առավել ևս անթույլատրելի է այժմ, երբ հայրենական մեքենաշինության առջև հսկայական խնդիրներ են դրված։

Ստեղծված վիճակի պատճառը ճյուղի հիմնական ֆոնդերի դանդաղ նորացումն է։ Եվ միաժամանակ հսկայական միջոցներ են հատկացվում դրանց նորոգմանը։ Տագնապ է հարուցում հապաղումը նոր առաջավոր սարքավորումների և տեխնոլոգիական պրոցեսների յուրացման, մետաղեղենի ավելի խնայողական ու ավելի բարձրորակ տեսակների թողարկման գործում։

Դանդաղ են կառուցվում նոր տեխնիկայի օբյեկտները։ Ահա ձեր գործարանում ևս «550» նոր միջինսորտային հաստոցի կառուցումը ձգձգվում է արդեն հինգ տարի, և այդ ժամանակամիջոցում իրացված է դրա նախահաշվային արժեքի միայն մեկ երրորդը։

Վերջերս ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը որոշում ընդունեցին սև մետալուրգիայի տեխնիկական վերազինման մասին։ Դրանով նախատեսվում է ճյուղի արտադրական ֆոնդերը արմատապես նորացնելու, ինտենսիվ գործոնների մոբիլիզացման հիման վրա ճյուղը որակապես նոր տեխնիկական մակարդակի հասցնելու միջոցառումների լայն կոմպլեքս։



Առաջիկա աշխատանքի մասշտաբները հսկայական են։ Նախատեսված է տասներկուերորդ հնգամյակում գործարկել պատրաստուքների անընդհատ ձուլման մեքենաներ և կրկնապատկել այդ առաջավոր եղանակով պողպատի լցարկումը, վերակառուցել ու տեխնիկապես վերազինել առաջին հնգամյակների տարիներին կառուցված ձեռնարկությունները, մարտենյան վառարանների փոխարեն տեղադրելով կոնվերտորներ և էլեկտրապողպատաձուլման վառարաններ, իրականացնել այլ խոշոր միջոցառումներ։

Կարևոր է, որ միաժամանակ նախատեսված է նաև սոցիալական հարցերի լուծում— աշխատանքի մեքենայացման մակարդակի բարձրացում, աշխատապայմանների բարելավում։ Ակնհայտ է՝ ելնելով դրանից, դուք պետք է մշակեք գործարանի զարգացման հեռանկարները։

Գործարանում տեղի ունեցած զրույցների ընթացքում շատ խոսվեց դրա արմատական վերակառուցման մասին։ Հիշատակվեցին հնարավոր տարբերակները, ցույց տրվեցին նախնական հաշվարկները։ Բայց տարիներն անցնում են, իսկ վերջնական տարբերակը դեռ չկա։ Սև մետալուրգիայի մինիստրությունը, ՍՍՀՄ պետպլանը պետք է արագացնեն հասունացած հարցի լուծումը։ Բայց ձեր դերն էլ երկրորդական չէ, հարկավոր է գործել ավելի եռանդագին։

Ուզում եմ ուշադրությունը բևեռել ֆիզիկական ծանր և նվազ որակյալ ձեռքի աշխատանքի կրճատման վրա։ Գիտեմ, ձեզ մոտ այս պրոբլեմով ակտիվորեն են զբաղվում։ Բայց, այնուամենայնիվ, իրավիճակը ձեզ չպիտի գոհացնի։ Ձեր ձեռնարկությունում յուրաքանչյուր հինգերորդը դեռ զբաղված է ձեռքի աշխատանքով։ Պիտի հոգալ այն մասին, որ այդ աշխատանքի բաժինը նվազագույնի հասցվի։

Ռեզերվներ որոնելու և գործադրելու աշխատանքը այժմ ծավալվում է ամենուրեք։ Գլխավոր լծակը, իհարկե, գիտատեխնիկական առաջընթացի արագացումն է։ Եվ հարկավոր է, ժամանակ չկորցնելով, ամեն ինչ անել, որպեսզի յուրաքանչյուր միավորումում, յուրաքանչյուր ձեռնարկությունում ապահովվի գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների, առաջավոր փորձի յուրացումը։

Դրա հետ մեկտեղ արտադրության տեխնիկական վերազինումը հասարակ գործ չէ, և հեշտ չէ դա իրականացնել միաժամանակ և ամենուրեք։ Ուստի տասներկուերորդ հնգամյակում, առանձնապես հնգամյակի առաջին տարիներին, հարկավոր է արագացնել արտադրության զարգացման տեմպերը, օգտագործելով բոլոր հնարավորությունները։ Իսկ այդպիսի հնարավորություններ կան ամենուրեք՝ բոլոր տեղամասերում և աշխատատեղերում։

Դա նախ և առաջ այն ամենի լավագույն օգտագործումն է, ինչ մենք ունենք՝ կարգուկանոնի հաստատման, պատասխանատվության բարձրացման, կարգապահության ամրապնդման հաշվին։ Միայն այդ ճանապարհով, առանց որևէ ծախսումների, կարելի է շատ ձեռնարկություններում զգալիորեն բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։ Այսպես, ՍՍՀՄ կենտվիճվարչության հատուկ հետազոտության անցկացման օրը Օդեսայի ֆրեզերային հաստոցների գործարանում աշխատանքի արտադրողականությունը բարձրացել էր 19 տոկոսով։ Լավ խորհեցեք, ընկերներ, թե որքան մեծ են մեր ռեզերվները։

Դրանք մեծ են աշխատանքի նաև մյուս ուղղություններում։ Այժմ, թերևս, չկա ավելի հրատապ խնդիր, քան վառելիքի, հումքի և նյութերի խնայողությունը։ Դրանք մեզ վրա ավելի ու ավելի թանկ են նստում։ Արտադրության մասշտաբների աճի համեմատ խնայողության նշանակությունը մեծանում է։ Իսկ մենք վառելիքը, բնափայտը, ցեմենտը, զանազան տեսակի հումքը բնավ էլ լավագույնս չենք օգտագործում։ Հարկավոր է խնամքով վերաբերվել նաև մետաղին։ Ձեզ մոտ մետաղի քիչ կորուստներ չեն լինում արտադրության

պրոցեսում այն պատճառով, որ հարկավոր նմուշատեսակը չեր տալիս սպառողին, գլանվածքի գերածախս են տալիս մեքենաշինարարները։ Շատ մետաղ է կորչում կոռոզիայի, նպատակային չօգտագործման պատճառով։

Ամեն մի շռայլողականություն նշանակում է կողոպտել ինքն իրեն, ամբողջ հասարակությանը, արգելք հարուցել մարդկանց բարեկեցության բարձրացման ճանապարհին։ Պետք է իմանալ, որ վառելիքի, էներգիայի, հումքի և նյութերի ծախսումների միայն մեկ տոկոս կրճատումը մեզ հնարավորություն կտար ազգային եկամտի հավելաճը մեծացնել համարյա յոթ միլիարդ ռուբլով։ Այդ միջոցներով կարելի կլիներ կառուցել հարյուր հազարավոր նոր բնակարաններ, պոլիկլինիկաներ, մանկապարտեզներ, դպրոցներ։

Եվ, իհարկե, մեր հնարավորություններն ու ռեզերվները կապված են արտադրանքի որակի բարձրացման հետ։ Արտադրանքի ցածր որակը զգում է յուրաքանչյուր աշխատավոր, յուրաքանչյուր մարդ։ Դա արտադրության մեջ սարքավորումների աշխատանքի անհուսալիությունն է, կենցաղային տեխնիկայի նորոգման համար ժամանակի ու միջոցների վատնումը, շատ ապրանքների արտաքին տեսքից անբավարարվածությունը։

Արտադրանքի որակի արմատական բարելավումը այսօր առաջնակարգ նշանակություն է ստանում։ Այստեղ եղած ռեզերվները մեծ մասամբ մնում են որպես անձեռնմխելի խոպան, բայց չէ՞ որ դրանց օգտագործումը հաճախ որևէ էական ծախսում չի պահանջում։

Պրոբլեմը լուծելու համար նախ և առաջ անհրաժեշտ է խստիվ պահպանել տեխնոլոգիական կարգապահությունը, անհրաժեշտ է, որ յուրաքանչյուր աշխատավոր մեծ պատասխանատվության զգացումով կատարի իր պարտականությունները։ Դրա հետ մեկտեղ մենք պետք է մտածենք նաև արտադրանքի որակի բարելավման վրա ներգործության տնտեսական միջոցների ուժեղացման մասին։

Մի խոսքով, ուր էլ որ նայենք, ռեզերվները հսկայական են։ Դրանց օգտագործումը շատ բանով կապված է պլանավորման, նյութատեխնիկական մատակարարման, ամբողջությամբ վերցված կառավարման հետ։ Դա ճիշտ է։ Բայց հարկավոր է առաջ ընթանալ լայն ճակատով։ Պրակտիկ գործերին պետք է ձեռնամուխ լինեն ամենքը։ Անհրաժեշտ է խնամքով վերաբերվել ժողովրդական բարիքին, սովորել ճիշտ հաշվել, վերլուծել ու համեմատել ծախսումներն ու արդյունքները, տնտեսավարել խնայողաբար։

Կոչ անելով սովետական ժողովրդին աշխատել անձնվիրաբար ու լարված՝ կուսակցությունն ունի մի նպատակ— է՛լ ավելի բարելավել մեր մարդկանց կյանքը։ Երկիրն ունի մեկ տեր՝ աշխատավոր մարդը, և այն ամենը, ինչ արվում է, արվում է հանուն նրա շահերի։

Մարդու նկատմամբ հոգատարությունը՝ նրա հարաճուն նյութական ու կուլտուրական պահանջմունքներով հանդերձ, եղել ու մնում է մեր պլանների գլխավոր բովանդակությունը։ Մենք դրանից ենք ելնում նաև տասներկուերորդ հնգամյակի առաջադրանքները կազմելիս։ Ժողովրդի բարեկեցությունը պետք է բարձրացվի մի նոր աստիճանի, պետք է բարելավվի սովետական մարդկանց կենսապայմանների ամբողջ կոմպլեքսը, լինեն դրանք բնակարան թե՛ աշխատապայմաններ, սպասարկումներ թե՛ ապրանքներ, կենսաթոշակային ապահովություն թե՛ հոգևոր զարգացում։

Ապա Մ. Ս. Գորբաչովը իր ելույթում կանգ առավ արտաքին քաղաքականության վրա։ Սովետական մարդիկ, ասաց նա, լավ գիտեն, թե մեր կուսակցությունն ու կառավարությունը ինչպիսի հսկայական ջանքեր են գործադրում խաղաղությունը պաշտպանելու, միջուկային աղետից մեր երկրագունդը պահպանելու համար։ Վ. Ի. Լենինը իր ժամանակին շատ պարզորոշ արտահայտել է սոցիալիստական պետության սկզբունքային դիրքորոշումը՝ ասելով.



«...Մենք բանվորներին ու գյուղացիներին խոստանում ենք ամեն ինչ անել հանուն խաղաղության։ Եվ մենք դա կանենք»։

Շատ տարիներ են անցել այդ ժամանակվանից։ Ծանր ժամանակներ շատ է ապրել մեր ժողովուրդը՝ իր վրա զգալով ամենաարյունահեղ պատերազմների արհավիրքները։ Տարեցտարի ավելի է ուժեղացել ու հզորացել մեր պետությունը։ Այսօր նա համաշխարհային մեծ տերություն է, որը պատրաստ է արժանի հակահարված տալու ամեն մի ագրեսորի։ Բայց այսօր նույնպես մենք ավելի ուժեղ կերպով, քան երբևիցե, բանվորներին ու գյուղացիներին խոստանում ենք ամեն ինչ անել հանուն խաղաղության։ Եվ մենք դա կանենք։

Մենք ապրում ենք լարված ժամանակներում։ Դուք դա տեսնում եք։ Հարյուր միլիոնավոր մարդկանց կյանքը կամ մահը, ընդհանրապես ամբողջ մարդկության բախտը պայմանավորված են նրանով, թե կհաջողվի՞, արդյոք, կանգնեցնել պատերազմի հրձիգներին։

Ստեղծված պայմաններում, լուծելով միջազգային խաղաղության ամրապնդման խնդիրները, մենք առաջին հերթին պետք է մտածենք այն մասին, որ ամրապնդենք սոցիալիզմի երկրների դիրքերը համաշխարհային ասպարեզում, նպաստենք նրանց բազմակողմանի փոխհամագործակցության զարգացմանը։ Մենք հենց այդպես էլ ջանում ենք գործել։ Խոսքը վերաբերում է Տնտեսական փոխօգնության խորհրդի անդամ երկրների տնտեսական համագործակցության, տնտեսական ինտեգրացման խորացմանը։ Լավ կարգավորված մասնագիտացումն ու արտադրական կոոպերացումը, գիտության ու տեխնիկայի զարգացման բնագավառում ակտիվ փոխգործակցությունը է՛լ ավելի ամուր են դարձնում մեր ամբողջ համագործակցությունը և նրա մասնակիցներից յուրաքանչյուրին տնտեսական տեսակետից առավել ուժեղ են դարձնում պաշտպանության բնագավառում, ի չիք են դարձնում տնտեսական ճնշման այն քաղաքականությունը, որ այժմ Արևմուտքն ակտիվորեն վարում է սոցիալիզմի երկրների նկատմամբ։

Մեծ իրադարձություն եղավ ապրիլ ամսին մեր եղբայրական դաշինքի քաղաքական ու պաշտպանական հիմքի՝ Վարշավայի պայմանագրի գործողության երկարաձգումը հաջորդ քսան տարով։ Դա նախադրյալներ է ստեղծում հանուն խաղաղության մեր համատեղ պայքարի է՛լ ավելի մեծ ակտիվացման համար։ Պետք է ընդհանուր առմամբ ասել, ընկերներ, որ սոցիալիստական ընկերակցության երկրների հարաբերությունները դառնում են ավելի սերտ ու ավելի խոր, նրանց քաղաքական ղեկավարների կոնտակտները՝ ավելի արգասավոր։ Դա մեծ գործ է։ Մենք կջանանք ըստ ամենայնի նպաստել այդ պրոցեսին։

Ես արդեն հնարավորություն եմ ունեցել խոսելու Չինական Ժողովրդական Հանրապետության հետ հարաբերությունների մասին։ Կարծում եմ, ժամանակը երկու կողմերին էլ ցույց է տվել, որ պառակտվածությունից և առավել ևս անբարյացակամությունից, կասկածամտությունից չի շահում նրանցից ոչ մեկը, իսկ բարիդրացիական համագործակցությունը միանգամայն հնարավոր ու ցանկալի է։ Մենք մեր կողմից մտադիր ենք ակտիվորեն նպաստել այն բանին, որ սովետա-չինական հարաբերությունների բացասական գոտին, որը քիչ արհեստական շերտանստվածքներ չի ծնել, լիովին հաղթահարվի։ Համոզված եմ, որ վերջին հաշվով դա այդպես էլ կլինի։

Աշխարհի ժամանակակից պատկերը բնորոշվում է միջազգային կյանքում այն պետությունների հարաճուն դերով, որոնք ոչ այնքան վաղուց ազատագրվեցին գաղութային ու կիսագաղութային կախումից և բռնեցին ինքնուրույն զարգացման ուղին։ Համաշխարհային զարգացման մեջ շատ բան պայմանավորված կլինի նրանով, թե ինչպես կդասավորվի այդ երկրների ճակատագիրը, թե նրանց հետ ինչպիսի հարաբերություններ կհաստատեն ավելի զարգացած պետությունները։

Սովետական Միության համար այդ հարցը միանգամայն պարզ է։ Ի դեմս գաղութատիրությունից ազատված ժողովուրդների, մենք տեսնում ենք խաղաղության և առաջադիմության գործի համար մղվող պայքարում բարե-

կամների ու իրավահավասար պարտնյորների, լիովին համերաշխ ենք իրենց սուվերենությունը հաստատելու, իրենց ազատությունն ու անկախությունը պաշտպանելու նրանց ձգտման հետ։ Իրավահավասար համագործակցության շրջանակներում և մեր հնարավորությունների չափով մենք նրանց օգնում ենք ստեղծելու իրենց առաջավոր ազգային էկոնոմիկան։

Մի խոսքով, մենք ամեն բան անում ենք և կանենք, որպեսզի ընդլայնենք ու խորացնենք իրավահավասար բարեկամական համագործակցությունը ազատագրված երկրների հետ։ Այդ նպատակին էին ծառայում նաև վերջերս մեր ունեցած հանդիպումներն ու բանակցությունները այնպիսի երկրների ղեկավարների հետ, ինչպիսին են Հնդկաստանը, Սիրիան, Նիկարագուան։ Մենք գտնում ենք, որ սոցիալական առաջադիմության և ազգային ազատագրության դաշինքը մարդկության լավագույն ապագայի գրավականն է։

Սկզբունքորեն այլ քաղաքականություն են վարում իմպերիալիստական պետությունները։ Դարեր շարունակ նրանք շահագործել են գաղութների աշխատանքը և թալանել բնական ռեսուրսները, աղքատության մեջ պահել նրանց ժողովուրդներին։ Հիմա էլ ձգտում են նրանց կապել կապիտալիզմի սիստեմին, ընդ որում բոլոր միջոցներով — տնտեսական, ռազմական, սպառնալիքների ու ահաբեկման, ողորմությունների ու կաշառքների միջոցով։ Նրանցից շատերի վզին արդեն պարտքի ամուր օղակ է հագցված, որն ավելի ու ավելի է սեղմվում։ Երիտասարդ պետություններին ձգտում են կարգադրել, թե նրանք ինչ քաղաքականություն պետք է վարեն իրենց տանը։ Անհաճոներին կամ անհնազանդներին տապալում և սպանում են։ Դա այսպես կոչված «ազատ աշխարհի» գաղութատիրական քաղաքականություն վարող պետությունների սովորական պրակտիկան է։

Բոլոր պետությունների սուվերենության ու անկախության, իրենց զարգացման ուղիների ազատ որոշման իրավունքի գործնական ճանաչումից կապիտալիզմի ագրեսիվ ուժերի հրաժարումը, իրենց կամքը պարտադրելու, ժամանակակից աշխարհը ամեն գնով իրենց ուզածով վերաձևելու և վերափոխելու փորձերն են հենց այսօր ժողովուրդների վրա կախված վտանգի ամենամեծ աղբյուրը, ընդհանուր խաղաղությանը սպառնացող ամենամեծ վտանգը։

Այսօր հարցերի հարցն է՝ դադարեցնել աշխարհն ընդգրկած զենքի մրցավազքը, անցնել դրա կուտակված պաշարների կրճատմանը։ Սկզբունքորեն մենք միջուկային և այլ զենքի կարիք չունենք կապիտալիստական աշխարհի հետ նորմալ հարաբերություններ հաստատելու համար, եթե նա, իհարկե, հրաժարվի ՍՍՀՄ-ի և սոցիալիստական մյուս երկրների նկատմամբ ագրեսիվ մտադրություններից։

Մենք պատրաստ ենք կապիտալիզմի հետ մրցել բացառապես խաղաղ, ստեղծարար գործունեության հողի վրա։ Ուստի մենք հանդես ենք գալիս քաղաքական երկխոսության զարգացման և կապիտալիստական երկրների հետ փոխգործողության օգտին, փոխշահավետ առևտրատնտեսական, գիտատեխնիկական ու մշակութային կապերի լայն զարգացման օգտին, պատրաստ ենք այդ կապերը զարգացնել կայուն, երկարաժամկետ հիմքի վրա։ Բայց դրանք պետք է լինեն ազնիվ, իրոք փոխշահավետ կապեր՝ առանց որևէ խտրականության։ Առևտուրը մեր ներքին գործերին միջամտելու համար օգտագործելու փորձեր անելը, օրինակ, անհուսալի բան է։ Մեզ այդպիսի առևտուրը պետք չէ, առանց դրա էլ մենք կարող ենք յոլա գնալ։

Մենք պատրաստ ենք համաձայնության գալ ո՛չ միայն սպառազինությունների մրցավազքի դադարեցման շուրջը, այլև դրանց ամենախոշոր կրճատումների շուրջը, ընդհուպ մինչև ընդհանուր և լրիվ զինաթափումը։ Այժմ, ինչպես գիտեք, մենք Ժնևում բանակցություններ ենք վարում ԱՄՆ-ի հետ։ Դրանց խնդիրն է, ինչպես դա հասկանում է սովետական ղեկավարությունը, դադարեցնել սպառազինությունների մրցավազքը երկրագնդի վրա և այն թույլ չտալ տիեզերքում։ Մենք բանակցությունների ենք գնացել, որպեսզի գործնականում հասնենք այդ նպատակներին, բայց, դատելով ըստ ամենայնի, ԱՄՆ-ի



վարչակազմը և ռազմարդյունաբերական կոմպլեքսը, որին նա ծառայում է, հենց դա է, որ չեն ցանկանում։ Լուրջ պայմանավորվածությունների հասնելը, ըստ երևույթին, նրանց պլանների մեջ չի մտնում։ Նրանք շարունակում են իրականացնել մասսայական ոչնչացման նորանոր զինատեսակների արագ ստեղծման վիթխարի ծրագիրը, հույս ունենալով գերազանցության հասնել սոցիալիզմի երկրների նկատմամբ և նրանց թելադրել իրենց կամքը։

Ամերիկացիները Ժնևում ո՛չ միայն սպառազինությունների մրցավազքի սահմանափակման լուրջ առաջարկություններ չեն արել, այլև, ընդհակառակը, ձեռնարկում են այնպիսի քայլերի, որոնք անհնար են դարձնում այդպիսի սահմանափակումը։ Ես նկատի ունեմ այսպես կոչված «աստղային պատերազմների», հարվածային տիեզերական զենքի ստեղծման ծրագիրը։ Դրա իբր «պաշտպանական» բնույթի մասին խոսակցությունները, իհարկե, հեքիաթներ են միամիտների համար։ Մտահղացման իմաստն այն է, որ փորձեր արվեն կազմալուծելու Սովետական Միության ստրատեգիական զենքը. իրենց համար ապահովելու մեր երկրին անպատիժ միջուկային հարված հասցնելու հնարավորություն։

Սա է հարցի էությունը, որը հաշվի չառնել մենք չենք կարող։ Եթե Սովետական Միությունը կանգնեցվի տիեզերքից բխող ռեալ սպառնալիքի առջև, արդյունավետ դիմակայության միջոց կգտնի. սրանում, ես դա ասում եմ միանգամայն որոշակի, թող ոչ ոք չկասկածի։ Իսկ առայժմ պարզ է մի բան. տիեզերքի ռազմականացման ամերիկյան ծրագիրը կատարում է խուլ պատի դեր, որը փակում է Ժնևում համապատասխան համաձայնությունների հասնելու ուղին։

Մարդկության առջև ծանր պատասխանատվություն է ստանձնում ԱՄՆ-ի վարչակազմը իր ռազմաշունչ քաղաքականությամբ։ Կարող եմ ավելացնել, որ, եթե նա որոշում ընդուներ բռնել ավելի խելամիտ դիրք, ապա կարող էր խոսք լինել երկու կողմերից միջուկային զենքի պաշարների հեռագնա, իրոք արմատական կրճատումների շուրջը փոխադարձաբար ընդունելի համաձայնության մասին, ուղի կհարթվեր այդ զենքի լիակատար վերացման, միջուկային պատերազմի սպառնալիքի վերացման համար, ինչի մասին երազում են աշխարհի բոլոր ժողովուրդները։

Իսկ եթե Ժնևի բանակցություններում մեր պարտնյորները շարունակեն պատվիրակությունների նիստերում ժամանակ ձգձգելու իրենց գիծը, խույս տալով այն հարցերի լուծումից, հանուն որոնց նրանք հավաքվել են, և այդ ժամանակն օգտագործելով իրենց ռազմական ծրագրերը արագացնելու համար՝ թե՛ տիեզերքում, թե՛ ցամաքում և թե ծովում, ապա, իհարկե, մենք ստիպված կլինենք վերագնահատել ամբողջ իրավիճակը։ Մենք պարզապես չենք կարող նորից թույլ տալ, որ բանակցություններն օգտագործվեն որպես աչքակապություն, որպես ռազմական պատրաստությունների քող, որոնց նպատակն է ապահովել ԱՄՆ-ի ստրատեգիական գերազանցությունը, աշխարհակալության հասնելու գիծը։ Այդ մտադրություններին հակահարված տալու գործում, ես վստահ եմ, մեզ կպաշտպանեն ամբողջ աշխարհի իրոք խաղաղասեր ուժերը, մեզ պաշտպանում է սովետական ժողովուրդը։

Կուսակցության Կենտկոմը մեծ գոհունակությամբ նշում է, որ մեր խաղաղասիրական արտաքին քաղաքականությունը լիակատար ըմբռնում և հավանություն է գտնում սովետական ժողովրդի շրջանում։ Բայց ամենագլխավորն այն է, որ սովետական մարդիկ ո՛չ միայն հավանություն են տալիս դրան, այլև ամրապնդում են իրենց գործերով, իրենց աշխատանքով։ Եվ որքան հաջող է այդ աշխատանքը, որքան հարուստ և ուժեղ է մեր հայրենիքը, այնքան ծանրակշիռ է նրա ավանդը ընդհանուր խաղաղության և մարդկության առաջադիմության գործում։

Կուսակցությունը պետք է գործնականորեն նախապատրաստի և անցկացնի իր XXVII համագումարը։ Դա լարված աշխատանքի, պատասխանատու որոշումների ժամանակաշրջան է։ Ուսանելի է վերհիշել, թե այդպիսի

*պատասխանատու ժամանակաշրջանում կուսակցության և երկրի աշխատանքը ինչպես էր պատկերացնում Իլյիչը։ ՌԿ(բ)Կ IX համագումարից առաջ նա նկատառումներ է արտահայտել այդ առումով և դրանք եզրափակել այսպիսի հետևությամբ։ «Հաշվի առնել գործնական փորձը՝ դեն նետելու համար վնասակարը,— գրել է Լենինը,— միավորել այն ամենը, ինչ արժեքավոր է... Ահա թե ինչպես ենք մենք հասկանում մոմենտի խնդիրները և կուսակցական համագումարի խնդիրները»։*

*Հենց այսպես ենք մենք պարտավոր դեպի համագումար ընթանալ յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվում՝ գործարաններում ու ֆաբրիկաներում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, գիտական ինստիտուտներում ու կոնստրուկտորական բյուրոներում, ամբողջ երկրում։ Ընթանալ հենց այնպես, ինչպես սովորեցրել է Լենինը, առանց ավելորդ խոսքերի, եռանդուն կերպով, հաստատաքայլ ու հետևողականորեն։*

*Վերջում Մ. Ս. Գորբաչովը գործարանի բանվորներին շնորհակալություն հայտնեց այդ ընկերական հանդիպման նկատմամբ ցուցաբերած հետաքրքրության համար, Կենտրոնական կոմիտեի գծի բանվորական պաշտպանության համար, Կենտկոմի քաղբյուրոյի և սովետական կառավարության գործունեության նկատմամբ ցուցաբերած հետաքրքրության համար։ Նա դահլիճում ներկա գտնվողներին, ձեռնարկության բոլոր աշխատավորներին, նրանց ընտանիքներին մաղթեց հաջողություններ աշխատանքում և ուսման մեջ, քաջառողջություն, ամենայն բարիք կյանքում։*

(Ընկեր Մ. Ս. Գորբաչովի ելույթը լսվեց մեծ ուշադրությամբ և բազմիցս ողեկցվում էր երկարատև ծափահարություններով)։

---

# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ԱՐԱԳԱՑՄԱՆ ՀԱՐՑԵՐԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄՈՒՄ ԿԱՅԱՑԱԾ ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ ԵՎ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԸ

## Ընկեր Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ զեկուցումը հանրապետական կուսակցական-տնտեսական ակտիվի ժողովում 1985 թ. հուլիսի 6-ին*

*Կոմունիստները, սովետական բոլոր մարդիկ որպես մեր հայրենիքի հետագա համակողմանի ծաղկման համար մղվող պայքարի մարտական ծրագիր ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումի որոշումները, պլենում, որը սահմանեց երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու կոնցեպցիան գիտատեխնիկական առաջընթացի հիման վրա։*

*Այդ բնագավառում անհետաձգելի միջոցների ձեռնարկման անհրաժեշտությամբ էր թելադրված նաև Կենտկոմի քաղբյուրոյի որոշումը՝ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեում հրավիրելու խորհրդակցություն, որը տեղի ունեցավ հունիսի 11—12-ին։ Զեկուցմամբ հանդես գալով խորհրդակցությունում, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղար ընկ. Մ. Ս. Գորբաչովը, ցույց տալով սովետական էկոնոմիկայի նվաճումները, խոր և բազմակողմանիորեն վերլուծեց ամբողջ ժողովրդական տնտեսության աճի հիմնական ուղիներն ու պրոբլեմները։*

*«Առաջադրելով սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու խնդիրը,— շեշտեց Միխայիլ Սերգեևիչը,— Կենտրոնական կոմիտեն նկատի ունի ոչ թե սոսկ արագացնել ժողովրդական տնտեսության աճի տեմպերը։ Խոսքը վերաբերում է մեր զարգացման նոր որակին, արագ առաջընթացին ստրատեգիապես կարևոր ուղղություններում, արտադրության ստրուկտուրային վերակառուցմանը, ինտենսիվ ռելսերի, կառավարման արդյունավետ ձևերի անցնելուն, սոցիալական պրոբլեմների առավել լիակատար լուծմանը»։*

*Երկրի արագ առաջընթացը, նշվեց խորհրդակցությունում, այսօր ձեռք է բերում քաղաքական, տնտեսական, սոցիալական առաջնահերթ նշանակություն։*

*Սովետական Հայաստանի աշխատավորները, ինչպես բոլոր սովետական մարդիկ, ջերմորեն հավանություն են տալիս ՍՄԿԿ Կենտկոմում կայացած խորհրդակցության արդյունքներին, լի են սոցիալ-տնտեսական զարգացման ուղղությամբ կուսակցության նախանշած կուրսի իրականացման համար ակտիվ, համառ ու հետևողական պայքար ծավալելու, մեր սոցիալիստական հայրենիքի հզորության համակողմանի ամրապնդման գործում իրենց ավանդը ներդնելու վճռականությամբ։*

* Տպագրվում է զեկուցման շարադրանքը։

Գիտատեխնիկական առաջընթացի արագացումը կուսակցությունը դիտում է որպես իր տնտեսական ստրատեգիայի գլխավոր ուղղություն, ժողովրդական տնտեսության ինտենսիվացման և դրա արդյունավետության բարձրացման, տնտեսական ու սոցիալական մյուս հարցերի լուծման հիմնական լծակ։

Սովետական Հայաստանի էկոնոմիկան հնգամյակից հնգամյակ զարգացել է անշեղորեն։ Աճել է ձեռնարկությունների թիվը, փոխվել քաղաքների և գյուղերի դեմքը, բարձրացել կուլտուրայի, կրթության, առողջապահության, ժողովրդի բարեկեցության մակարդակը։ Հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման ասպարեզում, անշուշտ, նոր առաջընթաց քայլ կլինի ընթացիկ հնգամյակը։

Միայն անցած չորս տարիներին ազգային եկամուտը՝ էկոնոմիկայի զարգացման այդ կարևորագույն ցուցանիշը, աճել է 23,0 տոկոսով, արդյունաբերական արտադրության ծավալը՝ 25 տոկոսով։ Պլանից ավելի իրացվել է ավելի քան 500 միլիոն ռուբլու արտադրանք։ Գործարկվել են տասնյակ նոր ձեռնարկություններ։ Ապահովվում է պարենային ծրագրի հետևողական իրականացումը։ Գյուղատնտեսական արտադրության համախառն արտադրանքի աճը հասել է 12 տոկոսի (միջին տարեկան հաշվարկումներով), որը գերազանցում է հնգամյակի առաջադրանքը։

Հաջողությամբ է իրականացվում սոցիալական ծրագիրը։ Շատ բան է արված աշխատավորների կյանքի, աշխատանքի և հանգստի պայմանների բարելավման համար։

Սակայն այս ցուցանիշները մեզ չպետք է հանգստացնեն։ Այսօր կուսակցությունը խնդիր է դնում իրականացնել ժողովրդական տնտեսության տեխնիկական նոր վերակառուցում, որակապես վերափոխել հասարակության նյութատեխնիկական բազան։ Գիտության և տեխնիկայի նորագույն նվաճումների հիման վրա հասնել արտադրության ինտենսիվացման արագացման— ահա որն է խնդիրը։ Առանց գիտատեխնիկական առաջընթացի արագացման, առանց էկոնոմիկայի ինտենսիվացման ասպարեզում հեղափոխական փոփոխությունների, մենք գործը տեղից չենք շարժի։ Այդ խնդրի լուծումը անհետաձգելի գործ է, համակուսակցական և համաժողովրդական գործ։ Մենք կարող էինք ձեռք բերել ավելին, հասնել առավել բարձր ցուցանիշների, եթե ինտենսիվ ռելսերի վրա էկոնոմիկայի փոխադրումը իրականացնեինք առավել արագ և առավել հետևողականորեն։ Մենք շատ ենք խոսում զարգացման ինտենսիվ ձևերի անցնելու, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, տնտեսական մեխանիզմի կատարելագործման մասին, բայց, պետք է խոստովանել, որ մեր շատ կադրեր դեռևս լրիվ չեն թոթափել էքստենսիվ տնտեսավարման հոգեբանությունը։ Մեր կողմից բավականաչափ հաստատակամություն հանդես չբերվեց ստրուկտուրային քաղաքականությունը, կառավարման մեթոդներն ու ձևերը, տնտեսական գործունեության հոգեբանությունը ժամանակի պահանջներին համապատասխան արագ վերակառուցելու հարցում։

Մեզ մոտ արտադրական ոլորտում լայնորեն և արագ տեմպերով աշխատանքներ չեն տարվում գործող ձեռնարկությունների վերակառուցման և տեխնիկական վերազինման ասպարեզում։ Չնայած 11-րդ հնգամյակի անցած տարիներին այդ նպատակներին հատկացված կապիտալ ներդրումների տեսակարար կշիռը, 10-րդ հնգամյակի համեմատությամբ, ավելացել է, սակայն մենք վճռական փոփոխության չհասանք նոր շինարարության և վերազինման հարաբերակցության մեջ։

Կենտկոմի պլենումներում մենք բազմիցս խոսել ենք ժողովրդական տնտեսության ճյուղերում և, հատկապես, արդյունաբերության մեջ հիմնական ֆոնդերի հնացման մասին։ Չի կարելի հաշտվել այն բանի հետ, որ ձեռնարկությունների հիմնական ֆոնդերի ակտիվ մասի մոտ մեկ երրորդը, իսկ հաճախ նաև կեսը ունենան 10—15—20 տարվա վաղեմություն։ Մեզ մոտ նման ձեռնարկությունները, ցավոք, քիչ չեն։

Մեքենաշինության և մետաղամշակման մեջ, որտեղ կենտրոնացված է ողջ արդյունաբերության մետաղահատ հաստոցների և դարբնոցամամլիչային մեքենաների երեք քառորդը, դրանց մեկ քառորդ մասը գործում է ահա արդեն



տասը տարուց ավելի, ինչը, բնականաբար, կասեցնում է աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացումը։

Հանրապետության պետպլանը, մինիստրությունները և գերատեսչությունները, միութենական ձեռնարկություններն ու միավորումները պետք է իրականացնեն հիմնական ֆոնդերի մանրակրկիտ գույքագրում, նշեն յուրաքանչյուր ճյուղի, յուրաքանչյուր ձեռնարկության տեխնիկական վերակառուցման հեռանկարային ծրագրեր։ Հարկավոր է հասնել այն բանին, որ ավելանա հնացած հիմնական ֆոնդերի, հատկապես դրանց ակտիվ մասի դուրսգրման բաժինը։ Բայց արտադրության նորացումը չպետք է լինի ինքնանպատակ։ Այն պետք է ուղեկցվի առաջավոր տեխնիկայի և տեխնոլոգիայի պարտադիր ներդրմամբ, տա տնտեսական և սոցիալական ամենաբարձր արդյունք։

Կուսակցական կազմակերպությունները և կոմիտեները պետք է հասնեն այն բանին, որ մեր բոլոր կադրերը խորապես ըմբռնեն յուրաքանչյուր ձեռնարկություն, յուրաքանչյուր ճյուղ, ամբողջ ժողովրդական տնտեսությունը դեպի ինտենսիվ զարգացման ուղին վերակողմնորոշելու կենսական անհրաժեշտությունը։ Հարկավոր է մի կողմ նետել էքստենսիվ զարգացման կատեգորիաներով մտածելու և գործելու ստերեոտիպը, որքան հնարավոր է շատ կապիտալ ներդրումներ, այլ ռեսուրսներ «պոկելու», իսկ արտադրության ավելի քիչ պլան ստանալու հոգեբանությունը։

Մի խոսքով, անհրաժեշտ է վճռականորեն հրաժարվել էկոնոմիկայի զարգացման «վատնողական» ուղուց։

Ներդրումների արդյունավետության բարձրացման համար պետք է պահանջկոտություն հանդես բերել բոլոր՝ և՛ տնտեսական, և՛ սովետական, և՛ կուսակցական կադրերի նկատմամբ։

Այստեղ կողմնորոշիչը, խորհրդակցությունում ասաց ընկեր Մ. Ս. Գորբաչովը, մեկն է. 12-րդ հնգամյակում մենք պետք է նվազագույն ծախսերով առավել բարձր բնագծեր նվաճենք։ Սա է տնտեսական և, եթե կուզեք, քաղաքական խնդիրը։

Մեզ հարկավոր է,ինչպես նշվեց խորհրդակցությունում, կտրուկ փոխել ինվեստիցիոն և ստրուկտուրային քաղաքականությունը։ Այսօր շեշտը պետք է դրվի ձեռնարկությունների տեխնիկական վերազինման, ռեսուրսների խնայողության, արտադրանքի որակի շեշտակի բարձրացման վրա։ Այս բոլոր ուղղություններում մենք պետք է հետևողականորեն վերացնենք աշխատանքում տեղ գտած թերությունները։ Չխոսելով այն մասին, որ շատ ձեռնարկություններում,առհասարակ, չկան վերակառուցման և տեխնիկական վերազինման կոմպլեքսային պլաններ, նշենք, որ մեզ մոտ տարեցտարի չեն կատարվում պետական պլանները տեխնիկական առաջընթացի առանձին ուղղություններում։ Բացի այդ, արմատավորված շատ միջոցառումների առնչությամբ կատարված զգալի ծախսումների դեպքում չի ապահովվում սպասվող տնտեսական արդյունքի ստացումը և արտադրական ծախսումների արագ հատույցը։ Չի կարելի լրջորեն խոսել ինտենսիվացման մասին առանց առկա արտադրական կարողությունների, եղած ֆոնդերի առավելագույն օգտագործման։

Չնայած անցած չորս տարում ամբողջությամբ վերցրած արդյունաբերության մեջ որոշ չափով բարձրացել է արտադրական սարքավորումների օգտագործման մակարդակը, զգալի քանակությամբ սարքավորումներ պարապուրդ են տալիս ամբողջ աշխատաժամանակի ընթացքում կամ էլ վատ, թերբեռնված են օգտագործվում։ Շատ ձեռնարկություններ ռացիոնալ չեն օգտագործում նյութահումքային ռեսուրսները։

Մինիստրությունների ու գերատեսչությունների, արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարները, կուսակցական կազմակերպությունները պետք է գործուն միջոցներ ձեռնարկեն այդ թերությունները վերացնելու համար։

Ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը կոլտնտեսությունների և սովխոզների տնտեսական գործունեության պրակտիկայից վերցրած կոնկրետ օրինակներով ցույց է տալիս, որ տակավին անբավարար արդյունավետությամբ է օգտագործվում նաև հողը՝ գյուղատնտեսության հիմնական ֆոնդը։ Բարձր բերք ստացող տնտեսությունների կողքին քիչ չեն նաև այնպիսիները, որոնց ցուցանիշները

հացահատիկի, կարտոֆիլի, բանջարեղենի և բուսաբուծական մյուս կուլտուրաների արտադրության գծով անթույլատրելիորեն ցածր են միջին հանրապետական բերքատվությունից: Այսպես. անցյալ տարի հացահատիկի արտադրությամբ զբաղվող 400 սովխոզներից 57 տնտեսություններ մեկ հեկտարից միջին հաշվով ստացել են մինչև 10 ցենտներ հացահատիկ, 145 կարտոֆիլացան սովխոզներից 26-ը մեկ հեկտարից ստացել է 76 ցենտներից էլ պակաս կարտոֆիլի բերք, բանջարաբուծությամբ զբաղվող 210 սովխոզներից 49-ում բերքատվությունը չի անցել 100 ցենտներից: Ավելի լավ չեն գործերը նաև անասնապահության մթերատվության բարձրացման ասպարեզում: Վերջին տարիներին գրեթե չի աճում հարյուր մայրից ստացվող հորթերի, խոճկորների, գառների և ուլերի քանակը, իսկ 1984 թվականին, 1983 թվականի համեմատությամբ, այդ ցուցանիշը նույնիսկ նվազել է: Անցյալ տարի հանրապետության 148 տնտեսություններում 100 կովից ստացվել է 70 հորթից էլ պակաս:

Խիստ բարելավում է պահանջում կերի որակը: Հանրապետության ագրոքիմլաբորատորիայի անալիզների տվյալների համաձայն՝ 1984 թվականին սենաժի ստուգված քանակության 83 տոկոսը դասվել է երրորդ և չորրորդ կարգի: Առաջին կարգի սենաժը կազմել է ընդամենը 3 տոկոս: Սննդարար նյութերի մեծ կորուստներ են թույլ տրվում (40—50 տոկոս) կերը սիլոսացնելիս: 1984 թվականին որակի ստուգման ենթարկված սիլոսի 43 տոկոսը դասվել է երրորդ և չորրորդ կարգի:

Կան շրջաններ, որտեղ խիստ ցածր է կապիտալ ներդրումների հատույցը: Տասը տարում, օրինակ, Աբովյանի շրջանում (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Գ. Բարիկյան, շրջգործկոմի նախագահ՝ ընկ. Գ. Մանուկյան) հիմնական գյուղատնտեսական ֆոնդերը աճել են 19,5 միլիոն ռուբլուց մինչև 32,6 միլիոն ռուբլի կամ՝ 1,7 անգամ: Մինչդեռ այդ նույն ժամանակամիջոցում համախառն արտադրանքն ավելացել է ընդամենը 11,3 տոկոսով: Այստեղ կրկնակի նվազել է ֆոնդահատույցը: Կամոյի շրջանում (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Դ. Հարությունյան, շրջգործկոմի նախագահ՝ ընկ. Ռ. Խանդանյան) գյուղատնտեսության հիմնական ֆոնդերն ավելացել են՝ 13,6 միլիոն ռուբլուց հասնելով 28,7 միլիոն ռուբլու, այսինքն՝ 2,1 անգամ, իսկ դաշտերի ու ֆերմաների արտադրանքը՝ ընդամենը 5,5 տոկոսով, կրկնակի նվազել է ֆոնդահատույցը:

Շռայլողական էկոնոմիկայի այսպիսի օրինակներ կան նաև այլ շրջաններում, ագրոարդյունաբերական համալիրի ճյուղերում:

Ոչ ճիշտ լուծումների, ջրատնտեսային կառուցվածքների վատ վիճակի և սխալ շահագործման, ուղղակի անտնտեսավարության պատճառով մենք ամեն տարի ոռոգման ջրի հսկայական կորուստներ ենք ունենում:

Անասնապահության և բուսաբուծության մեջ աշխատատար շատ պրոցեսներ բավարար չափով մեքենայացված չեն: Այդ ցուցանիշներով մենք խիստ ետ ենք մնում: Հանդուրժելի՞ է միթե, երբ նույնիսկ մեր նոր ֆերմաները կոմպլեքսայնորեն մեքենայացված չեն, երբ նոր գյուղատնտեսական մեքենաներն ու առաջավոր տեխնոլոգիաները ներդրվում են դանդաղ, առանց պատշաճ թափի:

Ագրոարդյունաբերական համալիրի ղեկավար աշխատողները և, առաջին հերթին, մինիստրներ ընկ. ընկ. Հ. Թարջումանյանը, Ռ. Սուխուդյանը, Ռ. Շահոյանը, Ա. Շահվերդյանը պետք է համապատասխան հետևություններ անեն և կուսակցության ժամանակակից պահանջների լույսի ներքո կտրուկ փոխեն իրադրությունը գյուղատնտեսության մեջ, ակտիվորեն ու հետևողական աշխատեն արտադրությունը ինտենսիվացման ռելսերի փոխադրելու նպատակով:

Իսկ ինչպե՞ս ենք մենք օգտագործում մեր փոխադրամիջոցները: Վագոնների գերպարապուրդներն ու ավտոմեքենաների դատարկ վազքը, բեռնմանբեռնաթափման աշխատանքների մեքենայացման ցածր մակարդակը ուղղակի հարվածում են փոխադրումների արդյունավետությանը: Իսկ որքա՞ն պրոբլեմներ մենք ունենք շինարարության մեջ:

Հանրապետության արդյունաբերության բնագավառում բարձր է մեքենաշինության տեսակարար կշիռը: Եվ, որքան էլ տարօրինակ է, այստեղ ևս դանդաղ են իրականացվում տեխնիկական վերազինման, առաջավոր տեխնոլոգիական պրոցեսների արմատավորման, որակապես նոր մեքենաների, սարքավորումների, սարքերի յուրացման աշխատանքները: Դեռևս աննշան աշխատանքներ են տարվում մեքենաշինական արտադրության ավտոմատացման, դրա տեխնիկական մակարդակի բարձրացման, վերակարգավորվող ճկուն համակարգերի ներդրման, ռոբոտավորման, անմարդ տեխնոլոգիաների արմատավորման բնագավառներում:

Մեքենաշինության զարգացմանը հեռանկարում ևս պետք է առանձնակի ուշադրություն նվիրվի՝ որպես ժողովրդական տնտեսության մեջ գիտատեխնիկական հեղափոխության իրականացման վճռական ճյուղի: Հանրապետության մեքենաշինության առաջանցիկ զարգացման միտումին անհրաժեշտ է գերադաս բնույթ հաղորդել, այսուհետ ևս դրա աճի տեմպերն արագացնել հիմնականում պրոգրեսիվ ենթաճյուղերի՝ սարքաշինության, էլեկտրատեխնիկական, հաստոցագործիքաշինական, էլեկտրոնային արդյունաբերության և ռադիոարդյունաբերության զարգացման հաշվին: Մենք պետք է նոր ազդակ հաղորդենք խոշոր գիտաարտադրական միավորումների զարգացմանը և հեռանկարում անցնենք նաև միասնական ճյուղային գիտաարտադրական տերիտորիալ կոմպլեքսների ստեղծման:

Շատ անելիքներ կան քիմիական արտադրությունների նորացման բնագավառում: Տեխնիկական լուրջ վերազինման կարիք ունեն շինանյութերի արդյունաբերությունը, հանքարդյունաբերությունը, վերամշակման արդյունաբերությունը և այլն:

Կապիտալ ներդրումները առաջին հերթին ձեռնարկությունների վերակառուցմանն ու տեխնիկական վերազինմանը հատկացնելու, ֆիզիկապես ու բարոյապես հնացած ֆոնդերը հանելու հիման վրա արդյունաբերության ճյուղերի հիմնական ֆոնդերի նորացումը տնտեսական կարևորագույն, հրատապ խնդիր է: Դրա իրագործումը չպետք է վերածվի կամպանիայի, միանվագ միջոցառման, այլ պետք է իրականացվի սիստեմատիկաբար և հաշվի առնելով արդյունաբերության յուրաքանչյուր ճյուղի կոնկրետ պայմանները: Այդ ուղղությամբ աշխատանքներ կատարելիս մենք պետք է գլխավոր նպատակը համարենք աշխատանքի արտադրողականության և թողարկվող արտադրանքի որակի կտրուկ բարձրացումը: Պետք է կանոն դարձնել, որ արդյունաբերական ձեռնարկություններում արտադրության ծավալների ողջ հավելաճը ապահովվի աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին՝ կրճատելով աշխատողների թիվը:

Յուրաքանչյուր քաղկոմ ու շրջկոմ, յուրաքանչյուր կուսակցական կազմակերպություն պետք է հետևի, որ այդ պահանջը անշեղորեն կենսագործվի: Անհրաժեշտ է խստիվ հաշիվ պահանջել այն ղեկավարներից, ովքեր սահմանված աշխատանքային լիմիտներից բարձր անձնակազմ են պահում, հետևողականորեն հասնել աշխատատեղի կազմակերպման բարելավման, բոլոր պայմաններն ստեղծել յուրաքանչյուր աշխատողի բարձրարտադրողական և բարձրորակ աշխատանքի համար:

Լավ կշռադատված, հետևողական ինվեստիցիոն քաղաքականությունը ագրոարդյունաբերական ողջ համալիրի արդյունավետության հետագա բարձրացման գրավականն է: Չնայած էկոնոմիկայի այդ հատվածում արված զգալի կապիտալ ներդրումներին, դրանց հատույցը առայժմ բարձր չէ: Նման վիճակը բազմաթիվ պատճառների հետևանք է: Բայց գլխավորը կուսակցական կազմակերպությունների, տնտեսական կադրերի անբավարար ուշադրությունն է էկոնոմիկայի գյուղատնտեսական հատվածը զարգացման ինտենսիվ ռելսերի փոխադրելու հարցերին:

Քիչ միջոցներ են հատկացվում վերամշակող արդյունաբերության ճյուղերի տեխնիկական վերազինմանը: Բացի դրանից, առանձին մինիստրություններ ու գերատեսչություններ չունեն ճյուղի տեխնիկական վերազինման և ձեռնարկությունների վերակառուցման հստակ պլաններ ու երկարաժամկետ ծրագրեր:

Ագրոարդյունաբերական համալիրի բնագավառում ինվեստիցիոն քաղաքականության մեջ մենք պետք է ճիշտ որոշենք առաջնայնությունը: Վերցնենք, օրինակի համար, հողաբարելավումը: Երբեմն մենք կապիտալ ներդրումներ ենք կատարում այնպիսի հողերում, որոնցից այնքան էլ արագ հատույց չենք ստանում մի շարք օբյեկտիվ պատճառներով: Բայց ահա ձեռքի տակ եղած ռեզերվները գործի չենք դնում:

Մենք պետք է մշակենք սելեկցիոն ու ցեղաբուծական աշխատանքի և անասունների ցեղական կազմի բարելավման, կերարտադրության ծավալների մեծացման ու որակի բարձրացման, սպիտակուցի խնդրի լուծման, դրա հիման վրա անասնապահության մթերատվության բարձրացման, մսի, կաթի, թռչնի վաճառքի ծավալների ավելացման կոնկրետ ծրագիր (այդ հարցի առթիվ Կենտկոմն արդեն համապատասխան հանձնարարություն է տվել ագրոարդյունաբերական համալիրի հանձնաժողովին):

Սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու, ամբողջ ժողովրդական տնտեսության շեշտակի վերելքն ապահովելու մեծ խնդիրների իրագործումն անխզելիորեն կապված է կապիտալ շինարարության մեջ գործերի արմատական բարելավման հետ: Այս ոլորտը միշտ էլ եղել է մեր առանձնակի ուշադրության և հոգածության առարկան: Վերջին ժամանակներս մենք այդտեղ քիչ բան չենք արել և քիչ արդյունքներ էլ ձեռք չենք բերել: Չնայած դրան, այդ բնագավառում մենք առայժմ արմատական փոփոխությունների չենք հասել: Այստեղ պրոբլեմներն ու թերություններն առանձնապես ցայտուն են զգացվում գիտատեխնիկական առաջընթացի արագացման դիրքերից:

Արտադրական կարողությունների և օբյեկտների գործարկման պլանը սիստեմատիկաբար չկատարելը հանգեցրել է չտեղակայված սարքավորումների պաշարների զգալի կուտակման:

Չնայած շինարարական արտադրության ֆոնդատարության բարձրացմանը և աշխատանքի մեքենազինվածության բուռն աճին, տակավին պահպանվում են կոմպլեքսային մեքենայացման ցածր մակարդակով տեխնոլոգիական պրոցեսների կիրառումը, շինարարական մեքենաների հավաքակազմի ոչ կոմպլեքսայնությունը, փոքր մեքենայացման միջոցների պակասը, ձեռքի աշխատանքի զգալի բաժինը: Շինարարական կազմակերպություններում բավական բարձր է ծառայության ժամկետն անցած տեխնիկայի տեսակարար կշիռը: Աճում են դրա հիմնական նորոգման վրա կատարվող ծախսումները: Շինարարական ինդուստրիայի և շինանյութերի արդյունաբերության ձեռնարկությունների մեծ մասն իրենից ներկայացնում է բարոյապես հնացած և ֆիզիկապես մաշված սարքավորումներով բանող պոլիգոնային տիպի արտադրություն:

Կապիտալ շինարարության համար իսկական պատուհաս է շարունակում մնալ անավարտ շինարարությունը, որի աճը հանգեցնում է ռեսուրսների սառեցման, ազգային եկամտի կուտակումների մասի նվազման և սահմանափակում է արտադրության մասշտաբների ընդլայնման հնարավորությունները:

Ամբողջ շինարարական գործի բարելավման ասպարեզում վճռական դերը պատկանում է նախագծմանը՝ որպես գիտության ու արտադրության միջև գլխավոր կապող օղակի: Հարկ է նշել, որ նախագծերի և որոնողական աշխատանքների որակի բարձրացման նպատակով ձեռնարկվող միջոցները խիստ անբավարար են: Հաճախ նախագծեր են թողարկվում այն օբյեկտների համար, որոնց շինարարությունն առաջնահերթ անհրաժեշտություն չունի: Դրա հետևանքով չարդարացված կերպով վատնվում են միջոցները:

Շինարարության ժամկետների կրճատումը, անավարտ շինարարության և չտեղակայված սարքավորումների (որոնք կապիտալ ներդրումների քաղաքականության կարևորագույն կողմերից են) ծավալների նվազեցումը ուղղակի կապված են կապիտալ ներդրումների պլանավորումը կատարելագործելու հետ, որով պետք է ակտիվորեն զբաղվեն հանրապետության կառավարությունն ու պետպլանը: Հանրապետության Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ ընկ. Հ. Հայրապետյանը, պետշինի նախագահ ընկ. Լ. Բեգլարյանը, մինիստրներ ընկ. ընկ. Է. Ավագյանը, Գ. Թադևոսյանը, Լ. Ղազարյանը,



ինչպես նաև ընկ. ընկ. Հ. Ղամբարյանը (հատուկմոնտաժշինի գլխավոր վարչություն) և Մ. Ալահվերդյանը (պետպլան), շինարարության մյուս ղեկավարները, պատվիրատուները պետք է արմատապես վերանայեն իրենց աշխատանքը ՍՄԿԿ Կենտկոմի պահանջների լույսի ներքո և համատեղ ջանքերով շտկեն կապիտալ շինարարության իրավիճակը: Կուսակցական կոմիտեներն ու կազմակերպություններն իրենց հերթին պետք է ակտիվորեն ներգրավվեն այդ աշխատանքում, մոբիլիզացնեն աշխատավորական կոլեկտիվների ջանքերը:

Ինչպես իրավամբ նշվեց ՍՄԿԿ Կենտկոմում կայացած խորհրդակցությունում, արտադրանքի որակը գիտատեխնիկական առաջընթացի, արտադրության կազմակերպման, աշխատանքի կուլտուրայի և կարգապահության մակարդակի ամենաօբյեկտիվ ու ընդհանրացնող ցուցանիշն է: Դուք գիտեք, թե ինչպես ենք վերջին տասնամյակում մենք քայլ առ քայլ հասել թողարկվող արտադրանքի որակական մակարդակի բարձրացման: Եվ այդուհանդերձ պետք է ուղղակի ասել, որ այդ ուղղությամբ ձեռք բերածը մեզ ոչ մի կերպ չի կարող բավարարել: Չէ՞ որ այսօրվա դրությամբ հանրապետության արտադրանքի միայն մեկ հինգերորդ մասին է որականիշ շնորհվել: Չնայած Կենտկոմի բազմիցս պահանջներին, մինչև հիմա էլ մեզ մոտ քիչ է այն ձեռնարկությունների թիվը, որոնք չեն յուրացրել որակի բարձր կատեգորիայի արտադրանքի թողարկումը:

Չափազանց լուրջ է դրված նաև ժողովրդական սպառման ապրանքների որակի բարելավման հարցը: Ցավոք, այստեղ դեռևս շատ դժգոհություններ կան բնակչության կողմից: Լուրջ բողոքներ է, օրինակ, հարուցում թեթև և տեղական արդյունաբերության մինիստրությունների ձեռնարկությունների թողարկած կարվածքեղենի որակը:

Ոչ ստանդարտ, ցածրորակ արտադրանքի թողարկման և իրացման հիմնական պատճառները կոնստրուկտիվ թերմշակումներն են, տեխնոլոգիական պրոցեսների խախտումները, բանվորների ու ինժեներատեխնիկական աշխատողների ցածր որակավորումը, կատարողական ցածր կարգապահությունը, պատշաճ պատասխանատվության ու բարեխղճության բացակայությունը: Այստեղ էլ կուսակցական կազմակերպությունները պետք է ամենօրյա, տքնաջան աշխատանք կատարեն այդ թերությունները վերացնելու, թողարկվող արտադրանքի տեխնիկատնտեսական ցուցանիշները, դրա որակը համակողմանիորեն և անընդհատ բարձրացնելու նպատակով: Չէ՞ որ դա, ինչպես իրավամբ նշվեց խորհրդակցությունում, «...ո՛չ միայն պրոֆեսիոնալ, այլև ազգային հպարտության առարկա է»:

Մենք պետք է ամենավճռական պայքար մղենք վատնողության ու կորուստների դեմ: Ընդ որում, այդ աշխատանքը չպետք է հախուռն բնույթ կրի, այլ լինի մշտական, նպատակասլաց ու կոմպլեքսային: Այդ ուղղությամբ որոշակի նվաճումներ մենք ունենք, բայց այսօր հարկ է անդրադառնալ դեռևս չլուծված հարցերին ու թերություններին, որպեսզի ավելի պարզորոշ պատկերացում կազմվի այդ բնագավառի այն պրոբլեմների մասին, որոնցով մենք գնում ենք դեպի 12-րդ հնգամյակ:

Վառելիքի և էներգիայի գերածախսը հաճախ տեղի է ունենում հանրապետության մի շարք ձեռնարկությունների ու կազմակերպությունների ղեկավարների անտնտեսվարության ու անպատասխանատվության պատճառով, ղեկավարներ, որոնք չեն ապահովում արտադրության կատարելագործման կազմակերպական ու տեխնիկական միջոցառումների ժամանակին իրականացումը:

Լիովին չեն օգտագործվում երկրորդային էներգառեսուրսների ռացիոնալ օգտագործման հաշվին վառելիքի ու էներգիայի խնայողության նշանակալի լրացուցիչ ռեզերվները, ինչը, առաջին հերթին, պայմանավորված է դրանց մշակման և օգտագործման համար նախատեսված նորագույն տեխնիկայի ու տեխնոլոգիայի անբավարար ներդրմամբ:

Արտադրական կյանքի կարևորագույն օրենքներից մեկը պետք է դառնա խստիվ կիրառվող էներգախնայողական քաղաքականությունը: Դրա իրագործ-

ման համար մղվող պայքարի լավ օրինակ պետք է ցույց տան նախ և առաջ իրենք՝ էներգետիկները։ «Հայգլխէներգո», Հայաստանի ատոմային էլեկտրակայանը պետք է ներգործուն միջոցներ ձեռնարկեն էներգահամակարգի աշխատանքի արդյունավետությունը արմատապես բարձրացնելու համար։

Ռեսուրսախնայողական քաղաքականությունն արդյունավետ իրականացնելու համար հասունացել է կոորդինացնող ֆունկցիաներով օժտված միասնական նախագծահետազոտական կազմակերպության անհրաժեշտությունը հանրապետության քաղաքների, ավանների ու ձեռնարկությունների, ջրի, ջերմության և էլեկտրականության մատակարարման կոմպլեքսային ուսումնասիրման ու նախագծման նպատակով։

Արտադրության մեջ լիովին չեն օգտագործվում թողարկվող արտադրանքի նյութատարությունը նվազեցնելու, ձևակազմավորման առաջավոր մեթոդները, խնայողական պրոֆիլները և թեթևացված կոնստրուկցիաները լայնորեն կիրառելու հնարավորությունները։ Ձեռնարկություններ կառուցելիս, գործող ձեռնարկությունները վերակառուցելիս և արդիականացնելիս անբավարար ուշադրություն է նվիրվում սակավաթափոն և անթափոն տեխնոլոգիաների, ռեսուրսախնայողական տեխնիկայի, հումքի և նյութերի բոլոր տեսակների կոմպլեքսային վերամշակման արմատավորմանը։ Անչափ ցածր է բոլոր թափոնների հավաքումը և օգտագործումը կազմակերպելու, դրանք արտադրության մեջ ներգրավելու աշխատանքների մակարդակը։ Շատ միավորումների և ձեռնարկությունների ղեկավարներ շարունակում են երկրորդային ռեսուրսներին վերաբերվել որպես թափահումքի, գլխավորապես կողմնորոշվելով դեպի նախնական նյութերի ստացումը։

Խոսելով կորուստների մասին՝ մենք սովորաբար նկատի ենք ունենում արտադրության ոլորտը, մինչդեռ դրանք քիչ չեն նաև սպառման ոլորտում։ Սննդամթերքի զգալի կորուստներ կան հանրապետության բնակչության շրջանում, և հիմնական պատճառը դրանց ցածր որակն է։ Մենք լուրջ նշանակություն ենք տալիս սննդամթերքների կորուստները նվազեցնելու հարցին։ Եվ այստեղ սննդարդյունաբերության, պտուղբանջարեղենի, առևտրի մինիստրությունները, Հայկոոպը պետք է արմատապես վերակառուցեն իրենց աշխատանքը։

Այժմ չկա ավելի հրատապ խնդիր, քան վառելիքի, հումքի, նյութերի տնտեսումը, պայքարը կորուստների, վատնողության և անտնտեսվարության դեմ։ Խնայողություն և դարձյալ խնայողություն. ահա թե ինչը պետք է նորմա դառնա ամենուրեք և ամեն ինչում։ Ռեսուրսախնայողությունը պետք է լինի ինվեստիցիոն քաղաքականության գլխավոր չափանիշներից մեկը։

Գիտատեխնիկական առաջընթացի արագացման համար ծավալված պայքարի առաջավոր գիծը, ինչպես նշվեց խորհրդակցությունում, անցնում է գիտության միջով։

Հանրահայտ են մեր գիտնականների ձեռք բերած հաջողությունները գիտելիքների և տեխնիկական առաջընթացի տարբեր ոլորտներում։ Եվ դժվար է գերագնահատել այն ավանդը, որ նրանք ներդնում են հանրապետության էկոնոմիկայի առաջընթացի գործում, էկոնոմիկան զարգացման գերազանցապես ինտենսիվ ուղի փոխադրելու, բնական ռեսուրսները յուրացնելու ասպարեզում։ Սակայն ձեռք բերվածը գնահատելով կուսակցության պահանջների բարձունքից, անհրաժեշտ է նշել, որ հանրապետության գիտական կազմակերպությունների գործունեությունը բնավ էլ լրիվ չափով չի նպատակամղված հայրենական գիտության առջև դրված արմատական խնդրի լուծմանը— գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը՝ հանրապետության գիտական բոլոր կոլեկտիվների հետազոտությունների ու մշակումների ինտենսիվացման հիման վրա։

Առաջնային նշանակություն պետք է տալ հիմնարար գիտության զարգացմանը, որի կարևորագույն խնդիրներից մեկն է ելքեր բացել դեպի նոր բնագավառներ, դեպի արդյունավետության նոր մակարդակ, հանդես գալ որպես համարձակ գաղափարներ հղացող, ստեղծել տեխնիկայի և տեխնոլոգիայի սկզբունքորեն նոր տեսակների տեսական հիմքեր։



Այդ գործում շատ բան պետք է անեն հանրապետության գլխավոր գիտական կենտրոնը՝ գիտությունների ակադեմիան, նրա բաժանմունքներն ու գիտական հիմնարկները։ Նրանք իրոք պետք է դառնան գործուն մարմիններ, որոնք ուղղություն տան հանրապետության գիտական հիմնարկների գործունեությանը և կոորդինացնեն այն, սահմանեն միասնական գիտատեխնիկական քաղաքականություն գիտությունների իրենց բնագավառներում և այդ գործում դրսևորեն կուսակցական բարձր պատասխանատվություն ու պետական մոտեցում։ Առայժմ գիտական շատ հիմնարկների կոլեկտիվների ջանքերը հաճախ ուղղված են մասնակի, լոկալ, թեկուզև շատ կարևոր խնդիրների և ոչ թե ամբողջությամբ վերցրած կոմպլեքսային պրոբլեմի լուծմանը։

Մեզ առանձնապես տագնապ է պատճառում նկատվող հապաղումը հիմնարար և կիրառական հետազոտությունների մի շարք կարևորագույն ուղղություններում։ Թույլ տեմպերով է աճում անցկացվող գիտական հետազոտությունների արդյունավետությունը։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումներում նշվել է, որ առայժմ անբավարար է ապահովվում գիտական մշակումների արդյունքները մինչև ինժեներատեխնիկական, գործնական կիրառման համար պիտանի լուծումների հասցնելը, գիտության և տեխնիկայի նվաճումները դանդաղ են ներդրվում ժողովրդական տնտեսության մեջ։

Առանձնահատուկ պահանջներ պետք է ներկայացվեն ճյուղային գիտահետազոտական և նախագծային ինստիտուտներին ու կազմակերպություններին, որոնցից շատերի գործունեության վերջնական արդյունքները շատ աննշան են արտահայտվում ճյուղի գիտատեխնիկական նկարագրում։ Որքան էլ տարօրինակ է, մեր հանրապետությունում նույնպես բազմաթիվ ճյուղային գիտական կազմակերպություններ կտրված են արտադրությունից։

Մի շարք ակադեմիական և ճյուղային ինստիտուտների առկայությամբ հանդերձ, գյուղատնտեսության ճյուղերում և ագրոարդյունաբերական ողջ կոմպլեքսում տեխնիկական առաջադիմությունն ընթանում է չարդարացված կերպով դանդաղ։ Դա դրսևորվում է, օրինակ, այնպիսի խնդիրների լուծման ժամանակ, ինչպիսին են՝ սելեկցիոն-տոհմաբուծական աշխատանքի և հոտի վերարտադրության կատարելագործումն արդյունաբերական և ավանդական տեխնոլոգիաների պայմաններում, տեղական սելեկցիայի անասունների մթերատվության բարձրացումը, պայքարը գյուղատնտեսական կենդանիների հիվանդությունների դեմ, կերարտադրությունն ու կերի պատրաստումը, մարգագետնաարոտավայրային տնտեսությունների ինտենսիվացումը, գյուղատնտեսական կուլտուրաների աճեցման ինդուստրիալ տեխնոլոգիաների ներդրումը, արդյունաբերական բուսաբուծության համակարգի զարգացումը, նոր տեխնոլոգիական սիստեմների ու ագրոտեխնիկական եղանակների արմատավորումը։ Ոչ բավարար արդյունավետությամբ են տարվում հացահատիկային, բանջարանոցային, կերային կուլտուրաների, խաղողի, պտղի նոր բարձրբերքատու սորտերի ստացման, արտադրության մեջ հումքի վերամշակման նոր անթափոն տեխնոլոգիաների, հողերի ոռոգման, մելիորացման առաջավոր եղանակների արմատավորման աշխատանքները։

Զեկուցման մեջ բերվում են հողագործության, ջրային պրոբլեմների և հիդրոտեխնիկայի գիտահետազոտական ինստիտուտների ոչ արդյունավետ աշխատանքի օրինակներ, մասնավորապես գյուղատնտեսության համար կարևոր հարցերի մշակումների, ջրային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման գիտական հիմունքների, մշակվող կուլտուրաների ոռոգման տեխնոլոգիայի, ողողահարման դեմ պայքարի կատարելագործման ուղղությամբ և այլն։

Մանրէակենսաբանության, ագրոքիմիական պրոբլեմների և հիդրոպոնիկայի, անասնապահության և կերարտադրության, խաղողագործության, գինեգործության ու պտղաբուծության գիտահետազոտական ինստիտուտները տարիներ շարունակ հետազոտություններ են կատարում կերի արտադրության և հարստացման կենսատեխնոլոգիական եղանակների բնագավառում, սակայն մինչև օրս էլ առաջարկություններ չկան այդ աշխատանքների արդյունքների լայն

արմատավորման ուղղությամբ։ Առաջվա նման չափազանց վատ են օգտագործվում «Լիգին» գիտաարտադրական միավորման հնարավորությունները։

Մեծ հույսեր էին դրվում խաղողի նոր բարձրբերքատու և ցրտադիմացկուն սորտերի բուծման նպատակով կատարվող աշխատանքների վրա։ Սակայն վերջին տարիներին դաժան փորձությունները նկատելիորեն սասանեցին այդ հույսերը։ Հանրապետության խաղողագործները չեն բաժանում սելեկցիոներ գիտնականների լավատեսությունը խաղողի վազի կենսադիմացկունության հարցում։ Այստեղ դեռ բավականին անելիքներ ունեն մեր ինստիտուտները։

Տեղերում բավականին շատ է հետաքրքրական փորձը։ Օրինակ՝ Ախուրյանի շրջանի Ազատան գյուղում ահա արդեն երրորդ տարին է, ինչ կաղամբն աճեցնում են ոչ թե սածիլման, այլ ցանման եղանակով։ Այդ փորձը հետաքրքրական է, լավ արդյունքներ է տալիս, բայց մեր ինստիտուտները չեն ուսումնասիրում և չեն մշակում համապատասխան հանձնարարականներ։

Հանրապետության գիտական հիմնարկների աշխատանքի արդյունավետությունը բարձրացնելու, դրանց ջանքերը հետազոտությունների կարևորագույն առաջնային ուղղությունների վրա կենտրոնացնելու համար հրամայական անհրաժեշտություն է դառնում գիտության կառավարման կատարելագործումը։ Հարկավոր է միջոցներ ձեռնարկել գիտության ու գիտատեխնիկական առաջընթացի կառավարման, միջգերատեսչական արգելքների հաղթահարման նկատմամբ կոմպլեքսային մոտեցում ապահովելու նպատակով։ Այսպես, օրինակ, ուշադրության առնելով այն հանգամանքը, որ հանրապետությունում բավականաչափ գիտական ու տեխնիկական պոտենցիալ է կուտակվել հաստոցաշինության, սարքաշինության, էլեկտրոնային ու ռադիոտեխնիկական արդյունաբերության բնագավառներում, նպատակահարմար է քննարկել ռեգիոնալ ճյուղային գիտատեխնիկական կենտրոններ կազմակերպելու խնդիրը, որոնց ֆունկցիաների մեջ կմտնեն ո՛չ միայն բուն ճյուղերի գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու հարցերը, այլև հանրապետական գիտատեխնիկական պրոբլեմների լուծումը։

Հանրապետությունում գիտատեխնիկական առաջընթացի արագացման կարևոր ռեզերվ է բուհական գիտությունը, որի պոտենցիալն անբավարար է օգտագործվում։ Այստեղ ևս հանրապետության բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությունը, բուհերի ռեկտորատներն ու կուսակցական կազմակերպությունները պետք է լուրջ աշխատանք կատարեն հետազոտությունների և մշակումների արդյունավետությունն ու արգասաբերությունը բարձրացնելու համար։

Տագնապ է հարուցում հանրապետության գիտական և գիտամանկավարժական կադրերի ընդհանուր թվում գիտական աստիճաններ ունեցող անձանց տեսակարար կշիռը նվազելու, գիտական հիմնարկների և բուհերի կոլեկտիվների ծերանալու նկատվող պրոցեսը։ Տակավին ցածր է ասպիրանտուրայի արդյունավետությունը։ Բարեհաջող չէ ասպիրանտուրայում ընդունելության վիճակը։ Գիտական կադրերի պատրաստման գործում տիրող նման դրությունը հետևանք է այն բանի, որ հանրապետությունում գիտական և գիտամանկավարժական կադրերի նորացման մեխանիզմը ոչ բավարար արդյունավետությամբ է գործում։

Հայկական ՍՍՀ պետպլանը, գիտությունների ակադեմիան, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությունը, մյուս մինիստրություններն ու գերատեսչությունները, Մինիստրների խորհրդի նախագահության գիտական ու գիտամանկավարժական կադրերի պատրաստումը կոորդինացնող հանձնաժողովը պետք է արագացնեն ըստ գիտության ճյուղերի կադրերի կարիքը ճշտիվ որոշելու, գիտատեխնիկական առաջընթացի պահանջներին, ժողովրդական տնտեսության զարգացման և հանրապետության գիտական մասնագիտացման հեռանկարներին համապատասխան նրանց պատրաստման հեռանկարային պլանների մշակման և իրականացման մասին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հանձնարարության կատարումը։

Գիտատեխնիկական առաջընթացի արագացման ասպարեզում լուրջ խնդիրներ են դրված բարձրագույն դպրոցի առջև։ Վերջին տասը տարվա ընթացքում Հայաստանի ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթությամբ մասնագետների թիվն ավելանում էր բանվորների, կոլտնտեսականների ու ծառայողների ընդհանուր թվի աճի տեմպերը զգալիորեն գերազանցող տեմպերով։ Ներկայումս մասնագետներով հանրապետության ժողովրդական տնտեսության հագեցվածության մակարդակը բավականաչափ բարձր է փաստորեն բոլոր մասնագիտությունների գծով։



Դրա հետ մեկտեղ բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթությամբ մասնագետների պատրաստման և օգտագործման գործում լուրջ թերություններ կան։ Մասնագետների պատրաստման պլանը դեռևս ոչ լրիվն է համապատասխանում ժողովրդական տնտեսության ճյուղերի իրական պահանջմունքներին՝ նկատի առնելով գիտատեխնիկական ու սոցիալական առաջադիմության հեռանկարները։

Հատուկ ուշադրություն է պահանջվում ղեկավար աշխատողների ու մասնագետների որակավորումը բարձրացնելու գործը։ Հանրապետությունում այդ ասպարեզում իրականացվող միջոցառումները սակավարդյունավետ են և պահանջում են կառավարության եռանդուն միջամտությունը. պետք է բարձրացնել կադրերի պատրաստման մակարդակը, այդ կարևոր գործում ազատվել ձևականությունից, ցուցադրականությունից։

Գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու գործում կարևոր նշանակություն ունի արտադրության և աշխատանքի կատարելագործումը։ Դրա իրականացումը պայմանավորված է հարցերի մի ամբողջ կոմպլեքսով՝ սկսած բանվորական արժանի հերթափոխ պատրաստելուց մինչև աշխատանքի կազմակերպման ու խթանման առաջավոր ձևերի օգտագործման արդյունավետության զարգացումն ու բարձրացումը, որտեղ մենք դեռևս էական քիչ թերություններ ու վրիպումներ չունենք։

Որակյալ բանվորական կադրերի պատրաստման գործում եղած թերությունները սկզբունքային գնահատական ստացան Հայաստանի կոմկուսի Կենտկոմի նախորդ պլենումներում, «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ։ Նշված թերությունների պատճառների ուսումնասիրումը ցույց տվեց, որ դրանց հիմքում ընկած է բազային մինիստրությունների, գերատեսչությունների, արտադրական միավորումների ու ձեռնարկությունների թույլ փոխգործողությունը հանրապետության պրոֆտեխկրթության սիստեմի հետ։

Առանձնակի հրատապություն է ձեռք բերում ինտենսիվացման ռելսերի վրա արտադրության փոխադրվելու առնչությամբ վերազինվող հիմնական արտադրության պահանջներին բանվորական կադրերի պատրաստման պայմանների դինամիկ համապատասխանությունը պահպանելու պրոբլեմը։

Անհրաժեշտ է հետևողականորեն բարելավել բանվորական կադրերի պատրաստման գործը անմիջականորեն արտադրությունում։ Մեզ չի կարող չանհանգստացնել այն հանգամանքը, որ վերջին տարիներին նվազել է արտադրությունում պատրաստված բանվորների թիվը, ինչպես նաև դասընթացային ուսուցում անցած բանվորների տեսակարար կշիռը։

Պակաս կարևոր չէ աշխատանքային ռեսուրսների արդյունավետ օգտագործման, աշխատանքի կազմակերպման ու խթանման առաջավոր ձևերի արմատավորման խնդիրը։ Արդյունաբերության մեջ տակավին դանդաղ տեմպերով են բրիգադներ ստեղծվում։ Լուրջ թերություն պետք է համարել տնտհաշվարկի պայմաններում աշխատող բրիգադների փոքր քանակը, խիստ անբավարար է տարվում դրանք կապալի փոխադրելու աշխատանքը։ Վատ է վիճակն աշխատանքի կազմակերպման բրիգադային ձևի առաջավոր փորձի ուսումնասիրման ու տարածման գործում։ Այդ բոլոր թերությունները բացասաբար են անդրադառնում նրանց աշխատանքի արդյունավետության վրա։

Այժմ կուսակցության համագումարի շեմին, երբ ձևավորվում են հեռանկարային ծրագրային փաստաթղթերը, մշակվում է տնտեսական ու սոցիա-

սակցական ներգործության իրենց ամբողջ ուժով հաստատելու ստեղծագործական աշխատանքի մթնոլորտ, լայն ասպարեզ բացելու բանվորների, կոլտնտեսականների, մտավորականության նախաձեռնության, տաղանդի, վարպետության համար։ Նրանք պետք է ղեկավար կադրերի ուշադրությունը բևեռեն գիտատեխնիկական առաջընթացի արագացման վրա՝ որպես կուսակցության երկարաժամկետ քաղաքական գծի, բառ ամենալայն իմաստով սոցիալ-տնտեսական, գիտատեխնիկական և գաղափարադաստիարակչական պրոբլեմների նկատմամբ ցուցաբերվող այժմեական մոտեցումները, խորացնեն կատարվող վերափոխումների էության մարդկանց կողմից ընկալելու կարողությունը, ամրապնդեն պահանջկոտության, ինքնաքննադատության և գործարարության ոգին։ Անհրաժեշտ է վճռականորեն ձերբազատվել պարադայնությունից, նիստամոլությունից, թղթաբանությունից, կուսակցական ամուր պատնեշ կանգնեցնել ամեն կարգի հետամնացության, պաշտպանողականության, գերատեսչականության և տեղայնության դրսևորումների դեմ։ Կարևոր է ուշադրություն նվիրել ետ մնացող տեղամասերի ամրապնդմանը, այնպիսի կադրերի ընտրությանն ու առաջքաշմանը, որոնք ընդունակ լինեն նոր պայմաններում աշխատելու լիակատար հասունցով, հաջողությամբ իրագործելու կուսակցության որոշումները, բարելավելու կադրերի պատրաստումն ու վերապատրաստումը։

Ահա հիմնականում այն կարևորագույն հարցերը, որոնք իրենց ամենօրյա գործունեության ընթացքում պետք է լուծեն կուսակցական կազմակերպությունները, լուծեն հետևողական, հաստատակամ, գործնականորեն։

Սովետական հասարակության առջև դրված նոր մասշտաբային խնդիրների կատարումը գործունեության լայն ասպարեզ է բացում նաև գաղափարախոսական, պրոպագանդիստական աշխատանքի առջև, մամուլի, ռադիոյի և հեռուստատեսության առջև։ Խնդիրն այն է, որպեսզի «մարտի հանվի» գաղափարախոսական միջոցների ողջ զինանոցը՝ ապահովելով դրանց հստակ փոխգործողությունն ու բարձրարդյունավետությունը։ Անհրաժեշտ է, որպեսզի մամուլը, հեռուստատեսությունը, ռադիոն, պրոպագանդայի մյուս օղակները անհաշտ պայքար ծավալեն մտահավարման հնացած ստերեոտիպների դեմ, եռանդագին նպաստեն արտադրության կառավարման, գիտության և տեխնիկայի զարգացման, տնտեսության բոլոր ճյուղերի, հասարակության կյանքի բոլոր ոլորտների արմատական վերափոխման ասպարեզներում ի հայտ եկած աչքի ընկնող նորույթների արագ ու լայն ներդրմանը պրակտիկայում, սիստեմատիկաբար լուսաբանեն կուսակցական կազմակերպությունների բազմաբեղուն աշխատանքը, որը նպատակամղված է հանրային արտադրության ինտենսիֆիկացմանը, կարգուկանոնի, կարգապահության և կազմակերպվածության ամրապնդմանը, կուսակցության նոր պահանջների ոգով հասարակական գիտակցության վերափոխմանը։

ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումի գծի հետևողական իրականացումը կենսականորեն կարևոր գործ է, որը համապատասխանում է ողջ սովետական հասարակության շահերին։ Երկրի սոցիալ-տնտեսական զարգացման էական արագացման հասնելու՝ կուսակցության կողմից առաջադրված պատմական խնդրի իրականացումը յուրաքանչյուրից պահանջում է մտքի մեծ թափ, լարված աշխատանք, հսկայական մտազգաստություն, գիտակցականություն և կազմակերպվածություն։

Սովետական Հայաստանի կոմունիստները, բոլոր աշխատավորները խորապես գիտակցելով այդ վիթխարի խնդրի կարևորությունը, լի են վճռականությամբ՝ կրկնապատկված եռանդով, ստեղծարար, բարձրարտադրողական աշխատանքով հետևողականորեն իրականացնելու կանխագծումները, արժանավայել դիմավորելու կուսակցության XXVII համագումարը, իրենց ծանրակշիռ ավանդը ներդնելու մեր հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորության հետագա ամրապնդման գործում։ (Բուռն ծափահարություններ)

---

Երևանի կուսակցական
կազմակերպության 80-ամյակի առթիվ

# ՊԱՅՔԱՐԻ ՈՒ ԱՐԱՐՄԱՆ ՈՒՂԻՈՎ

**Լ. ՆԵՐՍԻՍՅԱՆ**
ՀԿԿ Երևանի քաղկոմի առաջին քարտուղար

Կան իրադարձություններ, որոնք առանձնանում են իրենց վիթխարի նշանակությամբ, հասարակական-քաղաքական կյանքում խաղացած իրենց պատմական դերով։ Այդպիսին էր Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության երկրորդ համագումարը, որը, ինչպես ասված է ՍՄԿԿ Կենտկոմի «ՌՍԴԲԿ երկրորդ համագումարի 80-ամյակի մասին» որոշման մեջ, «ավարտեց Վլադիմիր Իլյիչ Լենինի մշակած գաղափարական, քաղաքական և կազմակերպական սկզբունքներով Ռուսաստանի հեղափոխական մարքսիստական կազմակերպությունների միավորման պրոցեսը։ Պատմական ասպարեզ դուրս եկավ նոր տիպի կուսակցություն՝ բանվոր դասակարգի կուսակցությունը, գիտական կոմունիզմի կուսակցությունը, սոցիալիստական հեղափոխության և կոմունիզմի կառուցման կուսակցությունը»։

Լենինյան կուսակցության կազմավորումը շրջադարձային նշանակություն ունեցավ Ռուսաստանի և միջազգային պրոլետարիատի ազատագրական պայքարի գործում։ Բոլշևիկների կուսակցությունը նախապատրաստեց ու գլխավորեց սոցիալիստական մեծ հեղափոխությունը, որը տապալեց բռնության ու ճնշման հին հասարակությունը, հիմնադրեց բովանդակությամբ նոր՝ սոցիալիստական հասարակարգ։

Մարքսիզմի գաղափարները լայն արձագանք գտան նաև Հայաստանում, մասնավորապես Երևանում, XIX դարի վերջին և XX դարի սկզբներին։ Դա պատմական այնպիսի ժամանակաշրջան էր, երբ կապիտալիզմը մտել էր իր զարգացման իմպերիալիստական փուլը և ծայրաստիճան սրել այդ իսկ հասարակությանը յուրահատուկ սոցիալ-տնտեսական հակասությունները։ Դրանք բացառիկ ուժով դրսևորվեցին Ռուսաստանում և հատկապես նրա ծայրամասերում՝ խորանալով ցարիզմի քաղաքական, հոգևոր և ազգային ճնշման ներքո։ Բուրժուակապիտալիստական ատելի կարգերի դեմ հզոր ու անզիջում պայքարի էր ելնում բանվոր դասակարգը, ուժեղանում էին աշխատավոր գյուղացիության հուզումները։ Երկրում լայնորեն տարածվում և խոր արմատներ էին ձգում մարքսիստական գաղափարները։

Պատմությունը բավականաչափ վավերագրեր է պահպանել Երևանի փառավոր հեղափոխական անցյալի, նրա բոլշևիկյան հերոսական ավանդույթների, իրենց ազատության համար ժողովրդական զանգվածների մղած պայքարում ներդրած ավանդի վերաբերյալ։ Այդ ամենը մեր սրտերը լցնում են օրինական հպարտությամբ, Երևանի հեղափոխական սերունդների նկատմամբ երախտագիտության անանց զգացումով։

Հանգամանքների բերումով Երևանը արագորեն մտավ սոցիալ-դեմոկրատական շարժման հորձանուտի մեջ և դարձավ հեղափոխական խմորումների կենտրոններից մեկը։ Եվ միանգամայն օրինաչափ էր, որ այդ պայմաններում,

1901 թվականի վերջերին այստեղ ստեղծվեց առաջին սոցիալ-դեմոկրատական խումբը։ Այն հիմնականում ներառնում էր երկաթուղային դեպոյի և Շուստովի գործարանի բանվորներին։ Այս, ինչպես նաև Ալեքսանդրոպոլի, Ջալալօղլու և Հայաստանի այլ բնակավայրերի սոցիալ-դեմոկրատական խմբերը հարում էին լենինյան իսկրայական ուղղությանը։

ՌՍԴԲԿ կովկասյան երկրամասային կոմիտեն, հետևողականորեն ընթանալով «Իսկրայի» նշած հեղափոխական ուղիով, հսկայական աշխատանք ծավալեց՝ մեծացնելու սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների, կոմիտեների ու խմբերի թիվը, բարձրացնելու դրանց գաղափարական հասունության մակարդակը։ 1903—1904 թվականներին Երևանում նման խմբեր էին գործում երկաթուղային դեպոյում, Սարաջևի կոնյակի գործարանում, արական և իգական գիմնազիաներում։ Դասակարգային սուր պայքարի հորձանուտում աճում էին մարքսիզմի գաղափարներին հավատարիմ հեղափոխական գործիչներ։ Եվ նրանք էլ իրենց հետևից էին տանում աշխատավոր զանգվածներին, գաղափարապես զինում նրանց, ուղղություն տալիս նրանց հեղափոխական ելույթներին։ Հատկանշական է, որ այդ խմբերում ղեկավար դեր էին խաղում ռուսաստանյան հեղափոխական կոփվածքի այն գործիչները, ովքեր անցել էին դասակարգային պայքարի բովով, երկրի խոշոր արդյունաբերական կենտրոններում ձեռք բերել կազմակերպչական-հեղափոխական աշխատանքի հարուստ փորձ։ Վ. Ի. Լենինը բարձր էր գնահատում Կովկասի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների դերն ու նշանակությունը, նշում նրանց ինտերնացիոնալ բնույթը, տարբեր ազգությունների աշխատավորների շրջանում ծավալած արդյունավետ գործունեությունը։

Երևանի սոցիալ-դեմոկրատական առաջին խմբերում ակտիվ աշխատանք էին տանում տարբեր ազգերի ներկայացուցիչներ Լ. Տեր-Հովսեփյանը, Ա. Մալխասյանը, Գ. Սոկոլովսկին, Ն. Լեժավան, Ս. Ծանտուրիան, Վ. Բորժանսկին և ուրիշներ։ Հասունանում, նոր ուժ էր առնում դասակարգային պայքարը, նրա բարիկադների վրա ամրապնդվում էր ժողովուրդների բարեկամությունը։ Միասնական նպատակը մեկն էր. տապալել ցարական կարգերը, աշխատավոր զանգվածներին ազատագրել սոցիալական և ազգային ամեն տեսակ ճնշումից։

Հայաստանի, այդ թվում Երևանի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների պատմության մեջ, նրանց հեղափոխական պայքարի ծավալման գործում հսկայական դեր խաղաց Ստեփան Շահումյանը։ 1904 թվականի սեպտեմբերին ժամանելով Երևան՝ նա մոտիկից ծանոթացավ մարքսիստական կազմակերպությունների գործունեությանը, խնդիր դրեց վճռական պայքար մղել նացիոնալիզմի դեմ, ամրապնդել ինտերնացիոնալ միասնությունը, հետևողականորեն պաշտպանել աշխատավորության շահերը։ Նշելով սոցիալ-դեմոկրատիայի առաջին հաջողությունները՝ Վ. Ի. Լենինի զինակիցն արտահայտում էր այն հաստատ համոզմունքը, որ Հայաստանի պրոլետարական ու կիսապրոլետարական զանգվածները, ռուս ժողովրդի հետ ուս-ուսի տված, հեղափոխական սոցիալ-դեմոկրատիայի դրոշի ներքո վճռական պայքարի կելնեն ընդդեմ ցարական ինքնակալության։

Երևանի բոլշևիկյան կազմակերպության պատմության կարևոր իրադարձություններից էր համաքաղաքային ընդհանուր ժողովը, որը կայացավ 1905 թվականի մայիսի 12-ին, Շահումյանի ղեկավարությամբ։ Ժողովը հավանություն տվեց կուսակցության II համագումարի որոշումներին, խստագույնս դատապարտեց մենշևիկների օպորտունիստական տակտիկան, որոշեց միավորել սոցիալ-դեմոկրատական խմբերը։ Ընտրվեց մեկ միասնական ղեկավար կենտրոն՝ Երևանի կոմիտեն, որի կազմի մեջ մտան Ա. Մալխասյանը, Գ. Սոկոլովսկին, Կ. Ալավերդովը, Վ. Բորժանսկին, Վ. Նինուաշվիլին և ուրիշներ։ Հետագայում Երևանի կազմակերպության ղեկավար կազմում ներգրավվեցին Ա. Մռավյանը, Մ. Միրաքյանը, Լ. Տեր-Հովսեփյանը, ուրիշ այլ հեղափոխական գործիչներ։

ՌՍԴԲԿ Երևանի կոմիտեի ստեղծումը հսկայական դեր խաղաց ոչ միայն քաղաքի, այլև Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների կազմակեր-



պական ամրապնդման, գաղափարական կոփման, նրանց աշխատանքի աշխուժացման և հեղափոխական շարժման ակտիվացման գործում։ Կոմիտեն հետզհետե իր շուրջն էր համախմբում հեղափոխական ուժերին, գլխավորում գործադուլներն ու ցույցերը։ Երևանի բոլշևիկների, աշխատավորության շրջանում մեծ հեղինակություն էր վայելում Ստեփան Շահումյանը, որին, բնականաբար, քաղաքի բոլշևիկյան կազմակերպությունը, որպես իր ներկայացուցչի, լիազորեց մասնակցելու ՌՍԴԲԿ IV համագումարին։

Երևանի կազմակերպությունը դասակարգային պայքարի ղեկավարման մեծ փորձ ձեռք բերեց ռուսական առաջին հեղափոխության տարիներին։ Նա դուրս եկավ համառուսաստանյան քաղաքական ասպարեզ, դարձավ բոլշևիկյան կուսակցության ակտիվ, մարտական ջոկատներից մեկը։

Այսօր, ութ տասնամյակի բարձունքից հետադարձ հայացք գցելով անցած իրադարձությունների վրա, չի կարելի պարզորոշ չտեսնել այն հսկայական աշխատանքը, որ կատարում էին քաղաքի բոլշևիկյան կազմակերպությունները. արհմիությունների ստեղծում, ընդհատակյա եռանդուն գործունեություն ռեակցիայի մռայլ տարիներին, գործադուլների ղեկավարում հեղափոխական նոր վերելքի ժամանակաշրջանում, հետևողական պայքար պատերազմի, հեղափոխության ու խաղաղության վերաբերյալ լենինյան դրույթների կենսագործման համար և այլն։ Դժվար է թվարկել այն բոլոր գործերը, որ կատարել է Երևանի բոլշևիկյան կազմակերպությունը իր ձևավորման առաջին տարիներին։

Երևանի կազմակերպության հիմնադրման գործին ակտիվորեն մասնակցել են լենինյան գվարդիայի ականավոր ներկայացուցիչներ Ս. Սպանդարյանը, Գ. Աթարբեկյանը, Ս. Ալավերդյանը, Բ. Բորյանը, Արշ. Մելիքյանը, Ա. Կարինյանը։ Հեղափոխության հորձանուտում այնուհետև թրծվեցին ու կոփվեցին նոր սերնդի մարդիկ, ինչպես Ղ. Ղուկասյանը, Ա. Խանջյանը, Ա. Բուդաղյանը և ուրիշներ։ Նրանցից շատերը հետագայում դարձան հանրապետության կուսակցական և պետական ականավոր գործիչներ, իրենց ուժերը, գիտելիքները, կազմակերպչական ողջ տաղանդը նվիրաբերեցին Հայաստանում սոցիալիստական հասարակարգի կառուցմանը։

1917 թվականի հոկտեմբերին «Ավրորա»-ի համազարկերը ցնցեցին բուրժուակալվածատիրական Ռուսաստանի խարխլված հիմքերը։ Իշխանությունը հանձնվեց իր իսկական տերերին՝ բանվորներին ու գյուղացիներին։ Նոր էջ բացվեց մարդկության պատմության մեջ։ Ռուս ազատարար ժողովուրդը մտահոգվեց նաև փոքր ազգերի բախտի ու ճակատագրի համար։ 1920 թվականի նոյեմբերի 29-ին սոցիալիստական հեղափոխությունը հաղթանակեց նաև Հայաստանում։

Հաղթահարելով դաշնակցականների դիմադրությունը՝ ապստամբները 11-րդ կարմիր բանակի զորամասերի հետ միասին շարժվեցին դեպի Երևան։ 1920 թվականի դեկտեմբերի 4-ին քաղաքի վրա ծածանվեց հեղափոխության կարմիր դրոշը։ Երևանը դարձավ Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության մայրաքաղաքը։ Իսկ դեկտեմբերի 6-ին Երևանում կայացած բազմամարդ միտինգում, ողջունելով սովետական իշխանության հաղթանակը Հայաստանում, աշխատավորների ներկայացուցիչները երախտագիտության հեռագիր հղեցին Վ. Ի. Լենինին։ «Խիտ ու կուռ շարքերով,— գրում էին նրանք առաջնորդին,— համախմբվելով կոմունիստական կարմիր դրոշի շուրջը, աշխատավորությունը հանձին Ձեզ, ողջունում է Հոկտեմբերյան հեղափոխության առաջնորդին, հեղափոխություն, որի ալիքները... հասան հեռավոր Հայաստան։ ...Մտնելով խորհրդային հանրապետությունների պրոլետարական ընտանիքի մեջ, մենք հետևում ենք Հոկտեմբերյան հեղափոխության հերոսական օրինակին»։

Հակահեղափոխության դեմ կատաղի գոտեմարտերում պաշտպանելով երիտասարդ սովետական իշխանությունը՝ հանրապետության, այդ թվում և Երևանի կոմունիստները, աշխատավորական զանգվածներն սկսեցին կերտել իրենց նոր կյանքը, հաստատել նոր, սոցիալիստական պետականությունը, լուծել էկոնոմիկայի և մշակույթի զարգացման չափազանց բարդ խնդիրները։

Երևանի կուսակցական կազմակերպությունը, Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի ղեկավարությամբ, անմիջականորեն գլխավորում էր երիտասարդ հանրապետության մայրաքաղաքի աշխատավորների պայքարը, որը ծավալվել էր հանուն նոր ապրելակերպի, հանուն բարօրության ու երջանիկ ապագայի: Նա միաժամանակ օրինակ պետք է ծառայեր հանրապետության մյուս կուսակցական կազմակերպությունների համար:

Նոր կյանքի կառուցումը, սակայն, դյուրին գործ չէր: Թուրքական զավթիչների ասպատակությունների, դաշնակցական կառավարության բախտախնդիր քաղաքականության հետևանքով ծայրահեղ քայքայման էր հասել ինչպես հանրապետության, այնպես էլ մայրաքաղաքի տնտեսությունը: Այն կարգավորելու համար պահանջվում էին անդադրում աշխատանք, անսահման նվիրվածություն, ձեռներեցություն:

Աշխատավորները, բոլշևիկյան կուսակցության անմիջական ղեկավարությամբ և օգնությամբ, կարճ ժամանակահատվածում կարողացան դուրս գալ դժվարին կացությունից, ձեռնամուխ եղան նոր՝ սոցիալիստական կարգերի ամրապնդմանը, նոր գործարանների, կրթության, առողջապահության և մշակույթի օջախների հիմնադրմանը:

Մայրաքաղաքի կուսակցական կազմակերպության կյանքի խոշոր իրադարձությունը եղավ ՀԿ(բ)Կ Երևանի կազմակերպության առաջին կոնֆերանսը, որը տեղի ունեցավ 1921 թվականի հունվարի 16-ին: Կոնֆերանսը հանրագումարի բերեց քաղաքի կուսակցական կազմակերպությունների գործունեության արդյունքները, նշեց նրանց հետագա անելիքները, ընտրեց կուսակցության Երևանի քաղաքային կոմիտեի նոր կազմ: ՀԿ(բ)Կ Երևանի քաղկոմի քարտուղար ընտրվեց Ա. Խանջյանը:

Հանրապետության մայրաքաղաքի կուսակցական կազմակերպության 20-ական թվականների տարեգրությունը պերճախոս վկայություն է այն բանի, թե համախմբող ինչպիսի վիթխարի ուժ է իր մեջ մարմնավորում կուսակցությունը, կազմակերպական, քաղաքական-մասսայական աշխատանքի ինչպիսի մեծ հնարավորություններ ունի նա:

1921 թ. գարնանը Վ. Ի. Լենինի հանձնարարությամբ Երևան է ժամանում Ալեքսանդր Մյասնիկյանը, որն իր հետ բերում է մեծ առաջնորդի հայտնի նամակը՝ ուղղված Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների հանրապետության կոմունիստներին: Մայիսին Երևանում գումարվում է մայրաքաղաքի կուսակցական կազմակերպության և արհեստակցական միությունների միացյալ հանդիսավոր նիստը, որտեղ ընթերցվում է Վ. Ի. Լենինի նամակը:

Հայաստանում սովետական կարգերի հաստատման առաջին տարեդարձի օրը տեղի է ունենում ՀԿ(բ)Կ Երևանի կազմակերպության ակտիվի ժողովը, որտեղ Անդրֆեդերացիայի անհրաժեշտության ու նշանակության մասին զեկուցումով հանդես է գալիս Ալ. Մյասնիկյանը: Կուսակցական ակտիվի ժողովը հավանություն է տալիս Անդրկովկասյան Ֆեդերացիայի ստեղծմանը:

Երևանի քաղաքային կոմիտեն ի սկզբանե մեծ տեղ է հատկացրել կադրերի մարքս-լենինյան ուսուցման գործին: Պրոպագանդիստական կադրեր պատրաստելու նպատակով կուսակցության Երևանի կոմիտեին առընթեր դեռևս 1921 թվականի դեկտեմբերին կազմակերպվում են մշտական գործող քաղաքագիտական երկամյա դասընթացներ: Ըստ էության դրանով Երևանում սկիզբ դրվեց կադրերի քաղաքական ուսուցմանը:

Ժողովրդական տնտեսության վերականգնման տարիներին բազմաբովանդակ ու բազմազան էր Երևանի կուսակցական կազմակերպության գործունեությունը: Այն բխում էր հանրապետության առջև ծառացած տնտեսական ու սոցիալական հրատապ պրոբլեմների ու խնդիրների լուծման անհրաժեշտությունից: Համառ ու քրտնաջան աշխատանքի շնորհիվ այդ շրջանում մայրաքաղաքում կառուցվեցին տասնյակ գործարաններ ու ֆաբրիկաներ, ընդարձակվեցին ու ընդլայնվեցին գործող շատ ձեռնարկություններ:

Էական առաջընթաց կատարվեց նաև մշակույթի, գիտության, արվեստի և գրականության զարգացման ասպարեզում: Սովետական կարգերի հաստատման հենց առաջին տարում՝ 1921 թվականի հունվարի 23-ին, հիմնադրվեց Երևանի ժողովրդական համալսարանը, որը հետագայում վերածվեց պետական համալսարանի: Սովետական Հայաստանի կառավարության հրավերով աշխարհով մեկ ցրված հայ մտավորականներից շատերը տեղափոխվեցին Երևան: Հայ մշակույթի ու գիտության անխոնջ մշակների ջանքերով համալսարանում հաստատվեցին գիտական ու մանկավարժական աշխատանքի լավագույն ավանդույթներ, կրթվեց ու դաստիարակվեց ժողովրդական մտավորականության մի ողջ սերունդ: Երևանն աստիճանաբար դարձավ ազգային մշակույթի գլխավոր կենտրոն:



Հոգևոր կյանքի զարգացմանը, բնակչության կուլտուրական սպասարկման բարելավմանը նպաստում էր նաև կուլտուր-լուսավորական հիմնարկությունների նոր ստեղծվող ցանցը: Դեռևս 1921 թ. հիմնադրվեցին Մատենադարանը, հանրային գրադարանը, պատմության թանգարանը, հետագայում՝ նաև գրականության ու արվեստի, հեղափոխության, Երևանի պատմության և մի շարք այլ թանգարաններ, ակումբներ, թատրոններ, կինոթատրոններ, մասսայական գրադարաններ:

Երևանի ինտենսիվ շինարարության պրոբլեմը տակավին առաջ քաշվեց 20-ական թվականների կեսերին: Մի կողմից՝ բնակչության աճը, մյուս կողմից՝ տնտեսության զարգացման բարձր տեմպերն անհետաձգելի խնդիրներ էին դարձրել քաղաքի վերակառուցումն ու շինարարությունը: Ակադեմիկոս Ալեքսանդր Թամանյանի անվան հետ են կապված հայ նոր ճարտարապետության հիմնադրումն ու զարգացումը, մայրաքաղաք Երևանի նախագծումը, սոցիալիստական քաղաքաշինության արմատավորումը:

Երևանի կուսակցական կազմակերպությունը, ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման գործի ղեկավարմանը զուգընթաց, աստիճանաբար կատարելագործում էր կուսակցական աշխատանքը, կիրառում արտադրության կառավարման և աշխատանքի կազմակերպման նոր ձևեր ու մեթոդներ, նպաստում բանվորական կոլեկտիվների ակտիվության բարձրացմանը: Այդ տարիներին Երևանի կուսակցական կազմակերպությունը մեծ հետևողականություն էր հանդես բերում քաղաքի արդյունաբերության, ամբողջ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման, մարդկանց մեջ աշխատանքի և հանրային սեփականության նկատմամբ սոցիալիստական վերաբերմունքի դաստիարակման, կարգապահության ամրապնդման, աշխատանքի արտադրողականության բարձրացման հարցերի լուծման գործում:

Երևանի կուսակցական կազմակերպությանը միշտ էլ բնորոշ են եղել նախաձեռնությունը, կազմակերպչական ոգին: Ընդունելով առաջին հնգամյա պլանը՝ մայրաքաղաքի կոմունիստները կոչ արեցին բոլոր աշխատավորներին սոցիալիստական մրցություն ծավալել հնգամյա առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար: Այդ տարիներին Երևանի շատ ձեռնարկությունների կոլեկտիվներ բարեկամական կապեր հաստատեցին և սոցիալիստական մրցության մեջ մտան Թբիլիսիի և Բաքվի համանման ձեռնարկությունների կոլեկտիվների հետ:

Նախապատերազմյան հնգամյակի տարիներին, քաղաքի կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ, հսկայական աշխատանք կատարվեց արդյունաբերական ձեռնարկությունների վերազինման, ընդարձակման, դրանք առաջավոր տեխնիկայի հիման վրա խոշոր գործարանների վերածելու համար:

1934 թ. հունվարին ՀԿ(բ)Կ Երևանի կազմակերպության երրորդ կոնֆերանսին տրված զեկուցման մեջ ասված է. «Ներկայումս ունենք Երևանում գործող 26 գործարաններ, որոնք բոլորն էլ հիմնվել են խորհրդային իշխանության օրոք, թերևս բացառություն համարվի միայն «Արարատը», բայց այս գործարանն էլ այնպես է վերակառուցվել, որ նրա նախկին տերերն անգամ դժվար թե այսօրվա «Արարատում» կարողանան ճանաչել Շուստովի նախկին գործարանը»:

Լուծելով տնտեսական, սոցիալ-քաղաքական կարևորագույն շատ խնդիրներ՝ կուսակցության քաղաքային կազմակերպության ղեկավարությամբ Երև-

վանի աշխատավորները նախապատերազմյան հնգամյակների տարիներին ստեղծեցին զարգացած արդյունաբերություն՝ իր էներգետիկ բազայով։ Նրանց ստեղծագործական անձնուրաց աշխատանքով հնգամյակից հնգամյակ փոխվում, նոր տեսք էր ստանում Երևանը։ Արագ տեմպերով մեծանում էր արդյունաբերական պոտենցիալը։ Արդեն 1940 թվականին Երևանի արդյունաբերության համախառն արտադրանքը 1919 թվականի մակարդակը գերազանցեց 36, իսկ էլեկտրաէներգիայի արտադրությունն աճեց ավելի քան 230 անգամ։

Արդյունաբերական Երևանի պատմությունը հարուստ է սովետական ժողովուրդների իսկական եղբայրական օգնության վառ օրինակներով։ Առաջին հնգամյակների տարիներին, երբ մեկը մյուսի ետևից կառուցվում էին նոր գործարաններ ու էլեկտրակայաններ, ճանապարհներ ու բնակելի շենքեր, Երևանի շատ կառույցներ հայտարարվեցին համամիութենական հարվածային։

Ֆաշիստական Գերմանիան ուխտադրուժ հարձակվեց Սովետական Միության վրա, ասպատակեց նրա քաղաքներն ու գյուղերը, ընդհատվեց սովետական ժողովրդի խաղաղ, ստեղծագործ աշխատանքը։ Սկսվեց Հայրենական մեծ պատերազմը։ Ոտքի ելավ ողջ երկիրը, այդ թվում Երևանը։ ՀԿ(բ)Կ Կենտրոնական կոմիտեի ղեկավարությամբ, կուսակցության Երևանի քաղաքային ու շրջանային կոմիտեները, սկզբնական կուսկազմակերպությունները Պաշտպանության պետական կոմիտեի առաջադրած խնդիրները հաջողությամբ լուծելու համար ձեռնամուխ եղան բոլոր հնարավորությունների ու ուժերի մոբիլիզացմանը։ Քաղաքի ողջ աշխատավորության միահամուռ կամքն էր արտահայտում պատերազմի հենց առաջին օրերին Կիրովի անվան գործարանի կոլեկտիվի դիմումը՝ ուղղված սովետական կառավարությանը. «Մենք վստահեցնում ենք Լենինի մեծ կուսակցությանը, սովետական հզոր կառավարությանը, որ կգործադրենք մեր բոլոր ուժերը, մեր բոլոր գիտելիքները և հայրենիքին, կարմիր բանակին, ռազմածովային նավատորմին, կարմիր ավիացիային կտանք այնքան արտադրանք, որքան նրանք կպահանջեն մեզանից»։

Երևանցիները մեծ ավանդ ներդրեցին ֆաշիզմի ջախջախման և սովետական ժողովրդի հաղթանակի ապահովման գործում։ Մայրաքաղաքից ռազմաճակատ մեկնողների առաջին շարքերում էին կոմունիստները։ Պատերազմական թոհ ու բոհի միջով անցան քաղաքի կուսակցական կազմակերպության ղեկավար շատ կադրեր, հասարակական կազմակերպությունների ներկայացուցիչներ, գիտնականներ, սովետական ու տնտեսական ղեկավար աշխատողներ։

Երևանը դարձավ բանակային նոր միավորումների կազմավորման կենտրոն։ Քաղաքի 200 հազար բնակիչներից 47 հազարը զորակոչվեց բանակ՝ պաշտպանելու հայրենիքը։ Փառքի ճանապարհով անցած և Սովետական Միության հերոսի կոչմանն արժանացած հայ մարտիկներից շատերի աշխատանքային ուղին սկսվել է Երևանում։ Նրանցից են գեներալ-լեյտենանտ Սարգիս Մարտիրոսյանը, գեներալ-մայոր Ասքանազ Կարապետյանը, Սերգեյ Բուռնազյանը, Անդրանիկ Մուրադյանը, Սերգեյ Սարխոշևը, Գևորգ Առուստամյանը, Աղվան Բաբայանը, Ջահան Կարախանյանը։ Երևանի Մ. Գորկու անվան դպրոցում է դաստիարակվել Սովետական Միության կրկնակի հերոս Նելսոն Ստեփանյանը։ Հայրենական պատերազմին ակտիվորեն մասնակցելու, հրամանատարության մարտական առաջադրանքները օրինակելիորեն կատարելու համար ավելի քան 10 հազար երևանցիներ արժանացան շքանշանների ու մեդալների։

Ռազմաճակատի աճող պահանջները բավարարելու համար Երևանի կուսակցական կազմակերպությունը ձեռնարկում էր բոլոր միջոցները՝ ստեղծելու նոր արտադրամասեր, մեծացնելու գործողների հնարավորությունները։ Քաղաքի բոլոր չորս շրջաններում կազմակերպվեցին 100-ից ավելի նոր արտադրամասեր, որոնց աշխատանքը գտնվում էր քաղաքի կուսակցական ու սովետական մարմինների ամենօրյա ուշադրության կենտրոնում։ Էապես մեծացավ արդյու-



նաբերական արտադրանքի ծավալը։ Միայն կարի, տրիկոտաժի և կաշվի արտադրության ձեռնարկությունները պատերազմի ժամանակ տարեկան տալիս էին ավելի քան 32 միլիոն ռուբլու արտադրանք, որը մի քանի անգամ գերազանցում էր նախապատերազմական ժամանակաշրջանի մակարդակը։ Քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների թիվն արդեն 1944 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, ավելացավ մեկ քառորդով։

Պատերազմի տարիներին կուսակցության քաղկոմի ընդունած որոշումները վկայում են այն հսկայական և խիստ պատասխանատու գործունեության մասին, որ ծավալել էին քաղաքի կուսկազմակերպությունները։ Բյուրոյի նիստերում և պլենումներում քննարկվել են պատերազմական կյանքի ու թիկունքում աշխատանքի կազմակերպման բազմաթիվ հարցեր։

Պատերազմի ժամանակ մայրաքաղաքի կուսկազմակերպությունները, բնակչությունը մեծ օգնություն ցույց տվեցին երկրի ժամանակավոր օկուպացված շրջաններից էվակուացված ընտանիքներին, նրանց համար ստեղծեցին կյանքի նորմալ պայմաններ և դրանով իսկ ցուցաբերեցին իրենց հայրենասիրությունը, նվիրվածությունը ժողովուրդների բարեկամությանը։

Երևանի կուսակցական կազմակերպությունը չափազանց արգասավոր գործունեություն ծավալեց հետպատերազմյան տարիներին։ 1945 թվականի մայիսի 26-ին տեղի ունեցավ քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների դիրեկտորների և կուսակցական կազմակերպությունների քարտուղարների խորհրդակցություն՝ ապրանքների քաղաքացիական տեսականու արտադրության անցնելու կապակցությամբ։ Քաղկոմը միջոցառումներ մշակեց կարճ ժամկետում վերակառուցելու ձեռնարկությունների աշխատանքը խաղաղ պայմաններին համապատասխան, ամեն կերպ ավելացնելու թողարկվող արտադրանքի քանակը, բարելավելու որակը։ Պետք էր նոր ուժով շարունակել նախապատերազմյան շրջանի այն վերընթացը, որի շնորհիվ Երևանը դառնում էր Միության արդյունաբերական, գիտական ու մշակութային խոշոր կենտրոններից մեկը։ Հայրենական մեծ պատերազմի տարիներին կոմունիստական կուսակցության Կենտկոմի ու սովետական կառավարության որոշմամբ ստեղծվեց Հայաստանի գիտությունների ակադեմիան, որը դարձավ հանրապետության գիտական մտքի կենտրոնը։

Այդ տարիներին աճեց և ամրապնդվեց մայրաքաղաքի կուսակցական կազմակերպությունը։ Երևանի քաղաքային կազմակերպության XIX կոնֆերանսը, որը տեղի ունեցավ 1948 թ. հոկտեմբերին, նշեց, որ հաշվետու ժամանակաշրջանում՝ 1945—1948 թվականներին, քաղաքի կոմունիստների թիվն ավելացել է 8.082-ով և հասել 17.334-ի, իսկ սկզբնական կուսկազմակերպությունների թիվը՝ համապատասխանաբար 428-ից 679-ի։ Կուսակցական կազմակերպությունները գործնական պայքար էին ծավալում արտադրության արդյունավետության բարձրացման, ձեռնարկությունների տեխնիկական վերազինման վերաբերյալ կուսակցության հանձնարարականները կենսագործելու նպատակով։ Ընդ որում, ժողովրդական տնտեսության վերելքն ուղեկցվում էր մայրաքաղաքի աշխատավորության աշխատանքային և քաղաքական ակտիվության հետագա բարձրացմամբ։ Անչափ կարևորվում էր մարդկանց շրջանում տարվող գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքը։

Քաղաքի զարգացման ղեկավար և ուղղություն տվող ուժը նրա կուսակցական կազմակերպությունն է, որի 1.732 սկզբնական կազմակերպություններում այսօր հաշվառման մեջ են շուրջ 76 հազար կոմունիստներ։ Երևանի սոցիալ-տնտեսական և կուլտուրական բուռն զարգացման ընթացքում կուսակցական կազմակերպությունը հիրավի ձեռք է բերել մեծ հեղինակություն ու ազդեցություն, ամրապնդվել կազմակերպչորեն ու քաղաքականապես։ Անուրանալի են նրա ծառայությունները մայրաքաղաքի զարգացման որոշիչ հարցերի առաջադրման, դրանց լուծման համար աշխատավորների համախմբման, նրանց գաղափարաբարոյական դաստիարակության գործում։

Երևանի կուսակցական կազմակերպությունը, իր գործունեության հիմքում դնելով կուսակցության համագումարների, ՍՄԿԿ Կենտկոմի ծրագրային որո-

շումներն ու հանձնարարականները, ՀԿԿ Կենտկոմի անմիջական օգնությամբ ու ղեկավարությամբ, դարձել է աշխատանքային բոլոր հատվածների ոգեշնչողն ու կազմակերպիչը: Վկայությունը 70-ական և 80-ական թվականներին մայրաքաղաքում կատարված տնտեսական և սոցիալ-կուլտուրական հսկայական վերափոխումներն են: Դրանք կազմակերպչական և քաղաքական այն մեծ աշխատանքի կոնկրետ արդյունքն են, որ մայրաքաղաքի կուսակցական կազմակերպությունները կատարել են տնտեսական ու կուլտուրական շինարարության հրատապ խնդիրների լուծման, հանրային արտադրության արդյունավետության և աշխատանքի արտադրողականության, թողարկվող արտադրանքի որակի բարձրացման, ամենուրեք գիտակցական կարգապահության ամրապնդման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման համար աշխատավորների ուժերը համախմբելու ասպարեզում:

Աննախադեպ չափերով աճել է մայրաքաղաքի ժողովրդական տնտեսության արտադրական և գիտատեխնիկական պոտենցիալը, լայն հնարավորություններ են ստեղծվել սոցիալական զարգացման և կուլտուրական շինարարության մեծամասշտաբ խնդիրների լուծման համար: Այսօր Երևանում թողարկվող արդյունաբերական արտադրանքի ծավալը 1940 թվականի մակարդակը գերազանցում է 70 անգամ: Միայն վերջին երկու հնգամյակում արդյունաբերական արտադրանքի ծավալն աճել է 63 տոկոսով: Այժմ Երևանում գործում է շուրջ 240 արդյունաբերական ձեռնարկություն կամ հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների թվի ավելի քան 32 տոկոսը: Դրանք թողարկում են մոտ 3,5 միլիարդ ռուբլու արտադրանք, որը կազմում է հանրապետության արդյունաբերական արտադրանքի ծավալի 45 տոկոսը:

Արագ տեմպերով են զարգանում մեքենաշինությունն ու մետաղամշակումը, սարքաշինությունն ու էլեկտրոնային արդյունաբերությունը: Մեր ավանդական ապրանքների հետ միասին աշխարհի տասնյակ երկրներ, այդ թվում զարգացած կապիտալիստական երկրներ են առաքվում երևանյան մակնիշը կրող ժամանակակից էլեկտրական մեքենաներ, տրանսֆորմատորներ, հաշվիչ-չափիչ տեխնիկա, մետաղահատ հաստոցներ, զանազան սարքեր, էլեկտրոնային ապարատուրա և արդյունաբերական արտադրանքի ուրիշ շատ տեսակներ:

Քաղաքի կուսկազմակերպությունը գլխավորում է աշխատավորական կոլեկտիվների սոցիալիստական մրցությունը՝ հանրային արտադրության բարձր արդյունավետությունն ապահովելու համար: Սկսած իններորդ հնգամյակի ավարտական տարվանից՝ Երևանն անընդմեջ հաղթող է ճանաչվում համամիութենական սոցմրցությունում և արժանանում ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին: Ավանդույթ է դարձել Երևանի աշխատավորների սոցմրցությունը Կիևի, Թբիլիսիի, Բաքվի և Դոնի-Ռոստովի հետ:

Մայրաքաղաքի աշխատավորների բոլոր սերունդների հեղափոխական, մարտական ու աշխատանքային սխրագործությունների արժանի գնահատականը ՍՍՀՄ բարձրագույն պարգևն էր՝ Լենինի շքանշանը: Ինչպես քաղաքի պարգևատրումը, այնպես էլ Լենինի շքանշանի հանձնումը ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, Կենտկոմի քարտուղար ընկ. Ե. Կ. Լիգաչովի կողմից, առաջ բերեցին Երևանի աշխատավորների քաղաքական ու աշխատանքային մեծ վերելք, հզոր ազդակ դարձան նրանց արտադրական նոր խիզախումների համար, յուրաքանչյուր երևանցու համակեցին հպարտության և հարազատ կուսակցության նկատմամբ խոր երախտագիտության զգացումով:

Քաղաքին, նրա առանձին կազմակերպություններին շնորհված պարգևների մեջ, աշխատավորների սխրանքների հետ մեկտեղ, մենք տեսնում ենք նրա գործերի ու հոգսերի նկատմամբ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և հանրապետության կառավարության մշտական ուշադրությունը:

Երևանի կուսակցական կազմակերպությունը Հայաստանի կոմկուսի ամենաստվար ջոկատն է: Մենք խորապես ըմբռնում ենք այն իրողությունը, որ նա կոչված է միշտ քայլել առջևից, հենվելով կուտակված հարուստ փորձի



վրա՝ է՛լ ավելի բարձրացնել տնտեսության կուսակցական ղեկավարման մակարդակը, բարելավել աշխատավորների դաստիարակության ողջ գործը, կազմակերպչական և քաղաքական աշխատանքը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1982 թվականի ապրիլյան պլենումը գործարար կերպով քննարկեց կուսակցության Երևանի քաղկոմի կազմակերպչական և քաղաքական աշխատանքը՝ տասնմեկերորդ հնգամյակի պլանային առաջադրանքների և սոցիալիստական պարտավորությունների կատարման համար աշխատավորական կոլեկտիվներին համախմբելու ասպարեզում: Այդ քննարկումը մեծ նշանակություն ունեցավ քաղաքի կուսկազմակերպությունների գործունեության հետագա բարելավման համար:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանի՝ պլենումում արտասանած ճառում խորությամբ բացահայտվեցին և՛ մեր հաջողությունները, և՛ թերությունները, նշվեցին այն կոնկրետ ուղիները, որոնցով պետք է ընթանա քաղաքային կուսկազմակերպությունը: Պլենումի պահանջները դրվեցին կուսակցության քաղկոմի, շրջկոմների, բոլոր սկզբնական կուսկազմակերպությունների ամենօրյա գործունեության հիմքում: Դրանք, ըստ էության, շոշափում են մայրաքաղաքի կյանքի բոլոր կողմերը՝ սկսած տնտեսության կառավարման ամենատարբեր հարցերից, մինչև երևանյան բնավորություն, երևանյան սոցիալիստական ավանդույթների ձևավորում, աշխատավորների հանգստի և ժամանցի խելացի կազմակերպում:

Տարեցտարի է՛լ ավելի գեղեցիկ ու բարեկեց է դառնում մեր քաղաքը: Հարազատ կուսակցության ու կառավարության ջերմ հոգատարության շնորհիվ վերջին տարիներին Երևանում ծնունդ են առել ճարտարապետական այնպիսի հոյակապ կոթողներ, ինչպիսիք են մետրոպոլիտենը, «Զվարթնոց» և «Էրեբունի» օդանավակայանները, Երիտասարդության պալատը, Շահումյանի անվան պալատը, մարզահամերգային համալիրը: Այսօրվա Երևանը՝ վեր խոյացող իր բազմահարկերով, աչք շոյող ճարտարապետական դիմագծով, մեր իրականացված երազանքների արևային քաղաքը, ժողովուրդների բարեկամության լենինյան գաղափարների կենդանի մարմնացումն է, սոցիալիստական վերածննդի խորհրդանիշը:

Ստեղծագործական մտավորականության այժմյան սերունդը հաջողությամբ շարունակում և զարգացնում է սովետահայ գրականության և արվեստի նշանավոր գործիչներ Ավետիք Իսահակյանի, Եղիշե Չարենցի, Ալեքսանդր Թամանյանի, Մարտիրոս Սարյանի, Արամ Խաչատրյանի գեղարվեստագեղագիտական ավանդույթները:

Վերջին տարիներին մայրաքաղաքում կազմակերպվում են ավանդույթ դարձած հիանալի տոնահանդեսներ, ինչպես «Էրեբունի—Երևանը», դպրության, լուսավորության տոները: Մեծ հանդիսավորությամբ ու գաղափարական բարձր մակարդակով են անցկացվում կուսակցական ու պետական գործիչների, գրականության, արվեստի երախտավորների հոբելյանական հանդիսությունները: Դրանք վերածվում են լենինյան գաղափարներին հայ ժողովրդի հավատարմության, ինտերնացիոնալ բարեկամության, սովետական հայրենասիրության վառ ցույցի:

Այդ ամենը վկայում է մայրաքաղաքում տիրող բարոյաքաղաքական առողջ մթնոլորտի մասին, երևանցու՝ որպես մարդու, քաղաքացու և աշխատավորի, դաստիարակության գործում կուսակցական-կազմակերպական և գաղափարախոսական աշխատանքի մեր ակնառու հաջողությունների մասին: Երևանցի աշխատավորն իր հավաքական կերպարով այսօր մեր առջև հառնում է որպես լայն մտահորիզոնի տեր, պետական շահերով ապրող, քաղաքականապես հասուն անձնավորություն, և դա մեր մեծագույն նվաճումն է:

Մեր հաջողությունները մեծապես պայմանավորված են հանրապետության և նրա մայրաքաղաքի ծաղկման ու բարգավաճման, հայ ժողովրդի բարօրության և կենսամակարդակի բարձրացման նկատմամբ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի ու սովետական կառավարության հայրական հոգատարությամբ, այն իմաստուն ղեկավարությամբ և մեծ օգնությամբ, որը մենք մշտապես զգում ենք մեր աշխատանքային գործունեության ողջ ընթացքում: Այդ հոգա-

նարության մի նոր, վառ արտահայտություն է «1986—1990 թվականներին Երևանի քաղաքային տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումը, որը նոր հորիզոններ է բացում մեր հնօրյա և նորօրյա Երևանի կառուցապատման ու բարեկարգման, ազգաբնակչության կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման առջև։

Քաղաքի աշխատավորները հայրենանվեր աշխատանքով ամրապնդել են հնգամյակի եզրափակիչ տարվա հաջող մեկնարկն ու ձգտում են պետական պլանային առաջադրանքներն ու սոցիալիստական պարտավորությունները կատարել բարձր արդյունքներով։ Ակտիվորեն ներգրավվելով Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած հաղթանակի 40-րդ տարելիցին և ՍՄԿԿ XXVII համագումարն արժանավայել դիմավորելուն նվիրված սոցիալիստական մրցության մեջ՝ արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները, կուսակցական կազմակերպությունների ամենօրյա ղեկավարությամբ, կատարել ու գերակատարել են անցած վեց ամիսների պետական պլանային առաջադրանքները և սոցիալիստական պարտավորությունները՝ տեխնիկատնտեսական բոլոր ցուցանիշներով։

Ներկայումս քաղաքի կուսակցական կազմակերպության աշխատանքի ամենակարևոր ուղղությունը էկոնոմիկայի ինտենսիվացումն ու գիտատեխնիկական առաջընթացի արագացումն են, սոցիալիստական տնտեսավարման ձևերի ու մեթոդների համապատասխանեցումը ժամանակակից պայմաններին ու պահանջներին, կարգապահության վճռական ամրապնդումը, ղեկավարման լենինյան ոճի կատարելագործումը։ Կուսակցական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական, կուսակցական-կազմակերպական աշխատանքը բարձրացնել այն նոր խնդիրների մակարդակին, որոնք առաջադրում է մեր կուսակցությունը։

Կուսակցության Երևանի քաղաքային կոմիտեն հետևողականորեն բարելավում է իր գործունեության ոճը, հատուկ ուշադրություն նվիրում գաղափարաքաղաքական ու կազմակերպչական աշխատանքը սոցիալական ու տնտեսական կոնկրետ խնդիրների լուծման հետ զուգակցելուն, մասսաներին մոբիլիզացնում հանրային արտադրության հետագա վերելքի, տասներկերորդ հնգամյակի առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար։

Մայրաքաղաքում այսօր չկա տնտեսական ու կուլտուրական շինարարության ոչ մի բնագավառ, ոչ մի օղակ, որտեղ չարտահայտվի կոմունիստների առաջատար ավանգարդային դերը։ Նրանք ցույց են տալիս անձնուրաց, ստեղծագործական աշխատանքի հիանալի օրինակներ, դառնում նորի ու առաջավորի նախաձեռնողներ։ Պայքարելով ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան և հուլիսյան պլենումների որոշումների, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Մ. Ս. Գորբաչովի զեկուցումների, ելույթների բովանդակած դրույթների իրականացման համար՝ կուսակցության քաղաքային կազմակերպությունը մշտական հոգատարություն է հանդես բերում իր բոլոր օղակների աշխատանքի հետագա ակտիվացման, տնտեսական ու կուլտուրական շինարարության, պետական ու հասարակական կազմակերպությունների գործունեության կուսակցական ղեկավարման մակարդակի բարձրացման, մասսաների շրջանում տարվող կազմակերպչական, քաղաքական-դաստիարակչական ողջ գործի բարելավման նկատառումով։

Սերտորեն համախմբված հարազատ կոմունիստական կուսակցության, նրա լենինյան Կենտկոմի շուրջը՝ Երևանի աշխատավորները, մեր երկրի բոլոր աշխատավորների հետ միասին, վստահորեն ընթանում են կոմունիստական շինարարության ուղիով։ Նրանք պայծառ լավատեսությամբ են նայում ապագային, լի են ջերմ ձգտումով՝ առաջիկայում ևս, չխնայելով ուժ ու եռանդ, լենինյան դրոշի ներքո, կուսակցության ղեկավարությամբ, նվիրումով պայքարել կոմունիստական շինարարության վեհապանծ պլանները կենսագործելու համար, արժանի ավանդ ներդնել մեր մեծ հայրենիքի հզորության հետագա ծաղկման ու ամրապնդման գործում։

---



# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅԱՆ ԱՎԱՆԴՈՒՅԹՆԵՐԻ ԿԵՆՍԱՀԱՍՏԱՏ ՈՒԺԸ

**Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
ՀԱՄԽ-ի նախագահ

ՀԻՍՈՒՆ ՏԱՐԻ Է ԱՆՑԵԼ ԱՅՆ ՕՐԻՑ, երբ Դոնբասի «Կենտրոնական-Իրմինո» (Կադիևկա) հանքախորշի հանքափոր Ալեքսեյ Ստախանովը սահմանեց այդ ժամանակի համար աննախադեպ ռեկորդ. նա հինգ ժամ 45 րոպեում հորատեց 102 տոննա քարածուխ և 14 անգամ գերազանցեց արտադրական նորման։ Մի քանի օր անց Ալեքսեյ Ստախանովը աչքի ընկավ նոր ռեկորդով. մեկ հերթափոխի ընթացքում հորատեց 227 տոննա ածուխ։

Ստախանովյան ռեկորդների լուրն արագորեն տարածվեց երկրով մեկ և լայն արձագանք գտավ ամենատարբեր մասնագիտությունների բանվորների շրջանում։ Անվանի հանքագործի անունով էլ ծնունդ առավ սոցիալիստական մրցության մի նոր ձև՝ ստախանովյան շարժումը։ Այն դարձավ համաժողովրդական և իր ոլորտն առավ արդյունաբերության անխտիր բոլոր բնագավառները, տրանսպորտը, շինարարությունը, գյուղատնտեսությունը։

Ստախանովյան շարժման առաջին իսկ օրերից ամբողջ երկրով մեկ տարածվեց աշխատանքային ռեկորդների ալիքը։ Սեպտեմբեր ամսին Ստախանովի նվաճած բնագծերը գերազանցեցին նրա գործընկերներ Մ. Դյակոնովը, Դ. Կոնցեդալովը, սեպտեմբերի 11-ին մեկ հերթափոխում 240 տոննա հանքաքար հանեց Ն. Իզոտովը, իսկ մեկ օր անց Ֆ. Արտյուխովը նոր ռեկորդ սահմանեց՝ ստանալով 310,7 տոննա ածուխ։

Հատկանշական է, որ ստախանովյան ռեկորդները գերազանցում էին զարգացած կապիտալիստական երկրների ցուցանիշները։ Այսպես, Ստախանովը երկու անգամ գերազանցեց Ռուրի ավազանի լավագույն հանքերի ամսվա հանույթի մակարդակը։ Գորկու ավտոգործարանի դարբին Ա. Բուսիգինն այդ օրերին ոգևորությամբ կրճատեց ծնկաձև սռնու պատրաստման նորմատիվային ժամանակը՝ ԱՄՆ-ում հաստատված նորմայի համեմատությամբ։ Մոսկվայի հաստոցաշինական գործարանի ֆրեզերագործ Ի. Գուդովը հասավ աշխարհում աշխատանքի արտադրողականության ամենաբարձր ցուցանիշին։ Վիչուգայի ներքսատիլ ֆաբրիկայի գործող բանվորուհիներ Մարիա և Եվդոկիա Վինոգրադովաները աշխարհում առաջինն սկսեցին միաժամանակ սպասարկել սկզբում՝ 144, իսկ ապա՝ 216 հաստոց։ Գյուղատնտեսության մեջ աշխատանքի արտադրողականության բարձր ցուցանիշներով աչքի ընկան Մարիա Դեմչենկոն և Պաշա Անգելինան։ Այդ և շատ ուրիշ էնտուզիաստներ դարձան ստախանովյան շարժման պիոներները ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում։

Տարբեր էին այն աշխատանքային պայմանները, որոնցում աշխատանքի արտադրողականության նոր ռեկորդներ էին սահմանվում, տարբեր էին ստախանովյան շարժման հետևորդների մասնագիտությունները և կյանքի ուղիները, սակայն հանրային գործերի նկատմամբ նրանց վերաբերմունքի մեջ շատ բան էր ընդհանուր: Դա գիտակցական, կոմունիստական վերաբերմունքի դրսևորումն էր: Ստախանովականներ էին դառնում արտադրության առաջավորները և, որպես կանոն, կոմունիստներն ու կոմերիտականները, նրանք, ովքեր պարզորոշ հասկանում էին իրենց դերն ու պատասխանատվությունը և աշխատում էին տիրոջ սրտացավությամբ: Բնականաբար, ստախանովականները, արտադրության առաջամարտիկներն ու նորարարները ամենայն մանրամասնությամբ էին տիրապետում իրենց մասնագիտությունների գաղտնիքներին, նոր տեխնիկային և տեխնոլոգիային, համոզված էին իրենց հաջողությունների մեջ: Նրանք ռեկորդներ էին սահմանում գիտակցաբար, ստեղծագործաբար լուծում աշխատանքի կազմակերպման հարցերը, ցուցաբերում համառություն և հետևողականություն իրենց առջև ծառացած խնդիրների լուծման գործում:

Կուսակցությունը ստախանովյան շարժման մեջ տեսնում էր երկրի արտադրողական ուժերի զարգացման հզոր լծակ: 1935 թ. նոյեմբերին Մոսկվայում կայացած ստախանովականների համամիութենական խորհրդակցությունը խնդիր դրեց. աշխատել արտադրության փառաբանված վարպետներ Ստախանովի, Կրիվոնոսի, Վինոգրադովաների, Սմետանինի, Բուսիգինի, Անգելինայի, Դեմչենկոյի, մյուսների օրինակով և էապես բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, բարելավել արտադրանքի որակը, խորությամբ տիրապետել ընտրած մասնագիտությունը:

ՀամԿ(բ)Կ Կենտկոմի 1935 թվականի դեկտեմբերյան պլենումը մշակեց գործողության լայն ծրագիր, որ ուղղված էր ստախանովյան շարժման մասսայականության ապահովմանը: Կենտկոմի պլենումը կուսակցական և արհմիութենական կազմակերպություններից պահանջեց գլխավորել և ուղղություն տալ այդ շարժմանը, ըստ ամենայնի նպաստել դրա զարգացմանը:

Ղեկավարվելով կուսակցության որոշումներով՝ արհմիութենական մարմիններն ու կազմակերպությունները ամենայն գործարարությամբ աջակցություն էին ցույց տալիս ստախանովականներին, հոգում, որպեսզի աշխատանքային կոլեկտիվներում այդ շարժումն ստանա առավել գործնական բնույթ: Այդ նպատակով ձեռնարկություններում կազմակերպվում էին արտադրատեխնիկական կոնֆերանսներ, նորարարների լավագույն փորձի ուսումնասիրման և տարածման նպատակով անցկացվում էին միջգործարանային ամփոփումներ, վարպետ բանվորներն ստանձնում էին նորեկների շեֆությունը, կազմակերպվում էին ստախանովյան դպրոցներ:

Լուրջ աշխատանքներ կատարվեցին սոցիալիստական մրցության արդեն գործող ու փորձված ձևերի և եղանակների ողջ զինանոցը նոր բովանդակությամբ հագեցնելու, ետ մնացողներին առաջավորներին հասցնելու, աշխատանքի արտադրողականության բարձր մակարդակ ապահովելու համար: Ստախանովյան շարժումը բացահայտեց ժողովրդի ստեղծագործական ունակություններն ու տաղանդը, նրա հսկայական պոտենցիալ հնարավորությունները: Եվ, բնականաբար, ժամանակակիցները իրավամբ գտնում էին, որ այդ շարժումը հեղափոխություն է ոչ միայն արտադրության, այլև մարդկանց գիտակցության մեջ: Այն հաջողությամբ ծառայում էր երկրի տնտեսական և սոցիալական զարգացման պլանների կատարմանը, մարդկանց աշխատանքային ու հասարակական-քաղաքական ակտիվության բարձրացմանը:

Ստախանովյան շարժման մասսայական բնույթը դարձավ այն իրողության ցայտուն վկայությունը, որ սոցիալիստական մրցության կազմակերպման լենինյան գաղափարները խոր արմատներ են ձգել և լուրջ քննություն բռնել ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում: ՀամԿ(բ)Կ Կենտկոմի 1935 թվականի պլենումը ստախանովյան շարժումը համարեց սոցիալիզմի ուղիով երկրի զարգացման, սոցիալիզմի հաղթանակի արգասիքը:



ՍՏԱԽԱՆՈՎՅԱՆ ՇԱՐԺՄԱՆ ԾՆՈՒՆԴԸ պայմանավորված էր անցած տասնամյակներում ծավալված սոցիալիստական մրցության ընթացքով, այն բարենպաստ պայմաններով, որ ստեղծել էին այդ շարժմանը նախորդող մրցության ձևերը:

Սոցիալիստական մրցությունը սոցիալիզմի օրինաչափ ծնունդն է: Վ. Ի. Լենինը իրավացիորեն նշում էր, որ «Սոցիալիզմը ոչ միայն չի մարում մրցությունը, այլ, ընդհակառակն, առաջինն է հնարավորություն ստեղծում իրոք լայնորեն կիրառելու այն, իրոք մասսայական չափով, իրոք աշխատավորների մեծամասնությունը ներգրավելու այնպիսի աշխատանքի ասպարեզ, որտեղ նրանք կարող են երևան բերել իրենց, ծավալել իրենց ընդունակությունները, դրսևորել տաղանդներ...» (ԵԼԺ, հ. 35, էջ 228—229): Սոցիալիստական մրցության զարգացման ողջ ընթացքը վկայում է, որ այն ժողովրդական մասսաների գիտակցական աշխատանքի և սոցիալական ակտիվության դրսևորման ամենամասսայական ձևն է, որը զուգակցում է սոցիալիստական հասարակության անդամների ստեղծագործական մրցակցությունը, ընկերական փոխօգնությունն ու բարեկամական համագործակցությունը՝ հանրային արտադրության արդյունավետության և արտադրանքի որակի բարձրացման, մարդկանց մոտ բարոյական լավագույն հատկանիշների և կոմունիստական աշխարհայացքի ձևավորման գործում: «Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի 1971 թվականի հայտնի որոշման մեջ ասվում է, որ «Սոցիալիստական և կոմունիստական շինարարության բոլոր փուլերում մրցությունը եղել և մնում է որպես մասսաների ստեղծագործական նախաձեռնությունը զարգացնելու, սոցիալիստական կոլեկտիվիզմը ձևավորելու հուժկու միջոց: Մրցությունը միշտ էլ ծառայել է որպես արտադրողական ուժերի վերելքի, արտադրական հարաբերությունների կատարելագործման, աշխատավորության դաստիարակության, արտադրության կառավարման գործին նրանց ներգրավելու արդյունավետ մեթոդ» (Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման մասին, Երևան, 1971, էջ 3):

Սոցիալիստական մրցության առաջին դրսևորումը կոմունիստական շաբաթօրյակներն էին: Վ. Ի. Լենինը բարձր գնահատեց դրանց նշանակությունը նոր հասարակարգի ամրապնդման գործում: Նա դրանք համարում էր մեծ հեղաշրջման սկիզբ, կոմունիզմի ծիլեր: «Կոմունիստական շաբաթօրյակները,— գրում է Վ. Ի. Լենինը,— հսկայական պատմական նշանակություն ունեն հենց այն պատճառով, որ դրանք մեզ ցույց են տալիս բանվորների գիտակցական և կամավոր նախաձեռնությունն աշխատանքի արտադրողականությունը զարգացնելու գործում, նոր աշխատանքային կարգապահության անցնելու, տնտեսության և կյանքի սոցիալիստական պայմաններ ստեղծելու գործում» (ԵԼԺ, հ. 39, էջ 21):

Քսանական թվականներին սոցիալիստական մրցության պրակտիկայում երևան եկան նոր ձևեր՝ հարվածային աշխատանքի խմբեր, արտադրական մրցույթներ, ստուգատեսներ, արտադրական նորմաների կամավոր վերանայման շարժում և այլն: Դրանք նպաստում էին մասսաների ակտիվության բարձրացմանը, նախաձեռնության զարգացմանը, օգնում ի հայտ բերելու յուրաքանչյուրի ստեղծագործական հնարավորությունները նյութական բարիքների արտադրության ոլորտում:

Նախաստախանովյան սոցիալիստական մրցության ամենատարածված ձևը դարձավ հարվածայնությունը, որը, շարունակելով կոմունիստական շաբաթօրյակների լավագույն ավանդույթները, ամբողջությամբ համապատասխանում էր երկրի զարգացման նոր փուլին, ինդուստրացման իրականացման սկզբնական ժամանակաշրջանի պահանջներին: Հարվածային աշխատանքի մասսայական շարժումը նպաստեց ժողովրդական տնտեսության զարգացման առաջին և երկրորդ հնգամյակների պետական պլանների ժամկետից շուտ կատարմանը, դրա տեխնիկական վերակառուցման տեմպերի արագացմանը: Սոցիալիստական մրցության այդ ձևերը՝ կոմունիստական շաբաթօրյակները,

հարվածային աշխատանքի մասսայական շարժումը, անգնահատելի դեր խաղացին ստախանովյան համաժողովրդական շարժման ծագման գործում, լավ նախադրյալներ ստեղծեցին դրա զարգացման համար։ Իսկ ստախանովյան շարժումն իր հերթին դարձավ հետագա տասնամյակներում ծավալված սոցիալիստական մրցության հիմք ու ելակետ։

ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՅՍՕՐՎԱ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԸ, ընթացիկ հնգամյակի ջահակիրները, ինչպես և նրանց հայրերն ու պապերը հինգ տասնամյակ առաջ, սոցիալիստական մրցության մասսայական շարժումը համարում են նոր խանդավառ աշխատանքի աղբյուր, տնտեսական ու սոցիալական խնդիրների լուծման հուսալի միջոց։ Նրանք բարձր են պահում մրցության դրոշը, հաջողությամբ շարունակում ստախանովականների լավագույն ավանդույթները։ Եվ օրինաչափ է, որ ստախանովյան շարժման 50-ամյա հոբելյանը արժանավայել դիմավորելու կոչը լայն արձագանք գտավ երկրի աշխատավորական կոլեկտիվներում, նոր թափ հաղորդեց Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի փառապանծ հաղթանակի 40-ամյակի և ՍՄԿԿ XXVII համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցությանը։ Դեռևս տարեսկզբին ածխարդյունաբերության, մետալուրգիական և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի աշխատանքային կոլեկտիվները հանդես եկան տասնմեկերորդ հնգամյակի պլանները մի շարք կարևորագույն ցուցանիշներով ստախանովյան շարժման 50-ամյակի օրը կատարելու նախաձեռնությամբ։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն բարձր գնահատեց և հավանություն տվեց այդ նախաձեռնությանը և հանձնարարեց կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական և տնտեսական մարմիններին ու կազմակերպություններին՝ գործնական աշխատանք տանել այն լայնորեն տարածելու և արմատավորելու համար։ Ուկրաինայում՝ ստախանովյան շարժման հայրենիքում, ավելի քան 40 հազար ձեռնարկություններ, բրիգադներ, տեղամասեր և աշխատամասեր, մոտ մեկ միլիոն աշխատավորներ պարտավորվեցին հնգամյակի առաջադրանքները կատարել 1985 թվականի օգոստոսի 31-ին, Ստախանովի ռեկորդ սահմանելու օրը։

Նման պարտավորություններ են ստանձնել մեր մեծ հայրենիքի, այդ թվում և Սովետական Հայաստանի հարյուրավոր ու հազարավոր աշխատանքային կոլեկտիվներ։ Այսօր արդեն նրանցից շատերը, հաջողությամբ իրականացնելով ստանձնած պարտավորությունները, աշխատում են գալիք հնգամյակի հաշվին։

Մեր երկրի աշխատավորական կոլեկտիվներում լավ ավանդույթ է դարձել երկրի կյանքում նշանակալի իրադարձությունները դիմավորել արտադրական մեծագործություններով, հայրենասիրական նոր նախաձեռնություններով հարուստ սոցիալիստական մրցությունը բարձրացնել որակական նոր աստիճանի, դրսևորել բարձր գիտակցականություն և աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունք։ Արգասավոր է եղել հատկապես վերջին տասնամյակում ծավալված սոցիալիստական մրցությունը։ Այդ տարիներին մեր հանրապետությունը յոթ անգամ անընդմեջ հաղթող է ճանաչվել համամիութենական մրցության մեջ և արժանացել ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։

Ստախանովյան շարժման 50-ամյակի և ՍՄԿԿ XXVII համագումարի պատվին այսօր ծավալված սոցիալիստական մրցությունը ներառնում է բոլոր աշխատավորական կոլեկտիվները։ Համաժողովրդական շարժման մեջ ընդգրկված են հանրապետության շուրջ 1,2 միլիոն աշխատավորներ կամ կոլեկտիվների անդամների ընդհանուր թվի ավելի քան 94 տոկոսը։ Հատկանշական է, որ արդեն շուրջ 90 արդյունաբերական ձեռնարկություններ ու տնտեսություններ, 1.200 արտադրամասեր ու տեղամասեր, ավելի քան 40 հազար բրիգադներ, 100 հազար բանվորներ զեկույց են տվել տասնմեկերորդ հնգամյակի պլանային առաջադրանքները կատարելու մասին և աշխատում են 1986 թվականի հաշվին։



Հանրապետության բազմաթիվ ձեռնարկություններում, շինարարական և տրանսպորտային կազմակերպություններում, կոլտնտեսություններում և սովխոզներում հիանալի արդյունք է տալիս սոցիալիստական մրցության բարձրագույն ձևը՝ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժումը։ Այսօր այդ շարժման մասնակիցների թիվն անցնում է 718 հազար մարդուց, որոնց մոտ 40 տոկոսն արժանացել է կոմունիստական աշխատանքի հարվածայինի բարձր կոչման։ Կոմունիստականի պատվավոր կոչումն են կրում շուրջ 9,5 հազար բրիգադներ, 3,4 հազար արտադրամասեր ու տեղամասեր և 114 արտադրամիավորումներ, ձեռնարկություններ ու կազմակերպություններ։

Սոցիալիստական մրցության կազմակերպման ներկա փուլում, շարունակելով իրենց նախորդների լավագույն ավանդույթները, մրցության աջթևայինների առաջին շարքերում են ընթանում արդեն տասներկուերորդ հնգամյակը թևակոխած Ախուրյանի շրջանի Ազատան գյուղի «Ձերժինսկու անվան կոլտնտեսության, «Անի» գիտաարտադրամիավորման, «Հայգլխջրշին» № 18 շարժական մեքենայացված շարասյան, Կիրովականի Ստեփան Շահումյանի անվան կարի, Երևանի «Անահիտ» արտադրամիավորումների, Նաիրիի շրջանի Նոր Գեղիի սովխոզ-տեխնիկումի, Դիլիջանի կաթի կոմբինատի, Հրազդանի շրջանի Ջրառատի կաթնանասնապահական համալիրի և շատ ուրիշ աշխատանքային կոլեկտիվներ։

Շատ են ստախանովական շարժման այսօրվա հետնորդները։ Նրանք իրենց նախորդների նման աշխատանքային խիզախումների փայլուն էջեր են գրում սոցիալիստական մրցության տարեգրության մեջ։ Լենինականի Մայիսյան ապստամբության անվան բամբակագործվածքային արտադրամիավորման գործող բանվորուհի Ամալյա Հարությունյանի, Սիսիանի պանրագործարանի պանրագործ Վազգեն Ավագյանի, «Երարդշին» տրեստի № 31 շինվարչության բրիգադավար Գրիշա Մարգարյանի, Էջմիածնի շրջանի Լենինի անվան պետական տնտեսության մեխանիզատոր Ռաֆիկ Բաղալյանի, «Նաիրիտ» գիտաարտադրամիավորման ապարատավարների բրիգադավար Սուրեն Պետրոսյանի և նրանց նման հազարավոր այլ առաջավորների անձնվեր աշխատանքով օրավուր ծաղկում ու բարգավաճում են մեր հանրապետությունը, մեր սովետական հայրենիքը։

Անվանի լամպագործ Պավել Քալաշյանի անունը վաղուց դուրս է եկել իր ձեռնարկության սահմաններից, լայն ճանաչման արժանացել մեր հանրապետությունում և Միության էլեկտրատեխնիկական արդյունաբերության համակարգում։ Վերջերս նրա ուսանելի փորձը ընդհանրացվեց և տարածվեց հատուկ թերթիկով։ Նա քառորդ դար Երևանի էլեկտրալամպերի գործարանում է։ Եղել է առաջավոր բանվոր, ապա՝ կամովին ստանձնել ետ մնացող՝ լամպեր հավաքող բրիգադի ղեկավարումը։ Կարճ ժամանակում կարողացել է համախմբել կոլեկտիվը, կարգավորել ու հստակորեն կազմակերպել նրա աշխատանքը, ապահովել ամենօրյա առաջադրանքների կատարումը և բարձրորակ արտադրանքի թողարկումը։ Բրիգադն աշխատում է տնտհաշվարկի մեթոդով։ Ահա հնգամյակի անցած չորս տարում նրա ձեռք բերած արդյունքները. գրեթե մեկ միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք, աշխատանքի արտադրողականության 20 տոկոսի աճ, 26 հազար ռուբլու նյութերի ու կիսաֆաբրիկատների տնտեսում։ Ընթացիկ հնգամյակում անվանի բրիգադավարի ռացիոնալիզատորական վեց առաջարկություն ներդրվել է արտադրության մեջ։ Նրա հայրենանվեր աշխատանքը բարձր է գնահատվել. շքանշանների ու մեդալների ասպետ, ՍՍՀՄ պետական մրցանակի դափնեկիր, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ, միավորման կուսկոմիտեի և արտադրամասի կուսբյուրոյի անդամ, ՍՍՀՄ արհմիությունների XVI համագումարի պատգամավոր։ Բրիգադը, ի պատիվ մեծ հաղթանակի 40-ամյակի, տասնմեկերորդ հնգամյակի ծրագիրը կատարեց մայիսի 9-ին և, մտնելով ստախանովյան շարժման 50-ամյակի ու ՍՄԿԿ XXVII համագումարի պատվին ծավալված սոցմրցության մեջ՝ խոստացել է մինչև 1985 թվականի վերջը արտապլանա-

*յին կարգով թողարկել մեկ միլիոն լամպ, ութ օր աշխատել խնայված նյութերի հաշվին։*

*Պավել Քալաշյանի օրինակը եզակի չէ։ Այդպիսի առաջավորները հարյուրներով ու հազարներով են հաշվվում։ Հարկ է հարգանքի տուրք մատուցել հատկապես այն մարդկանց, ովքեր տակավին ստախանովյան շարժման օրերից իրենց ուժն ու եռանդը նվիրաբերում են հայրենիքի բարգավաճմանը։ Նրանցից մեկը Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատի առաջավոր, ստախանովյան շարժման կրծքանշանի արժանացած, աշխատանքի և պատերազմի վետերան, բազմակի շքանշանակիր Յոլյակ Մարտիրոսյանն է։ Այսօր էլ նա իր փորձն ու գիտելիքները սիրով հաղորդում է գործընկերներին, միաժամանակ ղեկավարում է տեղամասի կուսակցական կազմակերպությունը։ Փաշո Նասիբյանը և Գյուլիջա Բաբաջանյանը «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման աշխատանքի ճանաչված վետերաններից են։ Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում այդպիսին է ստախանովական, դիսպետչեր Արարատ Նավոյանը։ Այդ փառաբանված վետերանները և նրանց նման հարյուրավոր այլ առաջավորներ ամենայն սիրով իրենց երկարամյա փորձն ու հմտությունը ստախանովյան շարժման առաջին իսկ օրերից հաղորդել և հաղորդում են հաջորդ սերունդներին, անգնահատելի դեր կատարում սոցիալիստական մրցության վերելքի գործում։*

*Մեր բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, ժողովրդական մտավորականության նախորդ սերունդների պանծալի ավանդույթները ժամանակակիցներիս պարտավորեցնում է լինել նրանց արժանի փոխարինողներ, գտնել նոր ուղիներ, ձեռնարկել բոլոր միջոցները՝ բազմապատկելու երկրի տնտեսական հզորությունը, դրանով իսկ ապահովելու սովետական ժողովրդի բարեկեցության անշեղ աճը։*

*ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումում և գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը նվիրված համամիութենական խորհրդակցությունում ողջ սրությամբ արծարծվեցին գիտատեխնիկական հեղափոխության նվաճումներն արտադրության մեջ ներդնելու, էկոնոմիկայի ինտենսիվ վարման, հանրային արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման հրատապ խնդիրները։ Գիտատեխնիկական առաջընթացի արագացումը ենթադրում է արտադրական պրոցեսների լայն մեքենայացում և ավտոմատացում, նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիայի հետևողական արմատավորում, նոր, բարձրորակ արտադրատեսակների արտադրության յուրացում, գործող սարքավորումների կատարելագործում, հաշվիչ տեխնիկայի կիրառում և այլ միջոցառումների իրականացում։ Այդ ամենը անշուշտ, իր արտացոլումն է գտնում կոլեկտիվների ստանձնած սոցիալիստական պարտավորություններում և նրանց աշխատանքի արդյունքներում։ Բավական է ասել, որ տասներորդ հնգամյակում մեքենայացման ու ավտոմատացման տված տնտեսական օգուտը կազմել է 58,6 միլիոն ռուբլի, իսկ ընթացիկ հնգամյակում սպասվում է 82 միլիոն ռուբլու օգուտ։*

*Իր ելույթներում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Մ. Ս. Գորբաչովը քանիցս նշել է, որ երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման ծրագրի իրականացումը հրամայաբար պահանջում է աշխատանքի հիմքում դնել ինտենսիվ զարգացման ուղիով էկոնոմիկայի վարման գործոնները, համակողմանիորեն բարձրացնել հանրային արտադրության արդյունավետությունը, հետևողականորեն կյանքի կոչել գիտատեխնիկական առաջընթացի արագացման միջոցառումները։ Այդ խնդիրների լուծման համար անհրաժեշտ է վերակառուցել ու կատարելագործել տնտեսության պլանավորումն ու կառավարումը, ամենուրեք բարձրացնել կազմակերպվածությունը, ամրապնդել կարգապահությունը, հաստատել կարգ ու կանոն, մեկ անգամ ևս վերանայել և արմատապես բարելավել գործունեության ոճն ու մեթոդները։ Եվ արհմիութենական կազմակերպությունների պարտքն է՝ գտնվել այդ խնդիրների բարձրության վրա, ամեն կերպ նպաստել դրանց լուծմանը։*



*Արհմիութենական կազմակերպությունները տնտեսական ղեկավարների հետ պետք է անդուլ ուշադրություն նվիրեն աշխատանքի կազմակերպման առաջադիմական ձևերի և մեթոդների, առանձնապես բրիգադային եղանակի ներդրմանը։ Ի դեպ, հանրապետության արդյունաբերության բանվորների 67 տոկոսն աշխատում է բրիգադներում, սակայն ցածր է բանվորների ընդգրկումն առավել առաջադիմական տնտհաշվարկային բրիգադներում։ Այն տատանվում է 20 տոկոսի սահմաններում։ Մինչդեռ աշխատանքի կազմակերպման և խրախուսման առաջավոր ձևերի ընդլայնմամբ ու զարգացմամբ մեծապես կխթանվի տնտհաշվարկի ներդրումը, լայն հնարավորություններ կստեղծվեն աշխատավարձի բաշխումը ըստ աշխատանքային մասնակցության գործակցի կատարելու, աշխատավարձի հարցում հավասարությունը վերացնելու, ինչպես աչքի ընկնող աշխատողներին ըստ արժանվույն խրախուսելու համար։*

*ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՊՐԻԼՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԸ նախահամագումարյան սոցիալիստական մրցության, կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի գլխավոր նպատակը համարեց 1985 թվականի պլանի անվերապահ կատարումը, արտադրության բոլոր օղակներում բարձրարտադրողական աշխատանքի ապահովումը։*

*Նախահամագումարյան մրցության այս օրերին, ի պատիվ կուսակցության համաժողովի, շարունակում են ծնունդ առնել հայրենասիրական նոր շարժումներ, կոլեկտիվ ու անհատական նախաձեռնություններ, որոնց նպատակն է, կուսակցության արդի պահանջներին համապատասխան, արագացնել գիտատեխնիկական առաջընթացը, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, էապես բարելավել թողարկվող արտադրանքի որակը, խնայողաբար օգտագործել և տնտեսել հումքը, նյութերը, վառելիքաէներգետիկ ռեսուրսները։ Այդ գործին ակտիվորեն լծվել են նաև մեր հանրապետության աշխատավորական կոլեկտիվները։ Համագումարի պատվին նրանք ստանձնում են նոր, ավելի բարձր պարտավորություններ՝ հնգամյակի եզրափակիչ տարվա, ամբողջությամբ վերցրած հնգամյակի սոցիալ-տնտեսական ծրագիրը անպայմանորեն կատարելու համար։ Նախահամագումարյան մրցության աջթևայիններից են «Հայէլեկտրալույս», «Հայկենցաղքիմ», Սպիտակի կարի արտադրամիավորումները, Կիրովականի ավտոգենային մեքենաշինության, Երևանի ալյումինի գործարանների, «Քաջարանշին» տրեստի, Աբովյանի շրջանի Կոտայքի կոլտնտեսության և տասնյակ այլ կոլեկտիվներ, որոնք խոստացել են տարեկան պլանը կատարել ժամկետից 5—15 օր շուտ։ «Հայէլեկտրալույս» արտադրամիավորման բանվոր-ծառայողները 1986 թվականի առաջին երկու ամիսների պլանը փետրվարի 25-ին կատարելու և մեկ միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք թողարկելու պարտավորություն են ստանձնել։ Ընթացիկ հնգամյակում աշխատելով առաջանցիկ գրաֆիկով՝ «Անահիտ» կարի արտադրամիավորման կարի № 1 բրիգադի կոլեկտիվը (բրիգադավար՝ Անժելա Օսիպովա, արհմիության խմբի կազմակերպիչ՝ Արմենուհի Ստեփանյան) պարտավորվել է համագումարի բացման օրը զեկուցել 1986 թվականի պլանը կատարելու մասին։ Բարձր արտադրողական աշխատանքի հիանալի օրինակներ են տալիս նաև Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի՝ Պավլուշա Դավթյանի ղեկավարած մեխանիզատորների բրիգադը, փոքր ու մեծ շատ այլ կոլեկտիվներ, արտադրության հազարավոր առաջավորներ։*

*Հանրապետության արհմիութենական մարմիններն ու կազմակերպությունները պարտավորվել են պաշտպանել և լայնորեն տարածել աշխատանքային կոլեկտիվների և մրցության առաջավորների «Հնգամյակին՝ հարվածային ավարտ», «Կուսակցության XXVII համագումարին՝ 27 հարվածային շաբաթ», «ՀԿԿ XXVIII համագումարին՝ արժանավայել դիմավորում», «Համագումարի բացման օրն աշխատել տնտեսված հումքի, նյութերի և էներգիայի հաշվին» հայրենասիրական նախաձեռնությունները, որոնք ծնունդ են առել*

նախահամագումարյան սոցիալիստական մրցությունում։ Չարենցավանի գործիքաշինական արտադրամիավորման կոլեկտիվը, ոգեշնչված ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումի որոշումներով, ստանձնեց սոցիալիստական բարձր պարտավորություններ և որոշեց մրցություն ծավալել «ՍՄԿԿ XXVII համագումարին՝ 27 հարվածային տասնօրյակ» նշանաբանով։ Այդ նախաձեռնությունը լայն պաշտպանություն գտավ։ Միավորման 450 առաջավոր բանվորներ արդեն կատարել են տասնմեկերորդ հնգամյակի անձնական պլանները։

Սոցիալիստական մրցության արդյունավետության բարձրացման համար պահանջվում է անընդհատ կատարելագործել դրա ձևերը, ճիշտ որոշել տվյալ փուլում մրցության էությունն ու նպատակները, այն բխեցնել ժամանակի հրատապ պահանջներից։ Սոցիալիստական մրցությանը ներկայացվող այսօրվա պահանջները պայմանավորված են երկրում լայն մասշտաբներով իրականացվող տնտեսական մեխանիզմի կատարելագործման նպատակով տարվող աշխատանքով, աշխատանքային կոլեկտիվների վերաբերյալ ՍՍՀՄ օրենքի հետևողական կիրառմամբ, արտադրության կառավարման դերի բարձրացմամբ, աշխատանքի բրիգադային եղանակի լայն տարածմամբ, աշխատանքային և կատարողական կարգապահության ամրապնդման անհրաժեշտությամբ։ 1984 թ. և 1985 թվականի անցած ժամանակաշրջանում սոցիալիստական մրցության արդյունքների վերլուծությունը ցույց տվեց, որ զգալիորեն բարձրացել է մրցողների ակտիվությունը արտադրության վերջնական արդյունքների համար, որը և «Սոցիալիստական մրցության կազմակերպման, ամփոփման պրակտիկայի և խրախուսման կատարելագործման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման իրականացման վկայություններից է։

Հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի արտադրական կոլեկտիվներում, մինիստրություններում, գերատեսչություններում, արհմիությունների հանրապետական ճյուղային կոմիտեներում, աշխատանքի պետական կոմիտեի ակտիվ մասնակցությամբ, վերանայվել ու ամփոփվել են սոցիալիստական մրցության գործող ձևերն ու պայմանները։ Ներկայումս գործնական միջոցներ են ձեռնարկվում դրանք նոր խնդիրների մակարդակին բարձրացնելու համար։

Սոցիալիստական մրցության ձևերի ու ցուցանիշների վերանայումն ու կատարելագործումը, իհարկե, ինքնանպատակ չեն։ Այստեղ գլխավորն այն է, թե ինչ են դրանք արտահայտում, ինչ են տալիս մրցողներին։ Պայմանագրային պարտավորությունների կատարումը, աշխատանքի արտադրողականության բարձրացումը և թողարկվող արտադրանքի որակի բարելավումն ու ինքնարժեքի իջեցումը այն կարևորագույն ցուցանիշներն են, որոնք առանձնահատուկ տեղ պետք է գրավեն մրցության պայմաններում։ Հանրապետության բազմաթիվ աշխատանքային կոլեկտիվներ այս ցուցանիշներով ընդունել են բարձր և լարված պարտավորություններ ու հանդիպական պլաններ։ Ստանձնած պարտավորությունների և հանդիպական պլանների կատարման համար տեղերում ծավալվել է գործնական մրցություն։

1985 թվականի անցած ամիսների արդյունքները հիմք են տալիս հուսալու, որ հանրապետության աշխատավորները ամեն ինչ կանեն ձեռք բերած բնագծերը ոչ միայն ամրապնդելու, այլև դրանք գերազանցելու համար։ Նրանք ջերմորեն արձագանքեցին երկրի լավագույն կոլեկտիվների օրինակով յուրաքանչյուր հանրապետությունում, շրջանում խնայողության արտապլանային ֆոնդ ստեղծելու, երկու և ավելի օր խնայված նյութերի, հումքի և վառելիքաէներգետիկ ռեսուրսների հաշվին աշխատելու վերաբերյալ կուսակցության կոչին, և պետք է ասել, որ այն հաջողությամբ իրականացվում է։

Հետզհետե նոր որակ ու նշանակություն է ստանում հանդիպական պլանավորումը։ Այս գործում հսկայական դեր ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ «Հանդիպական պլանների մշակման և կատարման աշխատանքային կոլեկտիվների նախաձեռնությունների հետագա զարգացման միջոցառումների մասին» որոշումը։ Ներկայումս հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների ավելի քան 84 տոկոսն ստանձնել է հանդիպական պլաններ, իսկ փայտամշակման, սննդի, թեթև արդյունաբերության, շինարարության, շինանյութերի և տեղական արդյունաբերության մինիստրությունների համակարգի գրեթե բոլոր ձեռնարկությունները հաջողությամբ են կատարում դրանք։

Մեր խնդիրն է՝ կատարելագործել հանդիպական պլաններով նախատեսվող ցուցանիշների համակարգը, դրանով իսկ նոր որակական աստիճանի բարձրացնել գործարար սոցիալիստական մրցությունը։

Այսօր, երբ պայքար է ծավալվում հնգամյակը հաջողությամբ եզրափակելու, ՍՄԿԿ XXVII և ՀԿԿ XXVIII համագումարներն արժանավայել գործերով դիմավորելու համար, երբ կուսակցությունը պահանջում է ապահովել զարգացման ավելի արագ տեմպեր, խոսքի և գործի միասնություն, չի կարելի հաշտվել թեկուզ և չնչին քանակությամբ ետ մնացող կոլեկտիվների ցածր ցուցանիշների առկայության հետ։ Պետք է ըստ ամենայնի ծավալել և գործի վերածել մեր հանրապետության աշխատավորության կողմից ջերմ ընդունելության արժանացած «Ոչ մի ետ մնացող կողքիդ» ժամանակի ոգուն համապատասխանող հայրենասիրական կոչը։ Այս կոչի իրականացման նպատակով բոլոր կոլեկտիվների տնտեսական և արհմիութենական ղեկավարները, կուսակցական կազմակերպությունների գլխավորությամբ, պետք է մոբիլիզացնեն իրենց ուժերը՝ վերացնելու թերությունները և ապահովելու տված խոսքի անթերի կատարումը։ Հարկավոր է հանգամանորեն խորամուխ լինել գործերի վիճակի մեջ, ամենօրյա վերահսկողություն սահմանել պլանային ցուցանիշների ամբողջ կոմպլեքսի և սոցիալիստական պարտավորությունների կատարման նկատմամբ, գործնական միջոցների դիմել աշխատանքի նորմալ ռիթմ ապահովելու, առկա ռեզերվները գործողության մեջ դնելու համար։

Նախահամագումարյան ժամանակաշրջանը հանրապետության արհմիութենական կազմակերպությունների համար ստեղծարար աշխատանքի, հայրենանվեր նոր գործերի լուրջ քննաշրջան է։ Աշխատավորական կոլեկտիվները, ծավալելով գործարար սոցիալիստական մրցություն, ՍՄԿԿ XXVII համագումարը կդիմավորեն նորանոր նվաճումներով՝ ի բարօրություն մեր մեծ հայրենիքի, ի շահ նրա բարգավաճման, տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդման։

---

# ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻՆ՝ ԲԱՐՁՐՈՐԱԿ ՀԱՄԱԼՐՈՒՄ

Կ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ քաղաքականության համակարգում առանձնահատուկ տեղ ունի ժողովրդական տնտեսության համար որակյալ բանվորական կադրերի պատրաստման խնդիրը։ Այդ խնդրի լուծման կարևորագույն աղբյուրը բուռն կերպով զարգացող պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության համակարգն է, որտեղ կազմավորվում է հասարակության ամենակարևոր արտադրաուժը՝ բանվոր դասակարգը։

Ուսուցման այդ ձևի դերն առավել մեծանում է արդի պայմաններում։ Հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումից հետո մշտապես բարելավվում է սովորողների աշխատանքային դաստիարակության և պրոֆեսիոնալ կողմնորոշման դրվածքը, զգալիորեն ընդլայնվում է պրոֆտեխնիկական կրթության համակարգում բարձրորակ բանվորական կադրերի պատրաստումը։

Երկրի զարգացման տարբեր փուլերում տարբեր խնդիրներ են դրվել պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության ցանցի առջև։ Դա պայմանավորվել է ինչպես ընդհանուր առմամբ կրթության համակարգի զարգացմամբ, այնպես էլ արտադրաուժերի կատարելագործմամբ, ժողովրդական տնտեսության քանակական ու որակական տեղաշարժերով։

Պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության համակարգի ձևավորումն ու զարգացումը, բանվորական որակյալ կադրերի պատրաստումը սերտորեն առնչվում են երկրի արտադրաուժերի և արտադրահարաբերությունների զարգացման, սոցիալ-տնտեսական վերափոխումների հետ։ Դա վերաբերում է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի համամասնական զարգացմանը՝ մասնավորապես արդյունաբերության նոր և նորագույն ճյուղերի ստեղծման, դրանց որակական ու քանակական տեղաշարժերի շնորհիվ ժողովրդական տնտեսության մյուս բոլոր բնագավառները տեխնիկապես վերազինելու և համապատասխան նոր պրոֆեսիաներով ու մասնագիտություններով բանվորական կադրեր պատրաստելու խնդիրներին։ Արտադրաուժերի աննախընթաց վերելքի շնորհիվ ծնվում են նոր մասնագիտություններ։

Ժամանակին Կ. Մարքսը նշել է. «Եթե գործարանային օրենսդրությունը, որպես կապիտալից խլված առաջին խղճուկ զիջումը, գործարանային աշխատանքի հետ միայն տարրական ուսումն է կապում, ապա ոչ մի կասկած չի կարող լինել, որ բանվոր դասակարգի կողմից քաղաքական իշխանության անխուսափելի նվաճումը տեխնոլոգիական թե՛ տեսական և թե գործնական ուսուցման համար էլ պատշաճ տեղ կնվաճի բանվորական դպրոցներում» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 1, էջ 512)։

Վ. Ի. Լենինը, ի թիվս աշխատանքի արտադրողականության բարձրացման այլ գործոնների, նշել է բնակչության կրթական ու կուլտուրական մակարդակի, աշխատողների որակավորման բարձրացումը։ Քսանական թվականների սկզբներին, երբ երկիրն ավերված էր, բանվորների զգալի մասը



թողել էր արդյունաբերությունը և վերադարձել գյուղ, Լենինը ստորագրեց «Պրոֆեսիոնալ տեխնիկական ուսուցման մասին» Ժողկոմխորհի դեկրետը։ Ըստ այդ դեկրետի, 18—40 տարեկան բոլոր բանվորների համար մտցվեց պարտադիր պրոֆտեխուսուցում։ Լենինյան այդ դեկրետն իր մարմնավորումը գտավ նաև 1929 թ. ֆաբրիկագործարանային աշակերտության (ФЗУ) դպրոցների ստեղծման մեջ։ Դրանք խոշոր դեր խաղացին երկրում, առանձնապես ազգային հանրապետություններում հիմք դրվող ու զարգացող արդյունաբերության համար որակյալ բանվորական կադրերի պատրաստման ասպարեզում։ 1929—1940 թթ. այդ դպրոցներում պատրաստվեցին շուրջ 2,3 մլն որակյալ բանվորներ։

Ֆաբրիկագործարանային աշակերտության դպրոցների դերը գնահատելիս չի կարելի սահմանափակվել միայն որակյալ բանվորական կադրեր պատրաստելու գործում դրանց ունեցած նշանակությամբ։ Բանն այն է, որ մեր երկրում անցյալից ժառանգված գործազրկությունը՝ քաղաքներում և ագրարային գերբնակությունը՝ գյուղում 30-ական թթ. սկզբներին արդեն վերացված էին։ Սովետական իշխանության առաջին տարիներին, երբ ժողովրդական տնտեսությունը նոր էր վերականգնվում, անհնար էր համապատասխան աշխատանքով ապահովել ինչպես որակավորում ունեցող, այնպես էլ չունեցող բանվորներին։ Մինչև առաջին հնգամյակի սկզբները իրավիճակը կատարելապես փոխվեց։ Զարգացող և օրեցօր ընդլայնվող ժողովրդական տնտեսությունը որակյալ բանվորների խիստ կարիք էր զգում։ Բնական է, որ գործազուրկները մասնագիտություն և որակավորում չունեին։ 1927—1928 թթ. տնտեսական տարում նրանց 42 տոկոսը որակավորում չունեցող սևագործ բանվորներ էին, իսկ Հայկական ՍՍՀ-ում 1929 թ. աշխատանքի բորսաներում հաշվառված այդ կարգի գործազուրկները կազմում էին 58 տոկոս։ Աշխատուժի նկատմամբ ժողովրդական տնտեսության պահանջարկը առաջարկին գերազանցում էր 10 տոկոսով։ Ֆաբրիկագործարանային աշակերտության դպրոցների ցանցի ակտիվ գործունեության շնորհիվ հիմնականում բավարարվեցին որակյալ բանվորական կադրերի նկատմամբ պահանջները։ Միայն 1928—1929 ուստարում Սովետական Հայաստանի ֆաբգործաշդպրոցներում սովորեցին ավելի քան երկու հազար մարդ (Соцстроительство Арм. ССР (1920—1940 гг.), Стат. сбр., Е., 1940, стр. 113)։

Դրան զուգահեռ, 30-ական թվականներին, զարգացող արդյունաբերությունն ու շինարարությունը որակյալ աշխատուժով ապահովելու համար, ձեռնարկություններին կից կազմակերպվեցին բանվորների որակավորման և վերաորակավորման մասսայական պրոֆեսիոնալ աշակերտության դպրոցներ։ Ժողովրդական տնտեսության նոր ճյուղերի ստեղծման ու զարգացման հիման վրա սերտանում էին արտադրական և տնտեսական կապերն արդյունաբերության, տրանսպորտի ու վերակառուցվող գյուղատնտեսության միջև։ Իրականացվող սոցիալ-տնտեսական վերափոխությունների՝ մասնավորապես տարրական և ապա՝ յոթնամյա պարտադիր ուսուցումն իրականացնելու շնորհիվ բարձրանում էր բնակչության գրագիտության աստիճանը, զարգանում էին ոչ արտադրական ոլորտի ճյուղերը։ Տեխնիկական առաջընթացի նոր խնդիրներին համապատասխան աճում էին վերընթաց ապրող երկրի պահանջները բոլոր ասպարեզներում, այդ թվում նաև բանվորական որակյալ կադրերի պատրաստման բնագավառում։ Ֆաբրիկագործարանային աշակերտության դպրոցներն այլևս չէին բավարարում այդ նոր պահանջները։ Արդյունաբերությունը դարձել էր առավել բազմաճյուղ։ Ստեղծվում և արագ զարգանում էին դրա նորագույն և առաջադիմական ուղղությունները։ Որակյալ բանվորական կադրերի պահանջն աճում էր ինչպես քանակական առումով, այնպես էլ աշխատանքի խորացող բաժանման պահանջների համեմատ։ Խնդիրը բարդանում էր նաև այն պատճառով, որ դժվար էր հաշվառել համապատասխան կադրերի պատրաստման ժողովրդական տնտեսության ճշգրիտ պահանջները։ Իսկ դրանք անընդհատ փոփոխվում էին։ Բացի այդ առկա դպրոցները ենթարկվում էին տարբեր ժողկոմատների։ Դա բարդացնում էր ոչ միայն կադրերի

հեռանկարային պլանավորման խնդիրը, այլև՝ այդ բնագավառում համապետական միասնական քաղաքականության մշակումն ու իրականացումը։ Հիմնականում տարված լինելով առօրյա հոգսերով, տնտեսական մարմինները քիչ էին զբաղվում հեռանկարային պրոբլեմների պլանավորմամբ և լուծմամբ։ Կադրերի պատրաստման հարցում բացակայում էր փոխադարձ կապը տարբեր գերատեսչությունների միջև։ Մեծ էր կադրերի պահանջը հատկապես նորակառույց ձեռնարկություններում, և օբյեկտիվորեն հասունանում էր կադրերի պատրաստման մի այնպիսի համակարգի ստեղծումը, որը համապատասխաներ միասնական համապետական պլանի պահանջներին և ապահովեր ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման ոչ միայն ընթացիկ, այլև հեռանկարային խնդիրների լուծումը։ Բանվորական կադրերի պատրաստման համակարգը պետք է հաշվի առներ աշխատանքի փոփոխման օրենքի օբյեկտիվ պահանջները։

1940 թ. ֆաբգործաշդպրոցների փոխարեն հիմնվեց պետական աշխատանքային ռեզերվների համակարգը։ Արդյունաբերությունը, շինարարությունը և տրանսպորտը որակյալ բանվորական կադրերով ապահովելու համար այդ թվականից սկսեց գործել նաև պրոֆտեխնիկական կրթության ուսումնարանների ու դպրոցների ցանցը՝ հանձինս արհեստագործական ու երկաթուղային ուսումնարանների, ֆաբրիկագործարանային ուսուցման դպրոցների։ Հետագայում ստեղծվեցին նաև այլ տիպի ուսումնական հաստատություններ։ Կազմավորվեց ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը բանվորական կադրերով համալրելու մի այնպիսի համակարգ, որը լուրջ քննություն բռնեց նաև պատերազմի տարիներին՝ ռազմական տնտեսության պայմաններում։ Համապետական պլանավորման միջոցով հնարավոր եղավ որոշակի փոխադարձ կապ ստեղծել բանվորական կադրերի ուսուցման համակարգի և արտադրության միջև։ 1941 թ. հունվարին ՍՍՀՄ-ում արդեն գործում էին պրոֆտեխկրթության 1.551 ուսումնարան ու դպրոց՝ 602 հազար սովորողներով, ներառյալ երեկոյան (հերթափոխային) բաժանմունքները։ 1941—1945 թթ. այդ հաստատություններում պատրաստվեցին 2 մլն 475,2 հազար բանվորներ[1]։

Հետպատերազմյան տարիներին բնորոշ էր ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացումն ինդուստրիալ հիմունքներով։ Ստեղծվեցին արդյունաբերական նոր ու նորագույն ճյուղեր։ Առավել խորացան արտադրական-տնտեսական կապերը ոչ միայն արդյունաբերության առանձին ճյուղերի, այլև դրա ու ժողովրդական տնտեսության մյուս բոլոր ճյուղերի միջև։ Արդյունաբերության վերելքի շնորհիվ գյուղատնտեսության, շինարարության, տրանսպորտի, կապի, ոչ արտադրական ոլորտի ճյուղերում բարձրացավ մեքենայացման աստիճանը, ապահովվեց դրանց հետագա ինդուստրացումը։ Աշխատանքի խորացող բաժանման և ձեռնարկությունների տեխնիկական վերազինման համեմատ վերակառուցվեց նաև պրոֆտեխնիկական կրթության համակարգը, խորացավ ուսուցման այդ ցանցի մասնագիտացումը։ Ստեղծվեցին պրոֆտեխնիկական ուսումնական հաստատություններ արտադրության առանձին ճյուղերի համար։ 1946 թ. այդպիսի հաստատությունների թիվը 1941 թ. գերազանցեց 937-ով, իսկ 1955 թ. հասավ 3.123-ի, որոնցում սովորում էին 753 հազար մարդ։ Միայն 1951—1960 թթ. պատրաստվել են ավելի քան 5,7 մլն որակյալ բանվորներ։

Պրոֆտեխնիկական կրթության ցանցում 1953 թ. կազմակերպվեցին մեխանիզատորական կադրերի պատրաստման ուսումնարաններ։ Մինչ այդ գյուղի համար կադրերը պատրաստվում էին միայն գյուղատնտեսության մինիս-

[1] Այս և հետագայում բերված տվյալները հաշվարկված են ըստ Народное хозяйство СССР, 1959, 1967, 1968, 1970, 1974, 1978, 1979, 1980 և 1984 թվականների վիճակագրական տարեգրքերի, «Народное образование, Наука и культура в СССР», М., 1977, «Труд в СССР», М., 1968, «Народное хозяйство Арм. ССР», 1964, 1970, 1974, 1978, 1979, 1980, 1983, «Труд в Арм. ССР», Е., 1970 վիճակագրական ժողովածուների։



տրության դպրոցներում ու դասընթացներում։ 1951—1960 թթ. երկրի գյուղատնտեսության համար պատրաստվեցին միլիոնավոր մեխանիզատորական կադրեր (պրոֆտեխուսումնարաններում, ինչպես նաև անմիջականորեն կոլտնտեսություններում, սովխոզներում և գյուղատնտեսական այլ ձեռնարկություններում)։

1954 թ. կազմակերպվեցին տեխնիկական ուսումնարաններ. սկսվեց պրոֆտեխկրթության ուսումնարանների ու դպրոցների վերակազմումը քաղաքային և գյուղական պրոֆեսիոնալ տեխնիկական ուսումնարանների։ Չնայած ՀՍՍՀ-ում տնտեսության բուռն զարգացմանը, հիսունական թվականներին այստեղ կադրերի պատրաստումը դեռևս մեծ մասշտաբներ չուներ։ Այսպես, հանրապետության պրոֆտեխնիկական հաստատություններում (1951—1960 թթ.) պատրաստվել են ընդամենը 19,6 հազար որակյալ բանվորական և 18 հազար մեխանիզատորական կադրեր։ Ընդ որում այդ տարիներին Միության արդյունաբերության մեջ բանվորների թվական աճը կազմում էր տարեկան 4,2, իսկ ՀՍՍՀ-ում՝ 6,6 տոկոս։ Նշված տասնամյակում ՀՍՍՀ արդյունաբերական բանվորների թիվն ավելացավ 55 հազարով։ Չնայած հանրապետության արդյունաբերության մեջ բանվորների թվական աճի գործակիցը գերազանցել է երկրի համապատասխան միջին ցուցանիշը, բայց պրոֆտեխնիկական ուսումնական ցանցում պատրաստված որակյալ բանվորների աճը զգալիորեն պակաս է եղել։ Հանրապետության արդյունաբերության մեջ աշխատանքի ընդունված բանվորների մեծ մասը չի ունեցել պրոֆեսիա ու մասնագիտություն և այն ձեռք է բերել անմիջականորեն աշխատանքի պրոցեսում։ Օրինակ, 1951—1960 թթ. ՀՍՍՀ արդյունաբերության մեջ անմիջապես արտադրությունում պատրաստվել է 285 հազար բանվոր։ Մինչև 1960 թ. տարեկան մոտ 100 հազար որակյալ բանվորներ պատրաստվել են ֆաբրիկագործարանային աշակերտության դպրոցներում։ 1929—1966 թթ. այդ տիպի և մյուս դպրոցները տվել են շուրջ 4 մլն շրջանավարտ։

60-ական թվականներից երկրի տնտեսական զարգացման համար ավելի ու ավելի բնորոշ դարձան հասարակական աշխատանքի բաժանման հետագա խորացումը և արտադրության տեխնիկական բազայի վերազինումը։ Դա իր արտահայտությունը գտավ տեխնոլոգիական պրոցեսներում էլեկտրաէներգիայի լայն կիրառման, արտադրության կոմպլեքսային մեքենայացման, ավտոմատացման ու քիմիացման մեջ։ Առավել ինտենսիվ բնույթ ընդունեց հին մասնագիտությունները նորերով փոխարինելու պրոցեսը ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում։ Արտադրության ճյուղերի շերտավորման խորացումը հանգեցրեց նոր պրոֆեսիաների բանվորական որակյալ կադրերի պահանջի ավելացմանը։

60-ական թվականների վերջերին հասարակական արտադրության համար կադրերի պատրաստման բնագավառում դրսևորվեցին նոր օրինաչափություններ, որոնք իրենց արտահայտությունը գտան ինչպես քանակական աճի, այնպես էլ պրոֆիլի ընդլայնման մեջ։ Այդ առանձնահատկությունների դրսևորման համեմատ ընդլայնվեց աշխատանքի փոփոխման օրենքի գործողության ոլորտը։ Նախկինում, երբ արտադրության տեխնիկական զինվածության շրջանակները նեղ էին, իսկ ընդլայնվող և նորակառույց ձեռնարկությունները գերազանցապես խարսխվում էին ոչ թե նորագույն տեխնիկայի, այլ առկա սարքավորումների բազայի վրա, այդ օրենքը չուներ դրսևորման լայն ասպարեզ։ Նախ, տվյալ դեպքում, արտադրության գրեթե անփոփոխ տեխնիկական բազան չի առաջադրում բանվորական կադրերի պատրաստման այնպիսի պահանջ, որը բխեր նոր պրոֆեսիաների ու մասնագիտությունների երևան գալուց։ Տվյալ դեպքում պարզապես ավելանում է նախկին պրոֆեսիոնալ որակական խումբը ներկայացնող բանվորների թիվը։ Երկրորդ, արտադրությունից հեռացած կադրերը (թոշակավորվելը, զինվորական ծառայության մեկնելը, սովորելու նպատակով աշխատանքից ազատվելը և այլն) փոխարինվում են գրեթե նույն պրոֆեսիոնալ մակարդակի բանվորներով։ Դա նշանակում է, որ աշխատուժի ընդլայնված վերարտադրությունն ընթանում էր էքստենսիվ ուղիով։ Հետպատերազմյան տարիներին արդեն գերազանցում էր վերարտա-

դրության ինտենսիվացման ուղին, և ինչպես երկրում, այնպես էլ Հայկական ՍՍՀ-ում ժողովրդական տնտեսության համար հեռանկարային մասնագիտություններով կադրերի պատրաստումը դարձավ առաջնահերթ խնդիր։

Երկար ժամանակ անմիջականորեն արտադրության մեջ պատրաստվող բանվորների թիվը գերազանցել է պրոֆտեխնիկական կրթության համակարգում պատրաստվածներին։ Այդուհանդերձ, միտումն այն է, որ արտադրություն մուտք գործողների ընդհանուր թվի մեջ ավելանում է պրոֆտեխնիկական ուսումնական ցանցում կրթություն ստացածների տեսակարար կշիռը։

Միջնակարգ կրթությամբ բանվորական կադրերի պատրաստման պրոֆեսիոնալ համակարգը, որը կյանք մտավ 70-ական թվականների սկզբներին, թելադրվում էր գիտատեխնիկական առաջընթացի հետագա զարգացմամբ։ Այսօրվա, առավել ևս մոտ ապագայի բանվորը պետք է ունենա տեխնիկական լուրջ գիտելիքներ, տիրապետի մաթեմատիկայի, ֆիզիկայի, քիմիայի հիմունքներին, լավատեղյակ լինի արտադրության կառավարմանը, տեխնոլոգիական բարդ պրոցեսներին։ Դրանք կոմպլեքսային մեքենայացված, ավտոմատացված արտադրության նոր պահանջներ են, որ առաջադրվում են պրոֆտեխնիկական ուսուցմանը։

Ելնելով օբյեկտիվորեն ծագող նոր խնդիրներից՝ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի հատուկ որոշմամբ 70-ական թվականներին կազմակերպվեցին միջնակարգ կրթությամբ պրոֆեսիոնալ տեխնիկական ուսումնական հաստատություններ, որոնցում ընդգրկվում են ութնամյա կրթությամբ պատանիներ ու աղջիկներ։

Միջնակարգ պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանը որակյալ բանվորական կադրերի պլանաչափ պատրաստման, ինչպես նաև ժողովրդական տնտեսության համապատասխան ճյուղերի համար նրանց վերապատրաստման հիմնական ձևն է։ Նրա վրա մասնավորապես դրված են երիտասարդության մասնագիտական և ընդհանուր միջնակարգ կրթության իրականացումը, ժողովրդական տնտեսության համար բազմակողմանիորեն զարգացած, տեխնիկապես կիրթ, որակյալ բանվորների պատրաստումը, որոնք տիրապետում են մասնագիտական վարպետության ու գիտատեխնիկական առաջադիմության պահանջներին համապատասխանող՝ արտադրության հիմունքների խոր գիտելիքների։

Միջնակարգ պրոֆտեխուսումնարանում ուսումնադաստիարակչական պրոցեսն իրականացվում է ուսուցումը արտադրական աշխատանքի հետ միացնելու լենինյան սկզբունքի հիման վրա և ապահովում սովորողների ուսուցման ու դաստիարակության խիստ հաջորդայնությունը հանրակրթական դպրոցի հետ։ Ուսումնարանում հանրակրթական պատրաստության մակարդակը համապատասխանեցվում է միջնակարգ կրթության՝ մեր երկրում սահմանված միասնական մակարդակին։ Ուսուցման այս համակարգում ընդունելության մասշտաբները տարեցտարի մեծանում են։

Պրոֆտեխուսուցման պետական համակարգի անցումը միջնակարգ կրթությամբ բանվորական մասնագետ կադրերի պատրաստման՝ լիովին համապատասխանում է զարգացած սոցիալիզմի արդի պահանջներին։ ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումներին համապատասխան՝ ընդլայնվում և զարգանում է պրոֆեսիոնալ տեխնիկական ուսումնական հաստատությունների համակարգը։ Այսօր մեր հանրապետությունում գործում են 92 պրոֆտեխուսումնարաններ՝ մոտ 47 հազար սովորողներով, այդ թվում՝ 56 միջնակարգ պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարան, որտեղ սովորում են շուրջ 30 հազար պատանիներ ու աղջիկներ։ Առաջընթացն ակներև է, սակայն այդ կարևոր գործում առկա են լուրջ թերություններ, որոնք վերհանվեցին ՍՄԿԿ Կենտկոմի «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» որոշման մեջ։ Այստեղ նշված է, որ, անտեսելով ժողովրդական տնտեսության ռեալ պահանջմունքներին համապատասխան բանվորական կադրերի պատրաստման սկզբունքը, հաստոցավարների, փողողների, տեքստիլագործների պակասի պայմաններում, պրոֆտեխուսումնարաններում առա-



տորեն պատրաստվել են ոսկերիչներ, խոհարարներ, վարսավիրներ։ Այժմ լուրջ հետևություններ են արվում՝ բարելավելու բանվորական կադրերի պատրաստման գործը։

Պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսուցման համակարգի զարգացման նոր փուլ նշանավորեց սովետական դպրոցի ռեֆորմը։ Ներկայումս գոյություն ունեցող տարբեր տիպի պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնական հաստատությունները վերակազմվում են մեկ միասնական տիպի ուսումնական հաստատության՝ միջնակարգ պրոֆեսիոնալ տեխնիկական ուսումնարանի՝ ըստ մասնագիտությունների և ուսուցման ժամկետների։ Միջնակարգ պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանները մասնագիտացվում են ժողովրդական տնտեսության համապատասխան ճյուղերի համար բարձրորակ բանվորների պատրաստման բնագավառում և ստեղծվում են արտադրամիավորումների, ձեռնարկությունների, կառույցների ու կազմակերպությունների բազայի վրա, իսկ գյուղական վայրերում՝ շրջանային ագրոարդյունաբերական միավորումների, սովխոզների, կոլտնտեսությունների, միջտնտեսային ձեռնարկությունների բազայի վրա։

Գիտատեխնիկական առաջընթացի արագացման հարցերին նվիրված համամիութենական խորհրդակցությունում նշվեց տեխնիկական առաջադիմության շնորհիվ ծնվող նոր մասնագիտությունների կադրերի պատրաստման սիստեմատիկ աշխատանք կատարելու առանձնահատուկ հրատապությունը։ Այդ խնդրի իրականացման գործում լուրջ անելիքներ ունի պրոֆեսիոնալ տեխնիկական կրթության համակարգը, որին նույնպես հասցեագրված են ընկեր Մ. Ս. Գորբաչովի խոսքերը. «Մենք հատկապես շատ ենք ակնկալում երիտասարդությունից, նրա եռանդից ու պրպտուն մտքից, ամեն տեսակի նորի, առաջավորի նկատմամբ նրա հետաքրքրությունից»։

Գիտատեխնիկական առաջընթացի արդի փուլին բնորոշ է առանձին մեքենաների ստեղծումից անցումը տեխնոլոգիական ողջ պրոցեսն ընդգրկող մեքենաների սիստեմների մշակմանն ու արմատավորմանը, արտադրության աշխատատար տեսակների մեքենայացմանը, առաջին հերթին՝ այն ճյուղերում, որտեղ զգալի թվով բանվորներ զբաղված են ձեռքի աշխատանքով, ինչպես նաև վնասակար արտադրապայմաններ ունեցող տեղամասերում։ Դա նշանակում է, որ այսուհետև առավել ինտենսիվ կլինեն հին պրոֆեսիաները նորերով փոխարինելու, ցածր որակավորում պահանջող և ձեռքի ծանր աշխատանքներն աստիճանաբար վերացնելու պրոցեսները։

Որակյալ բանվորական կադրերի դերն առավել աճում է աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում։ Ուստի կադրերի պատրաստման համակարգի հետագա կատարելագործումն օբյեկտիվ անհրաժեշտություն է և բխում է երկրի առջև ծառացած սոցիալ-տնտեսական ու քաղաքական պրոբլեմների, հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման անհետաձգելի խնդիրների լուծման պահանջներից։

Պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնական համակարգի զարգացումն ու ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը որակյալ բանվորական կադրերով ապահովումը հնարավորություն են ընձեռում հաջողությամբ իրականացնելու գիտատեխնիկական առաջընթացի արագացման, տնտեսության ինտենսիվ զարգացման՝ կուսակցության կանխադրած ծրագիրը։

---

# ՈՉ ՄԵՏԱՂԱԿԱՆ ՌԵՍՈՒՐՍՆԵՐԻ ՌԱՑԻՈՆԱԼ ՕԳՏԱԳՈՐԾՄԱՆ ՀԱՄԱՐ

**Մ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ**
**Ա. ԴԱՐԲԻՆՅԱՆ**

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ արդյունավետության բարձրացման կարևոր միջոց է նյութական ռեսուրսների խնայողական և ռացիոնալ օգտագործումը։ Գիտատեխնիկական առաջադիմության արագացման հարցերին նվիրված խորհրդակցությունում ընկեր Մ. Ս. Գորբաչովը նշեց. «...ռեսուրսախնայողությունը պետք է լինի ինվեստիցիոն քաղաքականության գլխավոր ուղղություններից մեկը։ Խնդիրն այն է, որ ժողովրդական տնտեսության վառելիքի, հումքի և նյութերի պահանջմունքների աճը 75—80 տոկոսով բավարարվի դրանց տնտեսման հաշվին»։ Տնտեսագետների հաշվարկներով, մեր երկրում նյութական ծախսերի միայն մեկ տոկոս կրճատման հաշվին ազգային եկամուտը տարեկան կավելանա 6 մլրդ ռուբլով, կտնտեսվի 30 մլրդ ռուբլու կապիտալ ներդրում, լրացուցիչ կթողարկվի 10 մլրդ ռուբլու արտադրանք։

Նյութական ռեսուրսների մեջ առաջնակարգ տեղ են գրավում հանածո հումքատեսակները։ Երկրի տնտեսական պոտենցիալի զարգացումը,— նշվեց ՍՄԿԿ XXVI համագումարում,— մեծապես որոշվում է հանքահումքային ռեսուրսների վիճակով։ Հնգամյակում երկրաբանական-հետախուզական աշխատանքները տարվելու են է՛լ ավելի լայնորեն ու հաստատակամորեն։ Մեր պարտքն է, որքան էլ մեծ լինեն բնական ռեսուրսների մեր պաշարները, մշտապես որոնել դրանց արդյունահանման և խնայողական օգտագործման առավել ռացիոնալ ուղիներ (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 183)։ Հանքահումքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման հրատապությունը պայմանավորված է նրանով, որ դրանց պաշարները սահմանափակ են, անվերարտադրելի և անհրաժեշտ է բարձրացնել շրջակա միջավայրի պահպանության և հասարակական արտադրության արդյունավետությունը։ Արդյունահանված հումքի ոչ լրիվ օգտագործման հետևանքով նրա մի զգալի մասը վեր է ածվում թափոնների, իսկ բնահումքի այդ տեսակի ժողովրդատնտեսական պահանջարկը բավարարելու նպատակով նոր հանքավայրերի շահագործումը զգալի կապիտալ ներդրումներ է պահանջում։ Դրա հետ մեկտեղ, լրացուցիչ ծախսեր են պահանջվում շրջակա միջավայրը աղտոտումից պահպանելու, թափոնների լցակույտերից հողատարածքները մաքրելու, դրանք գյուղատնտեսությանը վերադարձնելու և այլ միջոցառումների համար։ Ուրեմն, բնահումքի ռացիոնալ օգտագործման շնորհիվ արդյունահանման ու վերամշակման փուլերում կարելի է տնտեսել զգալի միջոցներ և դրանք ուղղել ժողովրդական տնտեսության այլ ճյուղերի զարգացմանը։

Նշված խնդրի լուծումը հրատապ է մեր հանրապետության նաև ոչ մետաղական հումք արդյունահանող ու վերամշակող արդյունաբերության ճյուղերի համար։ Չնայած վերջին տարիներին հանրապետության ժողովրդական տնտեսության և առանձնապես շինարարության բուռն վերելքին, ոչ մետաղական նյութերի արդյունահանումը նվազել է։ Այսպես, 1980—1983 թթ. շի-



նաքարերի արդյունահանումը պակասել է 11,7 տոկոսով, երեսպատման քարերինը՝ 25,3, պեռլիտինը՝ 25,9 տոկոսով։ Միայն պեմզայի արդյունահանումն է ավելացել 21,9 տոկոսով։ Նշված ժամանակահատվածում ոչ մետաղական նյութերի արդյունահանման տեմպերի դանդաղումը հիմնականում պայմանավորված է շահագործվող հանքավայրերի աղքատացմամբ և, նոր գործարկվող հանքավայրերի համեմատ, կոնսերվացվողների զգալի գերակշռմամբ։

Հանրապետության ոչ մետաղական ռեսուրսների արդյունահանումն ուղեկցվում է դրանց թափոնների ծավալի անընդհատ ավելացմամբ։ Ի դեպ, թափոնն ինքնին հարաբերական հասկացություն է։ Միևնույն հումքն անգամ միևնույն ճյուղի մի ձեռնարկությունում կարող է թափոն լինել, մյուսում՝ ոչ։ Օրինակ, շինանյութերի արդյունաբերության մինիստրության «Արագած-պեռլիտ» գործարանում թափոններ չկան, մինչդեռ նույն մինիստրության այլ ձեռնարկություններում դրանք մեծ ծավալ են կազմում։ Մի ճյուղի թափոնը կարող է մեկ ուրիշ ճյուղի համար երկրորդային կամ նույնիսկ հիմնական հումք հանդիսանալ։ Եվ, վերջապես, եթե գիտության ու տեխնիկայի զարգացման այսօրվա մակարդակի պայմաններում մեծ չափերի թափոններ են առաջանում, ապա մոտ ապագայում փակ ցիկլերով տեխնոլոգիաների ստեղծման շնորհիվ կորուստները կարելի է բացառել կամ հասցնել նվազագույնի։ Հետևաբար, կարծում ենք, առավել ճիշտ կլինի «թափոն» հասկացության փոխարեն գործածել «երկրորդային հումք» հասկացությունը։

1984 թ. վերջերին ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն քննության առնելով «Ժողովրդական տնտեսության մեջ երկրորդային նյութական ռեսուրսների օգտագործման լուրջ թերությունների մասին» հարցը, խնդիր դրեց. «...արագացնել երկրորդային հումքի վերամշակման կարողությունների ստեղծումը, արտադրության վերակառուցումն ու արդիականացումը՝ սակավամնացուկ և անմնացուկ տեխնոլոգիաներ արմատավորելու, ուղեկից արգասիքներ և արտադրության մնացուկներ օգտագործելու հիման վրա»։ Ներկայումս մեր հանրապետությունում կուտակվել են ավելի քան 26 մլն խմ քարային նյութերի մնացուկներ, որոնք զբաղեցնում են մոտ 1.000 հեկտար տարածք։ Դրանց առաջացումը պայմանավորված է մի շարք պատճառներով, որոնցից մեկը բնական գործոնն է։ Այսպես, երեսպատման սալիկների արտադրության համար արդյունահանվող տուֆի թափոնների 55—56 (առանձին հանքավայրերում՝ մինչև 75), բազալտի՝ 60—70, մարմարի՝ 70—80 տոկոսը առաջանում է ապարի բնական թերությունների հետևանքով։

Հանրապետության ոչ մետաղական ռեսուրսների արդյունավետ օգտագործմանը խոչընդոտող պատճառներից մեկն էլ տեխնիկական բազայի ցածր մակարդակն է։ Ներկայումս հանրապետության ոչ մետաղական հումք արդյունահանող և վերամշակող ձեռնարկություններում օգտագործվող տեխնիկան և տեխնոլոգիան դեռևս չեն համապատասխանում ժողովրդական տնտեսության առաջադրած պահանջներին։ Այսպես, տուֆի հանքավայրերում մնացուկների 40—50 տոկոսը մեքենայական քարհատման պրոցեսում մանրաքարեր առաջանալու հետևանք է։ Շատ դեպքերում մեքենաների տեխնիկական հնարավորությունները չեն ապահովում հանքավայրերի ստորին քարաշերտերի արդյունահանումը, որի հետևանքով քարային ռեսուրսների զգալի մասը մնում է մնացուկների լցակույտերի և լեռնազանգվածների տակ։ Ինչպես նախկինում, այնպես էլ այժմ հանրապետության քարի հանքավայրերի շահագործման ժամանակ արդյունահանվում է ամբողջ հանքաշերտի 20—40 տոկոսը միայն։ Տուֆի հանքավայրում արդյունահանվում է հանքաշերտի 30—40, բազալտի՝ 25—35, մարմարի՝ 25—30, գրանիտի՝ 20—25 տոկոսը։ Իսկ մի շարք հանքավայրերում՝ դրանից էլ քիչ։ Այսպես, Բյուրականի տուֆի հանքավայրում 9,9 մ հաշվարկային խորություն ունեցող պաշարից արդյունահանվում է 2 մետրը, Քարինջի բազալտի հանքավայրում՝ 23 մետրից 5 մետրը, Աղվերանի մարմարի հանքավայրում՝ 122 մետրից 15 մետրը։ Միայն առանձին հանքավայրերում է, որ արդյունահանվում է ամբողջ հանքաշերտը (Արթիկի տուֆի հանքավայրի արևելյան և Ջրականի տեղամասերում, Արզականի բազալտի հանքավայրերում և այլն)։ Ուստի հանրապետության ոչ

մետաղական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման համար գործնական մեծ նշանակություն ունի հումքի կոմպլեքսային օգտագործման, մնացուկների և կորուստների հաշվառման ու վերահսկողության ճիշտ կազմակերպումը։ Հաշվետվությունների գործող համակարգը հնարավորություն չի ընձեռում պատկերացում կազմել առկա մնացուկների ծավալի, բնահումքի արդյունահանման և մշակման ընթացքում կորուստների, հումքի օգտագործման կոմպլեքսայնության աստիճանի մասին։ Չնայած 1974 թվականից ժողովրդական տնտեսության հումք արդյունահանող և վերամշակող բոլոր ճյուղերում մտցված է օգտակար հանածոների կոմպլեքսային օգտագործման մասին վիճակագրական տարեկան հաշվետվության հատուկ ձև, սակայն մեզ մոտ այն դեռևս չի կիրառվում։ Նույնիսկ ձեռնարկությունների անձնագրերում, որոնք կազմվում են հանրապետության շինանյութերի արդյունաբերության մինիստրությունում, հումքի կոմպլեքսային օգտագործման, մնացուկների և կորուստների վերաբերյալ տեղեկություններ չկան։ Դա խոչընդոտում է հանքավայրերում ոչ մետաղական ռեսուրսների օգտագործման փաստացի վիճակի օբյեկտիվ գնահատումը, կորուստների չափի, գոյացող և առկա մնացուկների ծավալի, լցակույտերի զբաղեցրած հողատարածքի մակերեսի որոշումը և բացահայտելու հումքի առավել արդյունավետ օգտագործման ուղիները։

Հանրապետության մետաղական ռեսուրսների օգտագործման ցածր արդյունավետությունը պայմանավորված է նաև ընդերքի հարստությունների գնահատման, պետության և հումք արդյունահանող ձեռնարկությունների միջև տնտհաշվարկային հարաբերությունների գործող կարգի թերություններով։ Տնտեսագիտական գրականության մեջ ընդերքի հարստությունների (այդ թվում նաև՝ ոչ մետաղական ռեսուրսների) տնտեսական (արժեքային) գնահատման վերաբերյալ միասնական տեսակետ դեռևս չկա։ Տեսական հարցերի «անհամաձայնեցվածությունն» իր արտացոլումն է գտել այդ ռեսուրսների պլանավորման և ֆինանսավորման պրակտիկայում։ Ներկայումս երկրաբանահետախուզական աշխատանքները հիմնականում ֆինանսավորվում են պետական բյուջեի հաշվին։ Հումքային, այդ թվում նաև ոչ մետաղական բոլոր տեսակի ռեսուրսների հետախուզված պաշարներն արդյունահանող ձեռնարկություններին են տրվում անվճար։ Ուստի վերջիններս միշտ չէ, որ շահագրգռված են հանքավայրերի կոմպլեքսային շահագործմամբ։

Ընդերքի հարստությունների ռացիոնալ օգտագործման, երկրաբանահետախուզական և արդյունահանող ճյուղերի միջև տնտհաշվարկային հարաբերությունների կատարելագործման նպատակով ճիշտ կլինի ընդերքի միավոր հաշվեկշռային պաշարի համար սահմանել մեծածախ և հաշվարկային գներ։ Արդյունահանող ձեռնարկությունները, ընդերքի հարստությունները շահագործելիս, արդյունահանված հանածո հումքի քանակին ու որակին համամասնաբար սահմանվելիք այդ գների միջոցով կփոխհատուցեն երկրաբանահետախուզական կազմակերպությունների ծախսերը (նորմայի սահմաններում)՝ ապահովելով նաև այդ կազմակերպությունների նորմատիվային շահույթը։ Իսկ դիֆերենցիալ ռենտայի առկայության պայմաններում այն ամբողջովին կփոխանցվի պետական բյուջե։ Ինչ խոսք, երկրաբանահետախուզական ճյուղի «արտադրանքի» համար գնի սահմանումը կբարձրացնի գործող մեծածախ գները։ Ուստի սկզբնական շրջանում անհրաժեշտ կլինի այդ ճյուղի «արտադրանքի» գինը սահմանել՝ ելնելով ոչ թե դիֆերենցիալ ռենտայի մեծությունից (որը տեսականորեն միակ ճիշտ մոտեցումն է), այլ՝ ուրիշ տնտեսագիտական մեծություններից, օրինակ, օգտակար հանածոների հետախուզման ծախսերից (տե՛ս Экономические проблемы оптимизации природопользования, М., 1973, стр. 28)։

Ոչ մետաղական ռեսուրսների անարդյունավետ օգտագործման պատճառներից մեկն էլ դրանց հանքավայրերի շահագործման գերատեսչական առանձնացվածությունն է։ Ներկայումս մեզ մոտ ոչ մետաղական ռեսուրսներն արդյունահանվում են միութենական և հանրապետական տասնմեկ գերատեսչությունների կողմից։ Ընդ որում շինաքարերը, պեմզան և հրաբխային խարամը



արդյունահանվում են հինգ, պեռլիտը և երեսպատման քարերը՝ երեք, ավազամանրախճային նյութերը՝ չորս գերատեսչությունների կողմից։ Նույնիսկ միևնույն հանքավայրի առանձին տեղամասեր (իսկ որոշ դեպքերում նաև միևնույն տեղամասը) շահագործում են տարբեր գերատեսչություններ։ Այսպես, Գյումուշի պեմզայի հանքավայրը շահագործում են ՀՍՍՀ արդյունաբերական շինարարության մինիստրության «Հայներուդ» տրեստը և «Հայհիդրոէներգաշինի» «Շինինդուստրիա» արտադրամիավորումը։ Ջրաբերի պեռլիտի հանքավայրի հարավ-արևմտյան տեղամասը շահագործում են նույն «Հայներուդ» տրեստը և ՀՍՍՀ շինանյութերի արդյունաբերության մինիստրության Աբովյանի շինանյութերի և շինարարական իրերի կոմբինատը։ Հանքավայրերի «տերերի» այսպիսի բազմազանության պայմաններում բնահումք արդյունահանող ձեռնարկությունները, ելնելով իրենց պլանային առաջադրանքներից, միակողմանիորեն են մոտենում ընդերքի հարստությունների ռացիոնալ օգտագործման հարցերին։ Տարբեր մինիստրությունների և գերատեսչությունների ենթակա ձեռնարկությունները նյութապես շահագրգռված չեն հումքի կոմպլեքս օգտագործմամբ։ Այսպիսի պայմաններում, բնականաբար, հնարավոր չէ շահագործվող հանքավայրերում իրականացնել ինչպես ֆինանսական, այնպես էլ տեխնիկական միասնական քաղաքականություն։

Ոչ մետաղական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման անհրաժեշտ պայմաններից մեկը, մեր կարծիքով, հանրապետության տարածքում գտնվող հանքավայրերը շահագործող բոլոր ձեռնարկությունների կենտրոնացումն է մեկ գերատեսչության մեջ։ Դա թելադրվում է ֆինանսական, տեխնիկական և կադրային միասնական քաղաքականություն իրականացնելու միջոցով հումքը ռացիոնալ օգտագործելու, շրջակա միջավայրը աղտոտումից պահպանելու և մյուս խնդիրները լուծելու հրատապությամբ։ Կարծում ենք, ճիշտ կլինի հանրապետության ոչ մետաղական ռեսուրսների բոլոր հանքավայրերի շահագործումը կենտրոնացնել ՀՍՍՀ շինանյութերի արդյունաբերության մինիստրությունում։

Վերջինիս ենթակա ձեռնարկությունները ներկայումս շահագործում են հանրապետության ոչ մետաղական ռեսուրսների հանքավայրերի գերակշռող մասը, արդյունահանվող հումքը հիմնականում վերամշակվում է այդ համակարգի ձեռնարկություններում։ Մինիստրության ենթակայության տակ է նաև «Քար և սիլիկատներ» գիտաարտադրական միավորումը՝ համապատասխան գիտահետազոտական ինստիտուտով։ Այստեղ է կենտրոնացված համապատասխան մասնագետ կադրերի զգալի մասը։ Վերջապես, մինիստրության կազմում գործում են պայթեցման, հորատման, երկրաբանահետախուզական և այլ բնույթի աշխատանքներ իրականացնող հատուկ մասնագիտացված ծառայություններ։

Գիտության ու տեխնիկայի զարգացման արդի պայմաններում ոչ մետաղական հումքի օգտագործումը չի սահմանափակվում շինարարության տարբեր բնագավառներով։ Այդպիսի նյութերի քիմիական կազմը, ֆիզիկական և մեխանիկական հատկությունները հնարավոր են դարձնում դրանք օգտագործել ոչ միայն շինարարության, այլև ժողովրդական տնտեսության այլ ճյուղերում։ Ջերմաքիմիական մշակման շնորհիվ ոչ մետաղական նյութերից ստացվում են ձայնաջերմամեկուսիչ նյութեր, զտող փոշի, ապակի, արհեստական մանրաթել, բազալտե խողովակ, պլաստմասսա, ռետինե զանգված և արժեքավոր այլ նյութեր։ Ոչ մետաղական նյութերի, լազերային, էլեկտրամագնիսական, ատոմային և այլ մշակումների միջոցով հնարավոր է դրանք օժտել այնպիսի հատկություններով, որ փոխարինեն մետաղին, փայտին և այլ բնական նյութերի։

Հանրապետության ոչ մետաղական նյութերի օգտագործման արդյունավետ ուղիների որոնման բնագավառում որոշակի աշխատանքներ են կատարվում «Քար և սիլիկատներ» գիտաարտադրական միավորումում, ՀՍՍՀ ԳԱ ընդհանուր և անօրգանական քիմիայի ինստիտուտում և այլ գիտահետազոտական հաստատություններում։ «Քար և սիլիկատներ» միավորման գիտահետազոտական ինստիտուտում մշակվել է տուֆի մնացուկներից մուգ-կա-

նաշավուն ապակե տարաների արտադրության տեխնոլոգիան։ Փորձնական արտադրությամբ հաստատվել է այդ տեխնոլոգիայի գործնական կիրառման տնտեսական նպատակահարմարությունը։ Տուֆի մնացուկներից պատրաստված ապակե տարաները իրենց ֆիզիկաքիմիական հատկություններով ոչ միայն չեն զիջում, այլև մեխանիկական ամրությամբ 10—15 տոկոսով գերազանցում են Արզնու «Բյուրեղապակի» գործարանում թողարկված արտադրանքին։ Նման մնացուկներ օգտագործելիս մեկ տոննա ապակու բովախառնուրդի ինքնարժեքը 2,3 ռուբլով ավելի ցածր է, քան Արզնու արտադրանքինը։ 0,5 լ պարունակության ապակե շշերի տարայի նկատմամբ հանրապետության 1985 թ. պահանջարկը բավարարելու համար նախատեսվում է տեղում արտադրել 240 մլն շիշ և այլ հանրապետություններից ներմուծել ևս 57 մլն։ Մինչդեռ պրակտիկան ցույց է տալիս, որ 800 կմ և ավելի հեռավորությունից ապակե տարաների փոխադրումը տնտեսապես արդարացված չէ։ Եթե 1983 թ. առաջին եռամսյակում «Արարատ» հանքային ջրերի գործարանում Արզնիից ստացված տարայի փոխադրածախսը (1000 շշի հաշվով) կազմել է 0,85 ռուբլի, ապա Վոլգոգրադից ստացվածինը՝ 16,78 ռուբլի։ Հաշվարկները ցույց են տալիս, որ տուֆի մնացուկների կիրառմամբ կարելի է 300 մլն շշի (0,5 լիտր տարողությամբ) արտադրության ընթացքում տնտեսել շուրջ 345 հազար ռուբլի։ Այնպես որ ապակե տարաների արտադրության պրոցեսում տուֆի մնացուկների օգտագործման տնտեսական նպատակահարմարությունը կասկած չի հարուցում։ «Քար և սիլիկատներ» միավորման գիտահետազոտական ինստիտուտում մշակված է նաև գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման նպատակով ծակոտկեն քարանյութերի մնացուկներով հողի փխրեցման տեխնոլոգիան։ Բազմամյա հետազոտությունները վկայում են, որ նման նյութերը բարելավում են հողի կառուցվածքը և ֆիզիկական հատկությունները, կարգավորում ջրաօդային և ջերմաստիճանային ռեժիմը, պարարտացնում հողը (շնորհիվ իրենց պարունակած քիմիական տարրերի)։ Գյուղատնտեսության մեջ ծակոտկեն քարանյութերի օգտագործման նպատակահարմարությունն ապացուցված է նաև համաշխարհային պրակտիկայով։ Շատ երկրներում արտադրված պեռլիտի մի մասը օգտագործվում է գյուղատնտեսական նպատակներով։ Իտալական «Պեռլիտո» ֆիրման պեռլիտից արտադրում է «ագրոլիտ» նյութը, որն օգտագործվում է այգեգործության մեջ։

Մեր հանրապետությունը հարուստ է ծակոտկեն քարանյութերի տարբեր տեսակներով։ Այդ պատճառով էլ գյուղատնտեսական կարիքների համար տնտեսապես նպատակահարմար է պեռլիտի փոխարեն օգտագործել այլ ծակոտկեն քարանյութեր։ Դիտարկումներից պարզվել է, որ ծակոտկեն քարանյութերի կիրառման շնորհիվ վարունգի բերքատվությունը բարձրացել է 5,5, եգիպտացորենինը՝ 1,9, կարտոֆիլինը և շաքարի ճակնդեղինը՝ 1,8 անգամ։ Ծակոտկեն քարանյութերից առավել արդյունավետը տուֆն է։ Տուֆի կիրառման դեպքում բոլոր կուլտուրաների գծով բերքատվությունը բարձրացել է 2,7, հրաբխային խարամի՝ 1,85, պեմզայի՝ 1.466 անգամ։ Ընդ որում, մոտ տասը տարվա համար մեկ հեկտար հողատարածքում խառնվում է 60—90 խմ ծակոտկեն քարանյութերի մնացուկ։ Այսպիսով, ծակոտկեն քարանյութերի մնացուկներով հողի փխրեցումը դրանց ռացիոնալ օգտագործման կարևոր ուղիներից մեկն է։

Մեր հանրապետության ոչ մետաղական ռեսուրսների մեջ առանձնակի նշանակություն ունի պեռլիտը։ Իր ֆիզիկաքիմիական հատկությունների շնորհիվ պեռլիտը տարիներ շարունակ արժեքավոր հումք է եղել շինարարության համար։ Սակայն գիտատեխնիկական առաջընթացը մատնանշեց պեռլիտի արդյունավետ օգտագործման այնպիսի նոր բնագավառներ, որոնց համեմատությամբ շինարարական նպատակներով նրա օգտագործումը կարելի է արդեն շռայլություն համարել։ Ջերմային մշակման միջոցով պեռլիտից ստացվում են ջերմամեկուսիչ և ձայնամեկուսիչ նյութեր, զտող փոշի և բազմաթիվ այլ արժեքավոր նյութեր, որոնց նկատմամբ ժողովրդատնտեսական պահանջարկը աստիճանաբար մեծանում է։



ՀՍՍՀ ԳԱ ընդհանուր և անօրգանական քիմիայի ինստիտուտում մշակված տեխնոլոգիայի հիման վրա նույն ինստիտուտի փորձարարական գործարանում արտադրվում է «Արագած» մակնիշի զտող փոշի, որը արժեքավոր հումք է քիմիական և նավթաքիմիական, սննդի ու բժշկական արդյունաբերության համար։ Այն ոչ միայն չի զիջում, այլև մի շարք հատկություններով (արագացվում է զտումը, մեծանում է զտված հեղուկի մաքրության աստիճանը, բարելավվում է վերջնական արդյունքի որակը) գերազանցում է արտասահմանից ներմուծվող փոշիներին։ Հաշվարկված է, որ «Արագած-պեռլիտ» գործարանում փոշու արտադրության կազմակերպումը կտա տնտեսական զգալի արդյունք։

Սկսած 1960-ական թվականներից՝ գունավոր մետալուրգիայի հայկական գիտահետազոտական և նախագծային ինստիտուտում ու «Քար և սիլիկատներ» միավորման գիտահետազոտական ինստիտուտում հետազոտություններ են կատարվում քարանյութերի ձուլման տեխնոլոգիաների մշակման ու կատարելագործման բնագավառներում։ Ի դեպ, դեռևս 1931 թ. Երևանում գործել է բազալտի ձուլման փորձարարական գործարան։ Ձուլածո բազալտե իրերը մեծ կիրառում ունեն քիմիական արդյունաբերության մեջ։ Ուրալի Ձումակովոյի հարստացուցիչ ֆաբրիկայում ձուլածո բազալտե խողովակների կիրառումը հնարավորություն է տվել դրանց ծառայության ժամկետը հասցնել մինչև 10 տարվա և տնտեսել 2.400 տոննա մետաղ։

Ձուլածո բազալտե իրերը անփոխարինելի են էլեկտրատեխնիկական և քիմիական արդյունաբերությունում (մեկուսիչներ, թթվակայուն տարաներ, խողովակներ և այլն), շինարարությունում (առանձնապես ստորգետնյա և ստորջրյա շինությունների երեսպատման համար), երկաթուղու և մետրոյի շինարարությունում և այլուր։

Բնական ռեսուրսների ռեգիոնալ առանձնահատկությունները պարտավորեցնում են տնտեսական մեխանիզմը նպատակամղել դրանց ռացիոնալ օգտագործմանը։ Կապիտալ ներդրումների ծավալը և բաշխման ուղղությունները որոշելիս ճիշտ կլինի ելնել այդ ռեսուրսների արդյունավետ օգտագործման վերաբերյալ գիտական մշակումների կիրառման անհրաժեշտությունից։ Հարկավոր է նախագծել ու ներդնել այնպիսի տեխնիկա և տեխնոլոգիա, որոնք հնարավորություն կտան արդյունահանել հանքավայրերի ստորին քարաշերտերը և նվազագույն կորուստներով օգտագործել այդ արժեքավոր ռեսուրսները։

Սա արտադրության ինտենսիվացման և արդյունավետության բարձրացման կարևոր ուղիներից մեկն է։

---

# ՈՒՍՈՒՑՄԱՆ ԵՎ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԵՐՁԵՑՄԱՆ ՈՒՂԻՆԵՐԸ

Հ. ԲԱԴԱԼՅԱՆ
Մանկավարժական գիտությունների թեկնածու, դոցենտ

ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ անհատի համակողմանի դաստիարակությունն անքակտելիորեն միահյուսում է ուսուցումն ու արտադրողական աշխատանքը: Դեռևս անցյալի առաջադիմական մանկավարժական միտքը բազմիցս արծարծել է ուսուցման ու արտադրության կապի հետ առնչվող խնդիրները: Սոցիալիստական հասարակության մեջ ուսման և աշխատանքի միացումն ապահովում է աճող սերնդի բազմակողմանի կրթությունը, որը հանդիսանում է գիտական դաստիարակության գործնական հիմքը:

Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը, հետագայում նաև Վ. Ի. Լենինը դաստիարակության գլխավոր նպատակներից մեկը համարում էին երիտասարդությանը արտադրողական գործունեության նախապատրաստելը: Նշելով հին աշխարհին հատուկ դաստիարակության և նյութական արտադրության խզվածության հարցը, Լենինը գտնում էր, որ սովետական դպրոցի աշխատանքի բովանդակությունը և խնդիրները պետք է կապվեն ժողովրդական տնտեսության պահանջների հետ: Կրթության արատը նա համարում էր դրա կտրվածությունը արտադրությունից, կյանքից և պահանջում էր վերացնել այդ արմատական թերությունը, «սովորել կոմունիզմ»: Դա նշանակում է, որ երիտասարդությունը պետք է գիտակցորեն յուրացնի ու իմաստավորի մարդկության ստեղծած հոգևոր ու բարոյական արժեքները և դրանք կիրառի նոր պայմաններում, մասնակցի երկրի տնտեսական վերակառուցմանը: Ըստ Լենինի դաստիարակությունը, ուսուցումը արտադրողական աշխատանքի հետ կապելը պոլիտեխնիկական կրթության իրագործման միակ ճանապարհն է. պոլիտեխնիկական կրթություն ամենևին էլ չի նշանակում ամեն ինչի ուսուցում, այլ՝ տվյալ ժամանակի արտադրության հիմունքների ուսուցում ընդհանրապես:

Գիտատեխնիկական առաջընթացի արդի պայմաններում գիտությունը դառնում է անմիջական արտադրաուժ, վերակառուցվում է արտադրության ողջ պրոցեսը, ընդարձակվում են պոլիտեխնիկական կրթության ոլորտները, այն հարստանում է նոր բովանդակությամբ: Դա իր արտահայտությունն է գտնում դպրոցում դասավանդվող առարկաների ուսումնասիրության բնույթի, աշխատանքային ուսուցման ու դաստիարակության, ուսումնանյութական բազայի կազմակերպման և մանկավարժական կադրերի պատրաստման գործում:

Բնական և կիրառական գիտությունների շեշտակի զարգացումը, տեխնիկական վերազինումն ու նորացումը ստեղծում են նոր պայմաններ արտադրության մեջ գիտության ներդրման համար: Արդի գիտատեխնիկական առաջընթացի հիմնական և սկզբունքային ուղղությունը գիտության ու արտադրության միացումն է, գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրումը հասարակական արտադրության բոլոր բնագավառներում:

Զարգացած սոցիալիզմի պայմաններում ընդլայնվել, որակական նոր փոփոխություններ են կրել մեր դպրոցին ներկայացվող պահանջները: Հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի հիմնական ուղղություններում



նշվում է, որ հանրակրթական պատրաստությունը եղել և մնում է դպրոցական ուսուցման գլխավոր նպատակը: Ուսուցումը չի կարող կտրված լինել աշխատանքային դաստիարակությունից: Արդի գիտատեխնիկական առաջընթացի պայմաններում դրանք հանդես են գալիս որպես մի ամբողջություն, ուստի և այդ գործում դպրոցն ու բազային ձեռնարկությունը պետք է հավասարապես պատասխանատու լինեն իրենց համապետական պարտքի կատարման համար: Դպրոցի և արտադրության համագործակցությունը մեծապես նպաստում է սովորողների ճիշտ կողմնորոշմանը նաև հետագայում՝ արտադրության պրոցեսում:

Ռեֆորմով պահանջվում է աշակերտներին զինել ժամանակակից հաշվողական տեխնիկայի օգտագործման գիտելիքներով ու հմտություններով, ապահովել հիշասարքերի լայն կիրառումը ուսումնական պրոցեսում, դրա համար ստեղծել դպրոցական և միջդպրոցական հատուկ կաբինետներ: Այս գործին շահագրգիռ նյութական ու գործնական օգնություն պետք է ցույց տան ձեռնարկությունները, հասարակական կազմակերպությունները: Նախատեսված է դպրոցների բարձր դասարաններում «ինֆորմատիկա և հաշվողական տեխնիկայի հիմունքներ» առարկայի դասավանդումը, որը համարվում է սովորողների հանրակրթական պատրաստության հիմնական գումարելիներից մեկը:

Երկրի տարբեր հանրապետություններում ու մարզերում ժողովրդական կրթության մարմինները, կուսակցական կազմակերպությունների օգնությամբ, արտադրական ձեռնարկությունների համատեղ ջանքերով ստեղծել են արտադպրոցական ուսուցման և մասնագիտական կողմնորոշման համակարգեր՝ հաշվողական տեխնիկայի, հիշասարքերի օգտագործման հիման վրա: Շատ բազային ձեռնարկություններ այդ համակարգի մեջ ներառնում են մանկապարտեզ—դպրոց—ՈՒԱԿ—միջնակարգ դպրոց—ՊՏՈՒ շղթան, որի օղակների միջև ստեղծվում է հաջորդականություն և կրթության փոխանցելիություն. Նախորդ օղակը լավ պատկերացում է ստանում հաջորդ օղակի մասին, և դրան երեխան նախապատրաստվում է աստիճանաբար, հոգեբանորեն, ոչ թե պատահական ու հապճեպ:

Դպրոցականի աշխատանքային գործունեությունն սկսվում է ձեռքի թեթև աշխատանքից և հասնում մինչև ուսումնական արհեստանոցային գործունեությունը: Այսպես, Կույբիշև քաղաքի դպրոցներից մեկում արդեն երրորդ տարին է, որ IV—VII դասարանների աշակերտները պատրաստում են էլեկտրական սարքավորմամբ քարտեզներ, աղյուսակներ, ֆիզիկական, քիմիական գործող մոդելներ:

Ավելի ընդգրկուն է ուսումնաարտադրական կոմբինատների (ՈՒԱԿ) գործունեությունը, որոնց նյութապես ապահովում է բազային շեֆ ձեռնարկությունը: Այստեղ հիմնականում աշխատում են բազային ձեռնարկությունների վարպետ կազմակերպիչները: Նրանք բարձրորակ մասնագետներ են, բայց չեն տիրապետում մանկավարժական մեթոդներին: Այդ հարցում վարպետներին օգնում է դպրոցի մանկավարժական կոլեկտիվը, ծանոթացնում նրանց ուսուցման սկզբունքներին ու մեթոդներին և դասի կազմակերպման առանձնահատկություններին: Նման համագործակցության լավագույն օրինակ են Մոսկվայի «Չայկա» միջդպրոցական ուսումնաարտադրական կոմբինատը, Լենինգրադի «Էլեկտրասիլա» արտադրամիավորումը, Տաշքենդի ավիացիոն արտադրամիավորումը: Վերջինս քաղաքի 23 դպրոցների բազային ձեռնարկությունն է: Այս ձեռնարկությունների և դպրոցների համագործակցությունը գլխավորում են կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները, որոնց հետաքրքրում են ոչ միայն արտադրության կազմակերպումն ու պլանավորումը, այլև սովորողների ուսման, դաստիարակության ու աշխատանքային ուսուցման որակն ու արդյունավետությունը:

Կիևի՝ ռադիոչափիչ գործարանի բազմահազարանոց կոլեկտիվն ունի իր ուսումնական արտադրամասերը— երկու մանկապարտեզ, երկու երկարօրյա դպրոց, պրոֆուսումնարան: Այստեղ երեխաները հանրակրթական գիտելիքները զուգակցում են աշխատանքային ուսուցման և մասնագիտական

կողմնորոշման հետ։ Հետագայում շրջանավարտները համալրում են բանվորների կազմը։ Բարձր դասարանցիները և ՊՏՈՒ-ի սովորողները հաճախ են փոխարինում բացակայող վարպետներին։ Ուսուցիչներն ստանում են 20 տոկոս հավելավճար և օգտվում գործարանի աշխատողների համար սահմանված բոլոր արտոնություններից՝ պարգևատրումներից, առողջարանային ուղեգրերից և այլն։ Ուսումնական արտադրամասերն ապահովված են մարզահամալիրներով, լողավազաններով, ավտոբուսներով... Այստեղ ուսուցումն ու արտադրությունը սերտորեն շաղկապված են։ Սովորողների վաստակած գումարը փոխանցվում է գործարանի խնայդրամարկղը՝ իրենց իսկ անուններով։ Դրսից և այլն։ Ուսումնական արտադրամասերն ապահովված են մարզահամադիսավորությամբ հանձնվում է նաև խնայդրամարկղի գրքույկը։

Գործարանի ղեկավարության, կուսակցական, կոմերիտական, արհմիութենական կազմակերպությունների գործունեության կարևոր բնագավառներից է ուսումնական արտադրությունը։ Նրանք քաջ գիտակցում են, որ ապագա նորարարն ու գյուտարարն այսօր նստած են դպրոցական նստարանին, բանում են դպրոցական ու պրոֆտեխնիկական ուսումնարանների արհեստանոցներում, և ջանք չեն խնայում արտադրության հետ նրանց ինչպես հարկն է կապելու, օգնել գտնելու իրենց կոչումը, խթանելու գիտատեխնիկական մտածողությունը։

Բազմահազարանոց կոլեկտիվ ունեցող «Լենինգրադի մետաղագործարան» արտադրամիավորումը քաղաքի Կրասնոգվարդեյսկան շրջանի №№ 88, 89, 96 և 175 դպրոցների, № 43 ՊՏՈՒ-ի, շրջանի և քաղաքի պիոներների պալատների բազային ձեռնարկությունն է։ Միավորումը նյութական ու տեխնիկական մեծ միջոցներ է տրամադրում դրանց ուսումնանյութական բազայի հարստացման համար. կաբինետները, արհեստանոցները, սննդի բլոկները, մարզահամալիրները, դպրոցի և բազային ձեռնարկության կանոնադրության համաձայն, կահավորվում են միավորման միջոցներով։ Բարձր դասարանցիները մի քանի մասնագիտություն են ձեռք բերում գործարանի՝ ժամանակակից տեխնիկայով հագեցված արտադրամասերում, լավագույն վարպետ-դաստիարակների անմիջական ղեկավարությամբ։ Առաջին պարապմունքը ավանդաբար սկսվում է ձեռնարկության ցուցահանդեսում։ Դպրոցականները հետաքրքրությամբ են ծանոթանում փառապանծ կոլեկտիվի հեղափոխական, մարտական և աշխատանքային ավանդույթներին, նրա անցյալին ու ներկային։

Դպրոցականներն այստեղ սովորում են տաշել, հղկել, ձուլել, կարդալ տեխնիկական գծագրեր, օգտագործել չափող ու հսկող գործիքները, ծանոթանում են տնտեսման ռեժիմ, աշխատանքի արտադրողականություն, ինքնարժեք, արտադրանքի որակ, տնտհաշվարկ և այլ հասկացությունների։ Աշխատանքային ուսուցման հետ միասին ձեռնարկությունում աշակերտը ձեռք է բերում հոգեբանական, իրավական, տնտեսագիտական, տեխնիկական գիտելիքներ։

Աշակերտների, սովորող երիտասարդության աշխատանքային դաստիարակության գործում զգալի հաջողություններ կան նաև Հայաստանում։ Նոր ռեֆորմով պահանջվում է ընդլայնել ու կատարելագործել IV—VIII դասարանների արտադրական աշխատանքը դպրոցական արհեստանոցներում։ Կիրովականի Ստ. Զորյանի անվան դպրոցի արհեստանոցում բացվել է տպարանի արտադրամաս, ուր աշխատանքի ուսուցման ժամերին տպարանի զանազան կարիքների համար աշակերտները ստվարաթղթից պատրաստում են արկղներ։ Ինչպես այդ, այնպես էլ ուրիշ դպրոցների արհեստանոցները, համալրվել են նոր սարքավորումներով, եղածները վերանորոգվել են։ Այդ գործի նախաձեռնողներից են նաև բազային ձեռնարկությունները՝ Կիրովականի «Ավտոմատիկա», ճշգրիտ հաստոցների, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Ալ. Մյասնիկյանի անվան քիմիական գործարանները և այլն։ Բազային շատ ձեռնարկություններ դպրոցներին օգնելու նպատակով լավագույն վարպետ-դաստիարակներ են ուղարկում այնտեղ։ Դպրոցը, այսպիսով, դառնում է բա-



զային ձեռնարկության ուսումնական արտադրամասը։ Շատ դպրոցներում գործում են մետաղամշակման, փայտամշակման, կար ու ձևի արհեստանոցներ, որոնք հաճախ տալիս են ստանդարտով պահանջվող արտադրանք։

Կիրովականի բազային ձեռնարկությունների ու դպրոցների կոմերիտական կազմակերպությունները, արտադրական բրիգադներն ու դասարանները ծնունդ տվեցին «Մենք՝ արտադրությունում, դուք՝ ուսման մեջ» հայրենասիրական շարժմանը, որը հավանության արժանացավ և խրախուսվեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի կողմից։

Հանրապետության դպրոցների, պրոֆուսումնարանների արհեստանոցները, բազային ձեռնարկությունների ակտիվ մասնակցությամբ, ուսումնադիտողական պարագաներով հարստացնում են ֆիզիկայի, քիմիայի, գծագրության, կենսաբանության կաբինետները։

Որպես բազային ձեռնարկություն՝ ուսանելի փորձ է կուտակել Չարենցավանի ավտոբեռնիչների գործարանը։ Հետաքրքրական, ավանդութային կապեր են։ հաստատվել Լենինականի Մայիսյան ապստամբության անվան բամբակագործական միավորման և №№ 17, 48 պրոֆուսումնարանների միջև։ Երիտասարդ բանվորներն այստեղ ամեն տարի համալրում են միավորման բանվորական ընտանիքը։ Եվ դա ուղեկցվում է հանդիսավոր արարողությամբ. դահլիճի բեմահարթակից հնչում է ուսումնարանների շրջանավարտների բանվորական երդումը՝ բարձր պահել իրենց կրթօջախների պատիվը, բարեխղճորեն աշխատել և հավատարիմ մնալ միավորման ավանդույթներին։ Բանվորական երդմանը հաջորդում է առաջին աշխատավարձի հանձնման հանդես-արարողությունը։ Վարպետության հասած բանվորներին հանձնվում է «Վարպետության ոսկե բանալի» խորհրդանշանը։ Միավորման ցուցահանդեսներում ու «Աշխատանքային փառքի թանգարանում» ցուցադրվող լուսանկարները ներկայացնում են սովորողների արտադրական-աշխատանքային առօրյան։

Անշուշտ, որքան ավելի մոտ լինեն դպրոցն ու արտադրությունը, այնքան ավելի մեծ կլինի արդյունքը։ Այս տարի պայմանագիր կնքվեց Կիրովականի Հ. Թումանյանի անվան միջնակարգ դպրոցի և ճշգրիտ հաստոցների գործարանի միջև։ Դպրոցը, որ հիմնվել է 1953 թվականին, ունի իր հնագույն ավանդույթները։ Հաստոցաշինարարների անմիջական օգնությամբ աշակերտներն ու մանկավարժական կոլեկտիվը որոշեցին ստեղծել ու կահավորել դպրոցի թանգարանը։ Գործարանի ուժերով կահավորվել է տարրական դասարանների աշխատանքային ուսուցման արհեստանոցը, վերանորոգվել են մետաղամշակման ու փայտամշակման արհեստանոցները, հարստացել է գործիքների տեսականին։ Ձեռնարկության լավագույն վարպետ-դաստիարակները գործուղվել են դպրոց՝ աշակերտներին սովորեցնելու և նրանց արտադրական աշխատանքը կազմակերպելու։ Պատրաստվում է «Դպրոցականները արտադրամասում» ցուցափեղկը, կահավորվում է հարյուր տեղանոց ճաշարանը, վերակառուցվում է սպորտ-դահլիճը, կառուցվում է թանգարանը։ Գործարանն այդ ամենի համար հատկացրել է մոտ 40.000 ռուբլի։ 145 սովորողներ ապահովված են կայուն աշխատատեղերով։ Գործարանի ավտոբուսներն աշակերտներին տանում են գործարան ու ետ բերում՝ ըստ սահմանված գրաֆիկի։ Աշակերտները որոշել են իրենց ուժերով պատրաստել էլեկտրական լուսավորմամբ երկու քարտեզ։ Մեկը կներկայացնի միջազգային ցուցահանդեսների ու տոնավաճառների այն քաղաքները, որտեղ գործարանի արտադրանքը արժանացել է մեդալների, մյուսը՝ այն քաղաքներն ու երկրները, ուր առաքվում է նրա արտադրանքը։

Կոշիկի «Մասիս» արտադրամիավորման Կիրովականի ֆաբրիկան Ավ. Իսահակյանի անվան դպրոցի բազային ձեռնարկությունն է։ VII—X դասարանցիների աշխատանքային ուսուցման պարապմունքները կազմակերպվում են ֆաբրիկայի արտադրամասերում։ Աշակերտական ճաշարանի կահավորման հոգսը ևս ստանձնել է ֆաբրիկան։ Դպրոցական արհեստանոցներին այն տրամադրում է հարկ եղած նյութերը, միջոցները, ապահովում վարպետ-դաստիարակներով։ Երեխաներն այստեղ աշխատում են հաճույքով ու եռանդով։ Իրենց հերթին աշակերտներն էլ ջանում են ամեն ինչ անել դպրոցը մաքուր, խնամ-

քով պահելու համար։ Արդեն չորս տարի է դպրոցը կապիտալ վերանորոգման չի ենթարկվել։

Այս դպրոցը միակն է քաղաքում, որի բարձր դասարանցիներն ստանում են մանկավարժի պրոֆկողմնորոշում։ Այդ դասարանները սերտ կապի մեջ են մանկավարժական ինստիտուտի, հատկապես մանկավարժության ու հոգեբանության ամբիոնի հետ, դասախոսները հաճախ են այստեղ մանկավարժության դասեր վարում։

Դպրոցականներն իրենց պրակտիկան անց են կացնում ցածր դասարաններում, մանկապարտեզներում, պիոներների պալատում, մանկական մարզադպրոցում։ Նրանք սիրով մասնակցում են ինստիտուտում կազմակերպվող միջոցառումներին։

Ընդհանրապես Կիրովական քաղաքում բազային ձեռնարկությունների և դպրոցների համագործակցության շատ օրինակներ կան։ Այսպես՝ № 24 դպրոցը «Ավտոմատիկա» գործարանի մասնաճյուղն է ասես։ Նրանք կազմակերպում են սպորտային, գեղարվեստական համատեղ միջոցառումներ, հանդիպման ու մերձեցման երեկոներ։ Աշակերտները գործարանի մանկապարտեզի երեխաների համար պատրաստում են խաղալիքներ, վերցրել են արտադրամասերի մաքրման շեֆությունը. դպրոցի շենքը, որ ամեն տարի վերանորոգում է գործարանը, ամռան ամիսներին վերածվում է ճամբարի, ուր իրենց հանգիստն են անցկացնում բանվորների երեխաները։ Դպրոցի պարի անսամբլի համար գործարանը գնել է հագուստ, ճաշարանի համար՝ սեղաններ ու աթոռներ, հատկացրել է 25.000 ռուբլի նոր դասասենյակներ և մասնագիտական կողմնորոշման կաբինետներ ստեղծելու համար։ Դպրոցի ու գործարանի նման համագործակցությունը դրականորեն է անդրադառնում նրանց աշխատանքային ռեժիմի ճիշտ օգտագործման և ուսումնադաստիարակչական աշխատանքների վրա։

Սակայն, ինչպես նշվեց ՀԿԿ Կենտկոմի 1984 թ. մայիսյան պլենումում, մեր մի շարք արդյունաբերական ձեռնարկությունների, շինարարական կազմակերպությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարներ, խոսքով ընդունելով դպրոցականների աշխատանքային դաստիարակության և մասնագիտական կողմնորոշման կարևորությունը, երբ գործը հասնում է հարցի պրակտիկ լուծմանը, հանդես են բերում անպատասխանատվություն, պատշաճ միջոցներ չեն ձեռնարկում դրա իրականացման համար։

Հանրապետության մի շարք դպրոցներ չունեն ուսումնական արհեստանոցներ ու կաբինետներ, գյուղական որոշ դպրոցներ՝ ուսումնափորձնական հողամասեր և այլն։ Հոգ տանել ապագայի մասին՝ ասել է հոգալ այսօրվա սովորողների մասին. այսպես պետք է ընկալել դպրոցական ռեֆորմի էությունը։

Ռեֆորմով դպրոցին առաջադրվել են կոնկրետ խնդիրներ, ամենից առաջ՝ բարձրացնել կրթության ու դաստիարակության որակը, բարելավել աշխատանքային դաստիարակությունը, ուսուցումը և մասնագիտական կողմնորոշման գործը։ Աշխատանքային դաստիարակությունը մեծապես նպաստում է նաև բավարարելու ժողովրդական տնտեսության պահանջները՝ աշխատանքային ռեսուրսների օգտագործման առումով։ Կարևոր է մի բան. որտե՛ղ էլ աշխատի դեռահասը՝ դպրոցի արհեստանոցում թե միջդպրոցական կաբինետում կամ գործարանի արտադրամասում, նա կարիք ունի մանկավարժի հոգածու և աչալուրջ ղեկավարության. նրան պետք է բավականություն պատճառի հասարակության զարգացմանն իր նպաստը բերելու գիտակցությունը։

Հույժ կարևորելով դպրոցականների աշխատանքային դաստիարակությունը, նշելով, որ այն պետք է ընթանա մատչելի արտադրողական աշխատանքի հիման վրա, անհրաժեշտ է կրկին ու կրկին շեշտել այն հայտնի ճշմարտությունը, որ գլխավոր աշխատանքը երեխայի համար, անշուշտ, ուսումն է, գիտական հիմունքների կայուն տիրապետումը։ Ահա ինչու ամենաառաջնահերթ խնդիրն է՝ ըստ ամենայնի բարձրացնել դասավանդման գիտական ու գաղափարական մակարդակը, գիտությունների հիմունքները կապել կյանքի և արտադրողական աշխատանքի հետ։

---



# ԲԵԼՈՌՈՒՍԱԿԱՆ ՀՈՂՈՒՄ

Վ. ՊԱՎԼՈՎ
Պատմական գիտությունների թեկնածու

ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՄԵԾ ՓՈՐՁՈՒԹՅՈՒՆ ունեցած բազմազգ պետությունները, զուրկ լինելով ներքին միասնությունից, առաջին իսկ լուրջ փորձություններում կործանվել են՝ զոհ գնալով ավելի ուժեղներին։ Պատրաստվելով ՍՍՀՄ-ի դեմ պատերազմելու՝ ֆաշիստական Գերմանիայի և նրա կամակատար երկրների տիրակալները նույնպես այն կարծիքն ունեին, թե սովետական բազմազգ պետությունն անկայուն է և առաջին իսկ հարվածից կփլուզվի։ Ֆաշիստները հույս ունեին գժտեցնելու սոցիալիստական ազգերին, պառակտում առաջացնելու սովետական ժողովուրդների ընտանիքում։ Հենց դրան էր ուղղված նրանց ողջ պրոպագանդիստական գործունեությունը։

Գյորինգի, այսպես կոչված, «կանաչ թղթապանակով» գերմանական օկուպացիոն իշխանություններին կարգադրություն էր արվում իրականացնել «բաժանիր և տիրիր» քաղաքականություն, ռուսների, ուկրաինացիների, բելոռուսների, էստոնացիների, լատիշների, լիտվացիների, հայերի, վրացիների, թաթարների և ՍՍՀՄ-ի մյուս ժողովուրդների միջև հրահրել ազգամիջյան երկպառակություն։ «Ռուսաստանի լայնարձակ տարածություններում ապրող ժողովուրդների նկատմամբ մեր քաղաքականության էությունը,— ասում էր Հիտլերը,— պետք է լինի տարաձայնությունների և պառակտման բոլոր ձևերի խրախուսումը»։

Սակայն Հիտլերն ու նրա արբանյակները հաշվի չէին առնում, որ իրենց հարկ կլինի գործ ունենալ ո՛չ թե նախահեղափոխական՝ սոցիալական և ազգային հակասություններից բզկտվող հետամնաց Ռուսաստանի, այլ լենինյան ազգային քաղաքականության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներով կառուցված նոր տիպի բազմազգ պետության, սովետական ժողովուրդների անխախտ բարեկամությամբ ու եղբայրությամբ, սոցիալիստական տնտեսական ու քաղաքական կարգի ընդհանրությամբ, մարքս-լենինյան գաղափարախոսությամբ ցեմենտված դաշինքի հետ։

ՍՍՀՄ ժողովուրդների համերաշխ ընտանիքը պառակտելու՝ թշնամու հույսերն ի դերև ելան։ Սովետական բազմազգ պետության ժողովուրդները միասնական կուռ շարքերով հերոսաբար կռվում և անձնվիրաբար աշխատում էին հանուն սոցիալիստական հայրենիքի պաշտպանության, հանուն թշնամու դեմ ընդհանուր հաղթանակի՝ աշխարհին ցույց տալով տոկունության և արիության հրաշքներ։

Բելոռուսիան Հայաստանից հեռու է հազարավոր կիլոմետրերով։ Բայց Հայաստանի հազարավոր ուստրեր և դուստրեր պայքարում էին հիտլերյան օկուպացիայից նրա ազատագրության համար։

Հայրենիքը սոցիալիստական հասարակության մարդու համար ոչ միայն հայրենի բնօրրան է։ Ամեն մի ազգության զինվոր, կռվելով հայրենի վայրերից հեռու, պաշտպանում էր ՍՍՀՄ-ի բոլոր ժողովուրդների ընդհանուր հողը, դրանով իսկ՝ իր հայրենի գյուղը, քաղաքը, հանրապետությունը։ Ռազմաճակատի առաջավոր գիծն անցնում էր սովետական բոլոր ժողովուրդների սրտի միջով։

Բրեստի ամրոց... Այս անունը աշխարհով մեկ հռչակեցին, լեգենդի վերածեցին նրա պաշտպան հերոսները։ Այդտեղ կենաց ու մահու կռիվ էին մղում ավելի քան 30 ազգության ռազմիկներ, այդ թվում և շատ հայորդիներ։

Թավադ Բաղդասարյանին և Վահան Գրիգորյանին անհավատալիորեն նույն բախտն էր բաժին ընկել։ Երկուսն էլ ծնվել էին Հայաստանի Ղափանի շրջանում։ Երկուսն էլ սովորել էին Բաքվում, ստացել ուսուցչի դիպլոմ։ Երկուսին էլ Ղափանի շրջանային զինկոմիսարիատը բանակ էր կանչել 1939-ին։ Երկուսն էլ ամուսնացած էին, կին-երեխաներ ունեին։ Եվ երկուսն էլ նույն ճանապարհն անցան. Ողջիի գետահովտից հասան Արևմտյան Բուգի ափերը։ Երկուսին էլ բախտ վիճակվեց ծառայելու նույն՝ 84-րդ հրաձգային գնդում...

Նրանք երկուսն էլ սիրում էին կյանքը, սիրում էին մարդկանց և բոլորից շատ՝ երեխաներին։ Դրա համար էլ երազում էին դպրոցում աշխատելու մասին։ Ուզում էին իրենց աշակերտներին պատմել, թե որքան տարբեր են Հայաստանի լեռները և բուգամերձ հարթավայրերը, բայց բելոռուսները իրենց աշխատասիրությամբ ու հյուրասիրությամբ որքա՜ն են հայերին նման։

84-րդ հրաձգային գունդը տեղաբաշխված էր Խոլմյան դարպասների երկու կողմում, այն դարպասների, որոնք հետագայում դարձան Բրեստի յուրատեսակ այցետոմսը, սովետական ժողովրդի անպարտելիության խորհրդանիշը։

Հրետանային հզոր կրակապատնեշը հիտլերյան 54-րդ դիվիզիայի գրոհիչներին հնարավորություն ընձեռեց ճեղքելու Տերեսպոլի ամրությունը, գրավելու կամուրջը և ներխուժելու միջնաբերդ։ Գնդի կոմիսար Ե. Ֆոմինի հրամանով սովետական մարտիկները նետվեցին գրոհի։ Նրանց հաջողվեց մասնատել հիտլերականների գումարտակը։ Դիվահար ֆյուրերի ռազմիկներն իրենց առաջին զոհերը տվեցին մեր հողի առաջին մետրերի վրա, իսկ նրանք, ում հաջողվեց մահից խույս տալ, թաքնվեցին ճաշարանում և ակումբում։

Այդ հաղթանակը ոգևորեց 84-րդ գնդի մարտիկներին, և կատաղի մարտեր ծավալվեցին այս ու այնտեղ։ Գերմանական բարձրախոսները դուր էին տեղում պրովոկացիոն կոչեր. «Ռո՛ւս, անձնատուր եղի՛ր, դիմադրելն անօգուտ է»։ Մեր ռազմիկները համարձակ և անակնկալ հարձակումներ էին ձեռնարկում։ Մահացու գոտեմարտը չէր դադարում օրուգիշեր. հալվում էր մետաղը, փշուր-փշուր, ցաքուցրիվ էին լինում աղյուսի ու բետոնի բեկորները։ Թվում էր, թե միայն մարդկանց է, որ չէին դիպչում գնդակներն ու բեկորները։

Բայց, իհարկե, այդպես չէր։ Բուգի եզրին հառնած ամրոցը չհանձնվեց թշնամուն մեր բազմաթիվ մարտիկների կյանքի գնով։ Ովքեր պատերազմի առաջին օրերին կասեցրել են հակառակորդի կատաղի գրոհները, նրանցից, ցավոք, ոչ բոլորի անուններն են հայտնի։ Բայց Թավադ Բաղդասարյանի և Վահան Գրիգորյանի անուններն ընդմիշտ դրոշմված են հերոս ամրոցի սրբազան սալերի վրա։

...Նույն՝ 84-րդ հրաձգային գնդի գնդացրորդ Սոս Նուրիջանյանի համար (նա նույնպես Ղափանից էր) պատերազմն սկսվեց հունիսի 22-ի առավոտյան ժամը 4-ին։ Իր մարտընկերների հետ միասին նա գնդացրային կրակ էր տեղում Խոլմյան դարպասների շրջանում Մուխովեցը գետանցել փորձող թշնամու վրա։ Նրա անվրեպ կրկահերթերից անփառունակ վախճան գտան հիտլերյան ոչ քիչ զինվորներ ու սպաներ։ Սովետական մարտիկները գիշերները որսում էին կիսավեր կազեմատներ թափանցած դիվերսանտներին։ Զնայած թշնամին անդադար ռմբակոծում և հրետանակոծում էր ամրոցը, բայց Բրեստի պաշտպանները չէին լքում իրենց բնագծերը։ Պատերազմի տասներորդ օրը Սոս Նուրիջանյանը ծանր վիրավորվեց և գերվեց։ Հետո փախավ գերությունից, պարտիզանական ջոկատ կազմակերպեց Ուկրաինայում։ Նորից գերվեց, նորից փախավ։ Այս անգամ Սոս Նուրիջանյանը Ֆրանսիայում էր և դարձավ ֆրանսիական դիմադրության շարժման մասնակից։ Հենց այդտեղ էլ դիմավորեց հաղթանակի օրը։

Հարձակման առաջին ժամերին Բրեստի արևմտյան հողապատնեշը պահպանում էր իններորդ ուղեկալի սահմանապահների սակավաթիվ խումբը։ Նրանց թվումն էր նաև հայորդի Գրիգոր Հակոբյանը։ Թշնամու առաջին, ուստի



և ամենաահավոր հարվածը բաժին ընկավ նրանց։ Խիզախ սահմանապահներին օգնության եկան 333-րդ գնդի մարտիկները։ Թշնամու գետանցելու փորձը ձախողվեց. գնդակներից տափակած մակույկները լողացին հոսանքն ի վար։ Այդ ժամանակ ֆաշիստները հողապատնեշի պաշտպանների վրա կրակ տեղացին հրետանիով և ականանետներով։ Մեր մարտիկները դիրքեր գրավեցին հողապատնեշների պահեստային շենքերում։

Օդում շարունակ հայտնվում էին թշնամու ռմբակոծիչները, որոնք ցած էին նետում ոչ միայն ռումբեր, այլև բենզինով լի տակառներ։ Դրանք ընկնելիս ջարդուփշուր էին լինում և բենզինով հեղում շրջակայքը։ Այրվում էին քարերը, ծառերը, այրվում էին դիակները և նույնիսկ վիրավորները, որոնք չէին հասցրել թաքնվել։ Այրվում էր մարդկանց վրայի հագուստը։ Շատերը զոհվեցին թշնամու գնդակներից, երբ կենդանի ջահերի պես նետվեցին Բուգի պղտոր ջրերը։

Ֆաշիստների հերթական օդային հարձակումից հետո մեր մարտիկները Բուգի ալիքների վրա նկատեցին ինչ-որ տարօրինակ առարկաներ։ Տարուբերվելով, բայց տեղի չտալով գետի հոսանքին, դրանք իրար ետևից հատում էին գետը, ուղղվելով դեպի մեր ափը։ Սահմանապահները կռահեցին թշնամու խորամանկությունը. սուզանավորդների լողաններն էին ճոճվում ջրի երեսին։ Եվ երբ, ափի մոտ երևացին առաջին ֆաշիստների գլուխները, հրացանների և գնդացիրների փոթորկալից կրակը, նռնակների պայթյունները նրանց ընդմիշտ թաղեցին ջրի տակ...

Սովետական բազմազգ պետության ժողովուրդների սերտ համագործակցությունը վառ արտացոլում գտավ նաև թշնամու կողմից ժամանակավորապես օկուպացված տարածքում մղվող համաժողովրդական պայքարում։ Բելոռուսիայի վրիժառուների շարքերում կռվում էին մեր երկրի ավելի քան 70 ազգերի ու ազգությունների ներկայացուցիչներ, որոնք այս կամ այն պատճառով դուրս էին մնացել ռազմաճակատի գծից կամ փախել գերությունից։ Տողերիս հեղինակը տեղեկություններ է հավաքել Բելոռուսիայի անտառներում կռված ավելի քան 50 հայերի մասին։ Ահա նրանցից մի քանիսը։

Վ. Ի. Չապաևի անվան պարտիզանական բրիգադի հրամանատարն էր Խաչիկ Աղաջանի Մաթևոսյանը։ Նա ծնվել է 1917 թվականին Սևանա լճի մոտերքում գտնվող Վարսեր գյուղում, չքավոր գյուղացու ընտանիքում։ 1936 թվականին, միջնակարգն ավարտելուց հետո, զորակոչվեց կարմիր բանակ։ Ավարտեց Մինսկի Մ. Ի. Կալինինի անվան ռազմական ուսումնարանը և լեյտենանտի կոչումով գործուղվեց Լիդա քաղաքում տեղաբաշխված 37-րդ հրաձգային դիվիզիա, որպես դասակի հրամանատար։

Պատերազմի առաջին իսկ օրը դիվիզիայի ստորաբաժանումները մարտի մեջ մտան հիտլերյան զավթիչների դեմ, մի քանի օր շարունակվող անհավասար մարտերում կասեցրին ֆաշիստական ընտիր զորքերի առաջխաղացումը։ Այն ստորաբաժանումը, որտեղ ծառայում էր Խ. Մաթևոսյանը, ընկավ շրջապատման մեջ։ Լեյտենանտ Մաթևոսյանին մի խումբ մարտիկների հետ հաջողվեց դուրս գալ թշնամու օղակից։ Մի քանի շաբաթ նրանք անտառային խուլ կածաններով գնում էին դեպի արևելք՝ հուսալով դուրս գալ ռազմաճակատի գիծը։ Ամռան վերջին Մաթևոսյանի խումբը հայտնվեց Մինսկի մարզում, Ռուդենսկի և Պուխովիչի շրջանի սահմանագծում։

Համոզվելով, որ ռազմաճակատը շատ հեռու է և անհնարին է միանալ գործող բանակի զորամասերին՝ Մաթևոսյանն իր խմբի հետ մնաց ռուդենսկյան անտառներում։ Նրանց միացան նաև շրջապատումից խույս տված ուրիշ կարմիրբանակայիններ։ Նրանք բոլորը միասին տեղի կուսակցական, սովետական և կոմերիտական ակտիվիստների հետ ընդգրկվեցին պարտիզանական ջոկատի մեջ՝ փորձառու կադրային սպա Գ. Ե. Սոլկովի հրամանատարությամբ։

1942 թվականի գարնանը ջոկատում արդեն կար ավելի քան 150 պարտիզան։ Մայիսի սկզբին հիտլերականները նորաստեղծ ջոկատի դեմ նետեցին երեք հազարանոց զորք՝ հույս ունենալով առաջին իսկ հարվածից հաշվեհար-

դար տեսնել անտառներում թաքնված զինվորների հետ։ Ծանր մարտերից հետո պարտիզանները հարկադրված էին վերատեղաբաշխվել հարևան շրջանում։ Իսկ մեկ շաբաթ հետո մի խումբ պարտիզաններ՝ Խաչիկ Մաթևոսյանի գլխավորությամբ, վերադարձան նախկին բազան։ Հենց այդ խումբն էլ դարձավ Վ. Ի. Չապաևի անվան պարտիզանական ջոկատի առանցքը։ Ջոկատի հրամանատար ընտրվեց Խ. Մաթևոսյանը, կոմիսար՝ Յ. Գլեբովը։

Այդ ժամանակից սկսվում է չապաևցիների պանծալի մարտական պատմությունը։ Բելոռուսիայի կոմկուսի Կենտկոմին առընթեր կուսակցության պատմության ինստիտուտի կուսակցական արխիվում պահվում են չապաևցիների ջոկատի ստեղծման ու գործունեության մասին պատմող որոշ նյութեր։ Պատերազմական տարիների չորուցամաք փաստաթղթերը՝ զեկույցները, հրամաններն ու կարգադրությունները կարող են շատ բան պատմել պարտիզանների հերոսական գործերի մասին։ Դրանցում, ճիշտ է, ժլատ և հակիրճ, բայց բավական վառ կերպով արտացոլվել են ո՛չ միայն բրիգադի մարտական կենսագրությունը, այլև այդ դաժան ժամանակների մթնոլորտը, մարտիկների և հրամանատարների գործած սխրանքներն ու ճակատագիրը։

Վկայակոչենք մի քանի քաղվածք։

Սեպտեմբերի 6-ին Մաթևոսյանի գլխավորած չապաևցիների խումբը Ույաբցի գյուղի շրջանում պայթեցնում է երկաթուղային կամուրջը։ Այն թեև մեծ չէր, բայց Մինսկ—Օսիպովիչի երկաթուղին չգործեց ավելի քան մեկ օր, և օկուպանտները չկարողացան ռազմաճակատին հասցնել հարկ եղած օգնությունը։

Ջոկատի հաջող օպերացիաներից էր նաև սեպտեմբերի լույս 30-ի գիշերը Պուխովիչի շրջանի Օմելյանա գյուղում թշնամու տեղաբաշխված կայազորի ջախջախումը։ Պարտիզանները՝ Խ. Մաթևոսյանի և Յ. Գլեբովի հրամանատարությամբ հանկարծակի ներխուժեցին թշնամու լավ ամրացված դիրքերը, ոչնչացրին 103 հիտլերականի, պայթեցրին և այրեցին նրանց ամրությունները և առանց կորուստների ու մեծ ռազմավարով վերադարձան իրենց ճամբարը։

Օկուպանտների համար չարաբաստիկ օր էր նաև 1942 թվականի հոկտեմբերի լույս 3-ի գիշերը։ Մինսկի 2-րդ պարտիզանական բրիգադի ջոկատները ձեռնարկեցին «Ճանապարհակամրջային» խոշոր օպերացիա։ Այդ գիշեր հօդս ցնդեց և այրվեց 13 կամուրջ։ Չապաևցիների ավանդը մեծ էր այդ գործում։ Յոթը պայթեցրին նրանք։

1943 թվականի գարնանը Վ. Ի. Չապաևի անվան ջոկատը վերաճեց բավական խոշոր պարտիզանական միավորման և հունիսին դուրս եկավ Մինսկի երկրորդ բրիգադի կազմից։ Նրա բազայի վրա ստեղծվեց ինքնուրույն բրիգադ, որը նույնպես կոչվեց Չապաևի անվամբ։ Նորաստեղծ բրիգադի հրամանատարությունը վստահվեց Խաչիկ Մաթևոսյանին, որն իրեն դրսևորել էր որպես պարտիզանական հմուտ ստրատեգ։

Բրիգադը Մինսկի մարզում երկար չմնաց։ Հանրապետության կոմկուսի Կենտկոմի և պարտիզանական շարժման բելոռուսական շտաբի ցուցումով չապաևցիները 1943 թվականի սեպտեմբերի 2-ին մարտերով հասան արևմուտք՝ Բելոստոկի մարզ՝ տեղի շրջաններում պարտիզանական շարժումն ուժեղացնելու համար։

Մինսկի մոտերքում գտնվող Պրուցկ գյուղակի արվարձանից Խ. Մաթևոսյանի պարտիզանական բրիգադը ուղղություն վերցրեց դեպի արևմուտք։ Շարասյան առջևից գնում էին հետախույզները՝ Կիրիլ Լևկովիչի հրամանատարությամբ։ Նրա ճանապարհն անցնելու էր թշնամու գրաված Ստարոդորոգյան, Լյաբանսկի, Սոլիգարսկի շրջաններով։ Պարտիզանները քսաներորդ օրը Կարտուզ-Բերեզա կայարանի շրջանում մոտեցան Բրեստ—Բարանովիչի երկաթուղուն։

Պարտիզանների հատուկ խմբերը ճանապարհին ամրացնում էին «Դեպի Բեռլին» ցուցանշաններ, որոնք ֆաշիստները կատաղած ջարդոտում էին։ Նրանք փորձեցին խոշոր ուժեր նետել պարտիզանների ճանապարհը կտրելու համար, Բրեստից կանչեցին հատուկ զրահագնացք։



Մեր հետախույզները պարզեցին, որ Կարտուզ-Բերեզան և դրան հարակից տեղանքը գիշերները համարյա թե չեն պահպանվում, ֆաշիստները հիմնական ուժերը կենտրոնացրել են պարտիզանների անցման իրենց ենթադրած տեղերում։ Անցկացնելով գումակը՝ պարտիզանական բրիգադի հիմնական ուժերը նետվեցին ոչնչացնելու ռելսերը, հեռագրասյուները, երկաթուղային սլաքները։ Ֆաշիստները ապշել էին պարտիզանների հանդուգն գրոհից։ Մինչև նրանք կրակ կբացեին, պարտիզանները արագ ռազմերթով հայտնվեցին անվտանգ տեղում։ Իսկ վնասված երկաթուղին վերականգնելու վրա թշնամին կորցրեց երեք օր։

Չապաևցիներն այնուհետև գնալու էին դեպի Գրոդնո—Բելոստոկ։ Հակառակորդը կռահեց նրանց երթուղին և անտառապատ տեղանքում խոշոր ուժեր կենտրոնացրեց՝ ավիացիայի պաշտպանությամբ։ Պարտիզանները 15 օր կատաղի մարտեր էին մղում իրենց զգալիորեն գերազանցող ուժերի դեմ, բայց, այդուհանդերձ, կատարեցին մարտական առաջադրանքը։ Պարտիզանական բրիգադի հրամանատարն ընդգրկվեց կուսակցության Սվիսլոչսկի ընդհատակյա շրջկոմի կազմում։

Չապաևցիներն ընդհանուր հաշվով խորտակեցին հակառակորդի 46 գնացք՝ կենդանի ուժով և տեխնիկայով հանդերձ, քանդեցին չորս կիլոմետր երկաթուղագիծ, հեռախոսահեռագրական կապի 158 կիլոմետր գիծ, պայթեցրին 60 խճուղային և երկաթուղային կամուրջ, ոչնչացրին տասնյակ ավտոմեքենա ու զրահամեքենա, սպանեցին թշնամու մեծ թվով զինվոր ու սպա, շատերին էլ գերի վերցրին։

Թշնամու թիկունքում էր մնացել նաև Օկա Գորոդովիկովի փառապանծ կորպուսի հեծելազորային դասակի հրամանատար Սմբատ Արզումանյանը, որը Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Գյումյակալեր գյուղից էր։ Նա սովորել էր Ադրբեջանի մանկավարժական ինստիտուտում, կամենում էր աշխատել դպրոցում, ֆիզիկա և մաթեմատիկա դասավանդել, բայց հայրենիքը նրան կանչեց բանակ։ 1941 թվականի աշնանը Արզումանյանը նշանակվում է Բելոռուսական Պոլեսիեում գործող պարտիզանական ջոկատի հրամանատարի տեղակալ և վաշտի հրամանատար։

Սմբատ Արզումանյանի վաշտը մասնակցեց կարևորագույն մայրուղիներից մեկի՝ Բրեստ—Գոմել—Բրյանսկ երկաթուղու, Պտիչ գետի վրայով անցնող կամրջի պայթեցմանը, որով թշնամու գնացքները կենդանի ուժ և տեխնիկա էին տանում Ստալինգրադի մոտ կռվող իրենց զորքերի համար։ 1942 թվականի նոյեմբերի լույս 3-ի գիշերը բելոռուս պարտիզանների «Արձագանք Պոլեսիեում» կոդային անվանումով ձեռնարկված օպերացիան պարտիզանական շարժման պատմության մեջ է մտել որպես առավել նշանակալի և հմտորեն անցկացված մարտական գործողություններից մեկը։ Դրան մասնակցեցին շուրջ 1.500 պարտիզաններ։

Ս. Արզումանյանի ջոկատին հանձնարարվեց լուծելու առավել գլխավոր և դժվարին խնդիրներից մեկը՝ ճեղքել, դուրս գալ կամուրջը, անցնել երկաթուղու մյուս կողմը, ճնշել հակառակորդի կրակակետերը, ջախջախել նրա գլխավոր ուժերը։ Պարտիզանների համարձակ գրոհով հօդս ցնդեց ստրատեգիական մեծ նշանակության կամուրջը։ Գլխավոր ուղղության մայրուղին 18 օր չէր գործում։ Դա պարտիզանների զգալի օգնությունն էր հերոսական Ստալինգրադին։

1943 թվականի գարնանը Բելոռուսիայի կոմկուսի Կենտկոմը որոշում ընդունեց ստեղծելու կուսակցության Բրեստի ընդհատակյա մարզկոմ։ Ս. Արզումանյանին հանձնարարվեց գլխավորել պարտիզանների այն վաշտը, որը կուսակցության մարզկոմի անդամներին ուղեկցելու էր 600 կիլոմետրանոց երթուղով՝ Պոլեսիեի անտառներում գործող պարտիզանական օդանավակայանից մինչև Բրեստի մարզը։ Սմբատ Արզումանյանը պատվով կատարեց իրեն տրված պատասխանատու առաջադրանքը։

Կուսակցության Բրեստի ընդհատակյա մարզկոմի անդամ, մարզկոմի օրգան «Զարյա» թերթի խմբագիր Վ. Կալիբերովը, Ս. Արզումանյանի մասին

իր հուշերում գրել է. «Քաջ ռազմիկ էր համարվում Ս. Արզումանյանը։ Նա մասնակցել էր բազմաթիվ մարտական օպերացիաների, անձամբ ոչնչացրել հակառակորդի տասնյակ զինվորների ու սպաների։ Նրա սխրանքների մասին պատմվել էր թերթի շատ համարներում...»։

Նշելով բրիգադի քաջարի հրամանատարի մարտական ծառայությունները՝ «Զարյա» թերթը գրում էր, որ պարտիզանների շարքերում կարելի է հանդիպել բազմաթիվ ազգությունների ներկայացուցիչների։ Նրանց բոլորին միավորում և համախմբում են նվիրվածությունը սովետական իշխանությանը, ֆաշիստների նկատմամբ տածած ատելությունը, հավատարմությունը ինտերնացիոնալիզմի և կոմունիզմի գաղափարներին։

Պարտիզանական բրիգադի նախկին հրամանատար Ս. Արզումանյանը պատերազմից հետո իր կյանքն ընդմիշտ կապեց Բելոռուսիայի հետ, շատ ուժեր նվիրեց օկուպանտների ավերած ժողովրդական տնտեսության վերականգնմանը։ Ժողովրդական դեպուտատների քաղսովետի գործկոմի որոշմամբ նա արժանացել է «Մալորիտա քաղաքի պատվավոր քաղաքացի» կոչման։

Երբ սկսվեց պատերազմը, կապավոր Վահան Աղաջանյանը Մոգիլյովում էր, որտեղ և դառնում է ընդհատակային։ Երեկվա զինծառայողները կապեր էին հաստատում տեղի հայրենասերների հետ, տարածում թշնամու դեմ պայքարի կոչող թռուցիկներ, հավաքում զենք։ Մոսկվայի մատույցներում հիտլերյան զորքերի կրած ջախջախումը նոր ուժեր հաղորդեց ընդհատակայիններին։ Խումբն անտառ մտավ և սկսեց բացահայտ գործողություններ ձեռնարկել օկուպանտների դեմ։ Շուտով այն վերաճեց պարտիզանական ջոկատի, որի հետախուզության գծով հրամանատարի տեղակալը դարձավ Վահան Վահրամի Աղաջանյանը։ Ջոկատն ակտիվ մարտական գործողություններ ծավալեց թշնամու թիկունքում։ 1943 թվականի մայիսին Վ. Աղաջանյանը, որն արդեն խորտակել էր թշնամու մի քանի գնացք, նշանակվում է Գոմելի առաջին պարտիզանական բրիգադի Վ. Ի. Չապաևի անվան ջոկատի հրամանատար։ Բրիգադի կոմիսարը Ի. Ե. Պոլյակովն էր (այժմ՝ Բելոռուսական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահը)։ Աղաջանյանի ջոկատը վերաբազավորվում է Գոմելում։ Հետզհետե աճում էր ջոկատը, մարտական փորձ էին ձեռք բերում պարտիզաններն ու նրանց հրամանատարները։

Քաղվածքներ վկայակոչենք ջոկատի 1943 թվականի օգոստոսի մարտական օրագրից. «Օգոստոսի 22-ին Բուդա-Կոշելևո կայարանից դուրս գալիս խորտակվեց հակառակորդի զինվորական էշելոնը։ Ջարդուփշուր եղան շոգեքարշը և հրանոթներով բեռնված վեց կիսավագոն։

Օգոստոսի 23-ին Գոմել—Ժլոբին երկաթուղում պայթեցվեց էշելոն, ջարդուփշուր եղան շոգեքարշը և ավտոմեքենաներով բեռնված վեց կիսավագոն։

Օգոստոսի 24-ին Բուդա-Կոշելևո և Սալտանովկա կայարանների միջև խորտակվեց պարեն փոխադրող զինվորական էշելոնը...

Օգոստոսի 25-ին Բուդա-Կոշելևոյից դեպի հարավ պայթեցվեց մի էշելոն։ Ջարդուփշուր եղան շոգեքարշը և հացահատիկով բեռնված հինգ վագոն...»։ Ջոկատն իր մասնակցությամբ պանծալի էջեր գրեց «ռելսային պատերազմի» պատմության մեջ։ Նրան հանձնարարվեց 300 ռելս պայթեցնել Բուդա-Կոշելևո—Ժլոբին ուղեմասում։ Ջոկատի հրամանատարությունը, Վ. Աղաջանյանի ղեկավարությամբ, մշակեց իր օպերատիվ մարտական պլանը։ 1943 թվականի օգոստոսի լույս 3-ի գիշերը պարտիզանները կենտրոնացված հարված հասցրին թշնամու երկաթուղիներին՝ կատարելով հրամանատարության մարտական առաջադրանքը։ Օգոստոսի 11-ի գիշերը նրանք նորից հարձակում գործեցին երկաթուղիների վրա՝ փչացնելով մոտ 200 ռելս։

Այդ անսպասելի հարվածները լրջորեն ջլատեցին երկաթուղու աշխատանքը, խանգարեցին հակառակորդին մանևրելու իր ռեզերվներով։ Դա մեծ օգնություն էր Կուրսկի ելուստում թշնամուն ջախջախող մեր զորքերին։

Կուսակցության Սվետիլովիչի ընդհատակյա շրջկոմի բյուրոյում հանդես գալով 1943 թվականի ամռան ամիսներին կատարված աշխատանքի մասին հաշվետվությամբ՝ ջոկատի հրամանատարը ղեկուցեց, որ պարտիզանների



թիվը 40-ից հասել է 380-ի, կապեր են պահպանվում 60 ընդհատակայինների և քաղաքներում ու գյուղերում ազատ ապրող կապավորների հետ։ Ջոկատում ստեղծվել են 3 վաշտ, առանձին դիվերսիոն և հեծելազորային դասակներ, տնտեսական դասակ՝ զենքի, կոշիկի նորոգման և կարի արհեստանոցներով։

Կարմիր բանակի առաջխաղացումը դեպի Բելոռուսիայի արևելյան և հարավ արևելյան սահմանները պարտիզանների առջև դրեց նոր մարտական խնդիրներ։ 1943 թվականի սեպտեմբերին պարտիզանները շատ մարտեր մղեցին՝ փրկելու խաղաղ բնակչությանը Գերմանիա քշելուց։ Դարան սարքելով Մալիե Նեմկի—Սվետիլովիչի երկաթուղում՝ նրանք կոտորեցին ուղեկցող պահակներին և ազատեցին ավելի քան 300 աղջիկների, որոնց հիտլերականները ֆաշիստական Գերմանիա էին քշում։ Օպերացիան գլխավորեց Վ. Աղաջանյանը։

Պարտիզանները թշնամուն մեծ վնաս պատճառեցին, ջախջախելով նահանջող նրա ուժերին։ 1943 թվականի հոկտեմբերի 2-ին ջոկատի 500-ից ավելի պարտիզաններ, Աղաջանյանի հրամանատարությամբ, հանդիպեցին գործող բանակի զորամասերին։

Մենք պատմեցինք Բելոռուսիայի անտառներում կռված միայն մի քանի խիզախ հայորդիների մասին։ Բայց նրանք շա՜տ-շատ են եղել. ոմանք վաշտերի, դասակների, բաժանմունքների ղեկավարներ էին, ոմանք՝ անվեհեր հետախույզներ, գնդացրորդներ, ականահատներ։

Կոմունիստ Իվան Շահումյանը քիմիական պաշտպանության դասակի հրամանատարն էր, երբ նրա գունդը, մարտեր տալով, Դնեպր գետն էր հասել Լոևի շրջկենտրոնի մոտերքում։ Ի՞նչ գիտեր սերժանտն այդ վայրերի մասին, որոնց համար գուցե և զոհվեր։ Ե՛վ շատ, և՛ քիչ բան։ Գիտեր, որ իր հարազատ Հայաստանը և եղբայրական Բելոռուսիան նույն սովետական սրբազան հողն են։

Շահումյանի դասակն ստացավ պատասխանատու մարտական առաջադրանք՝ առաջին դեսանտային խմբերի հետ գետանցել Դնեպրի աջ ափը, հուսալի ծխածածկույթ առաջացնել և ֆաշիստներին խանգարել հրետակոծելու մեր ստորաբաժանումները։ Սերժանտն իր ընկերների հետ պատվով կատարեց այդ առաջադրանքը։

Խիտ ծխածածկույթի ներքո կատաղի մարտ ծավալվեց պլացդարմ գրավելու համար։ Պաշտպանելով աջ թևում կռվողներին՝ Շահումյանի խումբը ֆաշիստներին քշեց խրամատից և ինքը դիրքեր գրավեց այդտեղ։ Դրանից հետո նա երեք անգամ մասնակցեց հակառակորդի գրոհները ետ մղելու մարտական գործողություններին, ձեռնամարտում ոչնչացրեց մի քանի հիտլերականի։ Վիրավորվեց, բայց մարտադաշտից չհեռացավ, մինչև որ օժանդակ ուժեր չեկան։

Դնեպրի մարտերում ցուցաբերած խիզախության և արիության համար Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Մարտունու շրջանի Բարաբաթումբ գյուղի բնակիչ Իվան Շահումյանն արժանացավ Սովետական Միության հերոսի բարձր կոչման։ Պանծալի հայորդու սխրանքը չի մոռացվել։ Նրա անունը ոսկե տառերով դրոշմված է Հայրենական մեծ պատերազմի պատմության բելոռուսական պետական թանգարանի հուշասրահում։ Ի. Կ. Շահումյանի կյանքին և սխրագործությանը նվիրված առանձին հոդված կա Բելոռուսական սովետական հանրագիտարանում։ Ներկայումս գյուղատնտեսական գիտությունների թեկնածու Իվան Շահումյանը ՌՍՖՍՀ գյուղատնտեսության մինիստրության բանջարեղենի տնտեսության գիտահետազոտական ինստիտուտի դիրեկտորն է։

Գոմելի մարզի ազատագրման մարտերում իրեն հերոսի փառքով պսակեց հայ ժողովրդի զավակ, քաղաքացիական կռիվների և Հայաստանում սովետական կարգերի հաստատման ակտիվ մասնակից, 1927 թվականից ՍՄԿԿ անդամ, գեներալ-մայոր Անդրանիկ Աբրահամի Ղազարյանը։ Պատերազմի ընթացքում նրան վիճակվեց երկու անգամ կռվել Բելոռուսիայում։ Նրա հրամանատարության ներքո գտնվող մեքենայացված գունդը թշնամու դեմ ան-

համասար մարտի մեջ մտավ պատերազմի հենց առաջին օրը, սահմանապահ գոտում։ Հակառակորդի գերազանցող ուժերով շրջապատված գունդը 20 օր ծանր մարտեր մղեց, կարողացավ ճեղքել թշնամու օղակը և դուրս գալ շրջապատումից։ Իսկ 1943 թվականի աշնանը Անդրանիկ Ղազարյանն առաջիններից մեկը մտավ Բելոռուսիա՝ արդեն որպես հրաձգային դիվիզիայի հրամանատար։

Մոգիլյովյան ուղղության տեղամասերից մեկում հարձակողական մարտեր էր մղում 238-րդ հրաձգային դիվիզիան։ Մարզային կենտրոնի ազատագրման մարտերում առանձնակի ուրիություն դրսևորեց 837-րդ գնդի կապավոր՝ եֆրեյտոր Սուրեն Արտաշեսի Սարգսյանը։ Հայ երիտասարդը աչքի էր ընկել դեռևս Դեսնայի համար մղված մարտերում և արժանացել մարտական մեդալի։ Լինելով լավ կապավոր՝ Ս. Սարգսյանը հմտորեն էր տիրապետում գնդացրին և ավտոմատին։ Դնեպրը գետանցելիս նա իր ետևից քարշ էր տալիս գնդի հրամանատարի դիտակետից ձգվող հեռախոսային կաբելը։ Դա կապավորին խանգարում էր անցնելու գետը, հոսանքը մի քանի անգամ նրա ոտքերը կտրեց հատակից։ Մի կերպ իրեն պահելով ջրի վրա, եֆրեյտորը հոգնած քայլերն ուղղեց դեպի առափնյա թփերը, բայց հանկարծ ինչ-որ ձայներ լսեց և կանգ առավ։ Աջից մի քարի ետևում թաքնված երկու հիտլերականներ գնդացիր էին տեղադրում։ Պարզ էր, պատրաստվում էին գնդակոծել գետանցողներին։ Ս. Սարգսյանը ավտոմատով դիպուկ նշան բռնեց և երկուսին էլ գետին գլորեց։ Նրանց գնդացիրն ուղղվեց դեպի իրենց կրակակետի դեմ։

Մարտի ընթացքում բազմիցս կտրվեց հեռախոսակաբելը, բայց քաջարի կապավորը նորից ու նորից մտավ թշնամու արկերից և ականներից ծառս եղած գետը՝ փնտրելով կտրված տեղը... Սուրեն Սարգսյանի կուրծքը զարդարվեց Սովետական Միության հերոսի ոսկե աստղով։

Բելոռուսական հողում կատարած սխրանքների համար հայ ժողովրդի տասը քաջարի որդիներ արժանացել են Սովետական Միության հերոսի բարձր կոչման։ Բելոռուսիայի պաշտպանության և ազատագրման մարտերին հայերի մասնակցությունը ՍՍՀՄ ժողովուրդների անխախտ բարեկամության համոզիչ վկայություններից է։

Մինսկ

---



Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе, 2.

Խմբագրության հասցեն՝ 375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2։ Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին 52—99—34, խմբագրության վարիչ՝ 53—86—11, գրական աշխատողներ՝ 52—66—77։

Հանձնված է շարվածքի 15.07.1985։ Ստորագրված է տպագրության 7.08.1985 թ.։ ՎՖ 07515 Ձևաչափ՝ 70×108 1/16։ Տպագրություն՝ բարձր։ 8,4 պայմանական տպ. մամ., 9,3 հրատ. մամ., Տպաքանակ՝ 16.832։ Պատվեր 1781։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2։

**Типография издательства ЦК КП Армении.**

**Ереван-23, пр. Орджоникидзе, 2.**